## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։






# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5 ՄԱՅԻՍ . 1968

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 47-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении**




## Բովանդակություն



### Կ. ՄԱՐՔՍԻ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



### ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԿՈՒՍՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ



### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ



### ԼԵՆԻՆՅԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԵՐԵՆ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



### ՄԱՄՈՒԼԻ ՕՐՎԱ ԱՌԹԻՎ

# Содержание





## Կ. ՄԱՐՔՍԻ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

ԳԱԲՐԻԵԼՅԱՆ ՀԵՆՐԻ

# ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՄԵԾԱԳՈՒՅՆ ՄՏԱԾՈՂԸ

*Հարյուր հիսուն տարի առաջ՝ 1818 թ. մայիսի 5-ին Գերմանիայի Թրիր քաղաքում ծնվեց գիտական կոմունիզմի հիմնադիր, հանճարեղ մտածող, բոցաշունչ հեղափոխական, համաշխարհային պրոլետարիատի ուսուցիչ և առաջնորդ Կարլ Մարքսը։ Պատմության մեջ հանճարներ շատ են եղել։ Նրանցից ոմանք ամբողջական գիտությունների հիմնադիրներ են հանդիսացել (Նյուտոն, Դարվին, Էյնշտեյն), մյուսները՝ մարդկային գեղագիտական միտքը զարգացման նոր աստիճանի են հասցրել (Շեքսպիր, Գյոթե, Տոլստոյ), իսկ շատերն էլ փիլիսոփայական համայնապարփակ սիստեմներ են ստեղծել (Արիստոտել, Կանտ, Հեգել)։ Սակայն նրանցից ամեն մեկը մարդկության միտքը ակոսել է միայն մի ուղղությամբ՝ ֆիզիկայի կամ կենսաբանության, արվեստի կամ գրականության, բնական կամ հասարակական գիտությունների բնագավառում։ Նյուտոնը նոր խոսք ասաց մեխանիկայի-ֆիզիկայի ասպարեզում, իսկ Դարվինը՝ կենդանի մատերիայի զարգացման օրինաչափությունների մասին։*

*Մարքսի կատարած հայտնագործությունները չեն սահմանափակվում որևէ գիտության շրջանակներում, նրանք մեթոդոլոգիական հիմք են բոլոր գիտությունների համար։*

*«Մարքսի մեծությունն այն է,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Կարլ Մարքսի ծննդյան 150-ամյակի առթիվ հրապարակած թեզիսներում,— որ նա պատասխաններ տվեց պատմական զարգացման ամբողջ ընթացքի կողմից օրակարգի մեջ դրված հարցերին։ Մարքսը մեծագույն հեղաշրջումը կատարեց մարդկության հասարակական գիտակցության մեջ, մշակեց պրոլետարիատի գիտական աշխարհայացքը, որը ճիշտ է արտացոլում պատմական զարգացման օրենքները։ Նա սոցիալիզմը ուտոպիայից վերածեց գիտության, հիմնավորեց կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի անխուսափելիությունը։ Կ. Մարքսը բանվոր դասակարգին զինեց իր պատմական միսիայի ըմբռնմամբ՝ որպես շահագործական կարգերի գերեզմանափորի և սոցիալիստական հասարակության կերտողի, ցույց տվեց հեղափոխական տեսությունը մասսայական բանվորական շարժման հետ միացնելու ուղիները»։*

*Մարքսից առաջ փիլիսոփաներից շատերը փորձեցին գիտական մտքի օրենսդիրներ դառնալ։ Բայց այդ փորձերն արմատական արդյունքներ չտվին,*

որովհետև հիշյալ մտածողներն իրենց ընդհանրացումներով ամփոփում էին
այն դասակարգերի կուտակած փորձը, որոնք պատմության խնդիրը տեսնում
էին իրենց տիրապետության հավերժացման մեջ։ Հասկանալի է, որ նման
դասակարգերի ներկայացուցիչների գիտական ընդհանրացումներն, ի վերջո,
պիտի վերածվեին մետաֆիզիկական կամ իդեալիստական հակագիտական
սիստեմների։ Չնայած գիտության մեջ իրենց խոշոր ներդրումներին, մարդ-
կային մտքի այնպիսի հսկաներ, ինչպիսիք Արիստոտելն է, Կանտը կամ
Հեգելը, չկարողացան մետաֆիզիկան լիովին հաղթահարել, ստեղծել դիալեկ-
տիկական կուռ մեթոդ, առանց որի անհնար էր հաղթահարել այն դժվարու-
թյունները, որոնք առաջանում էին գիտությունների պրոգրեսի ընթացքում։
Գիտության առջև ծառացած այդ մեծագույն պրոբլեմը լուծեց Մարքսը՝ հաս-
տատուն կանգնած լինելով մատերիալիստական դիրքերի վրա, հանդես գա-
լով որպես պրոլետարիատի գաղափարախոս, պրոլետարիատ, որի սոցիա-
լական ազատագրումը ողջ աշխատավոր մարդկության ազատագրումն է։ Այդ
հանգամանքը Մարքսին հնարավորություն ընձեռեց ստեղծելու մի փիլիսո-
փայություն, որը զերծ է նախորդ փիլիսոփայական սիստեմների սահմանա-
փակություններից։

Մարքսիստական փիլիսոփայությունը դիալեկտիկական և պատմական
մատերիալիզմն է, ժամանակակից առաջավոր մարդկության գիտական, հա-
սարակական-քաղաքական գործունեության ուղենիշը։ Մեկը կարող է էյն-
շտեյնի հարաբերականության թեորիան կամ Վիների կիբեռնետիկայի մա-
սին գաղափար չունենալ, բայց լինել հասարակության համար պիտանի մարդ։
Սակայն, ով չգիտի մարքսիզմը ու չի ղեկավարվում դրանով, չի կարող մարդ-
կության առաջընթացին ակտիվ մասնակցել և պատմության մեջ քիչ թե շատ
նշանակալի ու դրական հետք թողնել։ Դարեր շարունակ, անշուշտ, մարդիկ
պատմություն են ստեղծել, բայց դա տարերայնության տիրապետության
շրջանում էր, երբ զարգացումը ընթանում էր սեփականատիրական հարա-
բերությունների ամրացման ուղղությամբ։ Այժմ դրությունն իրոք այլ է։ Մեր
օրերի համար բնորոշն այն է, որ բոլոր ճանապարհները դեպի կոմունիզմ են
տանում, որ մարդկությունը, «անհրաժեշտության թագավորությունից» թեա-
կոխում է «ազատության թագավորություն»։ Դեռ երիտասարդ Մարքսն ասել
է, որ կոմունիզմը «մարդու և բնության, մարդու և մարդու միջև եղած իրա-
կան հակասության լուծում է, գոյության և էության, առարկայացման և
ինքնահաստատման, ազատության և անհրաժեշտության, անհատի և սեռի
միջև վեճի իսկական լուծումը։ Դա պատմության հանելուկի լուծումն է»
(К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, стр. 588)։

Այդ հանելուկը լուծելու համար մարդիկ այլևս չեն կարող գործել կույ-
րեն կամ տարերայնության գերի դարձած, որովհետև այդպես անհնար է
կապիտալիզմը փոխարինել սոցիալիզմով։ Սոցիալիզմ կառուցողի գործո-
ղությունները պիտի լինեն մտածված, նախօրոք ծրագրված ու արդյունքի
պարզ գիտակցությամբ։ Նախորդ հասարակություններում, զարգացման տա-
րերայնության պատճառով, անհատ մարդկանց առաջադրած նպատակներն
լիովին իրականանալ չէին կարող. սոցիալիզմի ժամանակ այդ արգելառիթ
հանգամանքն արդեն վերանում է։ Անհատի հետապնդած նպատակի իրա-
կանացումն այսօր կախված է այն բանից, թե որչափով է նա ճիշտ ըմբռ-
նում սոցիալիստական հասարակության զարգացման օրինաչափությունները,
մոտավոր ու հեռավոր խնդիրները և ըստ այնմ կարգավորում իր գործողու-



թյունները, սեփական կոնկրետ նպատակի իրականացումը կապելով հասա-
րակության առաջադրած նպատակի իրականացման հետ։

Դրա համար անհրաժեշտ է տիրապետել մարքսիզմին։ Այդ է պահան-
ջում նաև Լենինի այն դրույթի իրականացումը, ըստ որի սոցիալիզմի ժամա-
նակ խոհարարն անգամ պիտի սովորի երկիր կառավարել։ Այս ամենից
հետևում է, որ մարքսիզմն այն առաջին հիմնական գիտությունն է, որին
պետք է տիրապետի սոցիալիստական հասարակության ամեն մի քաղաքացի։

Դիդրոն, Հոլբախը, Հելվեցիուսը, իրենց մարտնչող մատերիալիզմով և
աթեիզմով գաղափարապես նախապատրաստելով ֆրանսիական մեծ հեղա-
փոխությունը, չէին մտածում սեփական ուսմունքը մասսաների սեփականու-
թյունը դարձնել։ Ավելին, նրանք այն կարծիքին էին, թե փիլիսոփայությունն
ու աթեիզմը, անչափ բարդ լինելու պատճառով մասսաները յուրացնել չեն
կարող։ Մարքսը հանդես եկավ այլ դիրքերից։ Նա ցույց տվեց, որ «բան-
վորները փիլիսոփայության մեջ իրենց հոգևոր զենքն են գտնում, ինչպես
նաև փիլիսոփայությունը պրոլետարիատի մեջ՝ իր նյութական զենքը». «թեո-
րիան նյութական ուժ է դառնում, հենց որ մասսաների կողմից յուրացվում է»։

Մարքսը գիտական թեորիան դիտեց որպես աշխատավոր մասսաների ոչ
միայն ճանաչողության, այլև պրակտիկ գործունեության հատու զենք։ Այն,
ինչ ստեղծվել էր մինչև Մարքսը, իր դրական շատ կողմերով հանդերձ, չէր
կարող աշխարհի վերափոխման միջոց ծառայել։ Իսկ աշխատավոր մարդը
ձգտում էր հեղաշրջել աշխարհը, որպեսզի ազատագրվելով ամեն տեսակ
ճնշումներից, կարողանար պատշաճ տեղ գրավել պատմության մեջ։

Դարեր շարունակ փիլիսոփայությունը զբաղվել է ճանաչողության հնա-
րավորության, մեթոդների, ձևերի ու կատեգորիաների մշակման հարցերով։
Իր պատմական զարգացման ընթացքում այն ուսմունք է դարձել բնության,
նրա գոյացման, փոփոխման ու զարգացման օրինաչափությունների մասին։
Հիշենք թեկուզ Միլեթյան դպրոցի, Հերակլիտի կամ ատոմիստների ուսմունք-
ները, որոնք յուրօրինակ բնափիլիսոփայական սիստեմներ էին։ Բնության
ուժերին տիրելու համար այդ անհրաժեշտ էր։ Բայց հարցի դրական լուծումը
դեմ էր առնում բնության մեջ մարդու տեղի և դերի որոշմանը։ Մարքսն
ասում է, թե «ռադիկալ լինել, նշանակում է հասկանալ առարկան իր ար-
մատում։ Սակայն մարդու համար արմատն ինքը մարդն է» (К. Маркс и
Ф. Энгельс, Соч., т. I, стр. 422)։

Ուրեմն, հարկավոր էր բնությունից անցում կատարել դեպի մարդը,
բնության ճանաչողությունը սկսել մարդու ճանաչողությունից։ Հակադրվելով
բնափիլիսոփաներին, սոփեստները հանդես եկան նոր նշանաբանով՝ իրերի
չափանիշը մարդն է, հետևաբար մարդու ճանաչողությունը նաև իրի ճանաչո-
ղությունն ու գոյությունն է, այսինքն՝ ամեն բան կախված է մարդուց։ Խո-
րացնելով իդեալիստական այս գիծը, Սոկրատը եզրակացրեց, քանի որ
մարդն է իրերի չափանիշը, իրերի ճանաչողությունն ավելորդ է, մարդը պետք
է զբաղվի ինքն իրենով։ Այստեղից էլ նոր նշանաբան՝ «ծանիր զքեզ»։

Այսպիսով, փիլիսոփայության մեջ ձևավորվեցին երկու հակադիր բա-
նակներ՝ մեկն իր հետազոտության առարկան դարձրեց բնությունը, անտե-
սելով կամ թերագնահատելով մարդուն, մյուսը՝ զբաղվելով մարդով, անտեսեց
բնությունը։ Բայց այդ ծայրահեղությամբ հարցը չէր լուծվի։ Մարդը, լինելով
բնության ծնունդ, չէր կարող չզբաղվել բնության ուսումնասիրությամբ, մա-
նավանդ բնությունն էր նրա կերակրողը։ Սակայն, մարդն անկարող էր հրա-

ժարվել նաև ինքնաճանաչողությունից, որովհետև առանց դրա անհնար էր բնության ճանաչողությունը։ Ստեղծված միակողմանիության հաղթահարման, մոնիստական աշխարհայեցողության ձևավորման փոխարեն, հարցը այնպես լուծվեց, որ առաջին ուղղությունը՝ մատերիան հայտարարելով սուբստանցիա, անկարող եղավ բացահայտել այն ամենը, ինչ կապված է մարդու հասարակական գործունեության հետ և ինչ վերաբերում է նրա սուբյեկտիվ աշխարհին, իսկ երկրորդը՝ մարդու մեջ տեսավ միայն ոգի կամ գաղափար և, այն անջատելով մարդուց, հռչակեց ինքնուրույն գոյ, որից սկիզբ է առել ամեն ինչ, այդ թվում նաև բնությունը։ Այսպիսով փիլիսոփայության, կարելի է ասել ողջ գիտության մեջ, վերջնականորեն ձևավորվեց այն, ինչ մեծ ֆրանսիացին՝ Հելվեցիուսը անվանեց Դեմոկրիտի և Պլատոնի գիծ կամ, արդի լեզվով ասած, մատերիալիզմ և իդեալիզմ։ Այդ շրջանից սկսած ողջ գիտական մտքի պատմությունը եղել է մատերիալիզմի և իդեալիզմի պայքարի պատմություն, գիտությունը զարգացել է այդ պայքարի պրոցեսում։

Նախամարքսյան շրջանի գիտական մտքի բնորոշ հատկանիշը հիշյալ ուղղությունների միակողմանի, բայց ոչ ուղղագիծ զարգացումն է։ Հին աշխարհի մատերիալիզմն ու իդեալիզմը միջին դարերում հանդես եկան նոմինալիզմ և ռեալիզմ, իսկ նոր շրջանում՝ սենսուալիզմ և ռացիոնալիզմ սահմանումներով։ Անշուշտ դա սոսկ անվանափոխում չէր, այլ միաժամանակ որոշակի առաջընթաց, թեկուզ այն բանով, որ անտիկ մտքին հատուկ ընդհանուր ու վերացական հարցադրումները փոխարինվեցին ավելի կոնկրետ հարցադրումներով, ընդհանուրից անցան կոնկրետի ուսումնասիրության, հիմք ունենալով արդեն որոշ փաստական նյութեր։ Սակայն, առաջընթացը գնաց այն ճանապարհով, որ մատերալիզմին ազգակից նոմինալիզմն ու սենսուալիզմը հետադարձ շարժում կատարեցին, Բերկլու մոտ ձևավորվելով որպես սուբյեկտիվ իդեալիզմի սկզբունքներ, իսկ իրենց բնույթով իդեալիստական ռեալիզմն ու ռացիոնալիզմը Դեկարտին չխանգարեցին ստեղծելու մատերիալիստական կոսմոգոնիա։ Զարգացման այս ընթացքը չէր կարող անվերջ լինել։ Միակողմանիությունը կամ մետաֆիզիկան և իդեալիզմը պետք է արգելակեին գիտական մտքի առաջընթացը, կտրելով գիտնականներին իրականությունից, արգելեին նրանց երևույթներն ուսումնասիրելու բազմակողմանիորեն։

Անցյալ դարի 40-ական թվականներին թե՛ մատերիալիզմը, թե՛ իդեալիզմը փակուղու մեջ ընկան։ Դիալեկտիկայի բացակայությունը կասեցրեց մատերիալիզմի առաջընթացը. իսկ Հեգելի իդեալիստական դիալեկտիկան հակադրվեց օբյեկտիվ իրականությանը։ Այս ամենը սպառնում էր փակուղու մեջ դնել ողջ գիտական միտքը։ Մարքսի անմիջական նախորդները՝ Հեգելն ու Ֆոյերբախը, դրա առաջն առնել չկարողացան։ Պատճառը պարզ է։ Հեգելը հանճարեղ դիալեկտիկ էր, բայց իդեալիստ, իսկ Ֆոյերբախը թեև մատերիալիստ էր, սակայն, մետաֆիզիկ մտածող։ Չնայած տարբեր դիրքերից, սրանք հանդես եկան որպես բուրժուական հասարակության կողմնակիցներ, ընդունեցին այս հասարակությանը հատուկ սահմանափակությունները։ Ժամանակի տեսական միտքը ստեղծված վիճակից դուրս բերելու համար անհրաժեշտ էր՝ 1) Բացասել բուրժուական հասարակությունը, հակադրելով դրան սոցիալիստական-կոմունիստական հասարակություն, և 2) դիալեկտիկան միաձուլել մատերիալիզմի հետ, հաղթահարելով ինչպես առաջինի հեգելյան արատները, այնպես էլ վերջինի սահմանափակությունը։ Այս է այն



մեծագույն ծառայությունը, որ Մարքսը մատուցեց մարդկությանը։ Դրանում է արտահայտվում այն հեղափոխության էությունը, որը կատարեց նա ոչ միայն փիլիսոփայության, այլև գիտության մեջ առհասարակ։

Խոսելով գիտության մեջ Մարքսի կատարած հեղաշրջման մասին, սովորաբար շեշտը դրվում է նրա կողմից դիալեկտիկական մատերիալիզմի ստեղծման և այն հասարակական երևույթների նկատմամբ կիրառելու վրա։ Դա ճշմարտության միայն մի մասի մատնանշումն է, այն էլ կարոտ բացատրության։ Բանն այն է, որ Մարքսը դիալեկտիկական մատերիալիզմին հանգավ ոչ այնքան իր սուբյեկտիվ հանճարի ուժով, որքան իմացության պրոբլեմին սոցիալ-պատմական մոտեցում ցույց տալու շնորհիվ։

Իմացությունը հատուկ է մարդուն, որն, ամենից առաջ, սոցիալական էակ է։ Ուստի, նրա իմացությունն, իր բնույթով նույնպես, ամենից առաջ, սոցիալական գործողություն է, պայմանավորված կրողի սոցիալական կեցությամբ, որը շարունակ փոխվում է։ Մարքսի նախորդները՝ ֆրանսիական մատերիալիստները, գերմանական կլասիկ իդեալիզմի ներկայացուցիչները և Ֆոյերբախը փոքր մտածողներ չէին, բայց նրանք մարդկային մտածողության վերոհիշյալ բնույթը չհասկացան, այդ պատճառով նրանց տեսադաշտը սահմանափակվեց իրենց ներկայացրած դասակարգի՝ բուրժուազիայի ըստեղծած հասարակության շրջանակներով։ Այդ հանգամանքը հարկադրեց նրանց պատմության զարգացումը դիտել որպես բուրժուական հարաբերությունների լինելության և անվերջ պահպանման ու կատարելագործման մի պրոցես։

Հասկանալի է, որ նման պայմաններում գիտական միտքը միակողմանիության շրջանակներից դուրս գալ չէր կարող, և իմացաբանական հիմնական հարցերը պիտի լուծվեին կամ նատուրալիստական, կամ սպիրիտուալիստական դիրքերից։ Առաջին դեպքում, նախամարքսյան մտածողները հանգեցին մեխանիցիզմին՝ բացարձականացնելով նյուտոնյան մեխանիկայի օրենքները, երկրորդ դեպքում՝ աստծո գաղափարին, այսինքն՝ իդեալիզմին։ Այլ կերպ ասած, երկու դեպքում էլ մարդկային միտքը գիտական ճանաչողությանը մոտենալու փոխարեն նրանից հեռացավ և իմացության հարցերը լուծեց կամ ամբողջությամբ կռթնելով զգայության օրգանների տվյալներին, կամ հիմք ընդունելով աբստրակտ մտածողության ապրիորի կատեգորիաները։ Նախամարքսյան մտածողները չկարողացան ճանաչողությունը դիտել որպես մարդու սոցիալ-պատմական գործունեության ձև։ Մարդու մեջ, լավագույն դեպքում, նրանք տեսան միայն նրա բիոլոգիական հատկանիշները։ Մարդը, որպես պատմությունը կերտող սոցիալական էակ, դուրս մնաց նրանց տեսադաշտից։ Այդ պատճառով նրանք անկարող եղան բացահայտել մարդու ճանաչողության սոցիալական բնույթը, առանց որի անհնար էր դուրս գալ հիշատակված փակուղուց, մշակել գիտական թեորիա։

Մարքսն առաջինն էր, որ բացահայտեց իր նախորդների մտածողության հիմնական արատը, նշեց դրա վերացման ճշմարիտ ուղին։ «Նախորդ մատերիալիզմի (ներառյալ նաև Ֆոյերբախի) հիմնական արատն այն է, որ նա առարկան, իրականությունը, զգայականը վերցնում է միայն օբյեկտի կամ հայեցողական ձևով, ոչ թե սուբյեկտիվորեն։ Այդ պատճառով, ի հակադրություն մատերիալիզմի, գործունյա կողմը զարգացրեց իդեալիզմը, բայց զարգացրեց աբստրակտ, քանի որ վերջինը, իրական զգայական գործողությունը, որպես այդպիսին, չգիտեր», հայտարարեց Մարքսը Ֆոյերբախի մասին գրած

իր թեզիսներում։ Նա ապացուցեց, որ ճանաչում է ոչ թե մարդն առհասարակ, այլ պատմականորեն կոնկրետ մարդը, որը մի որևէ հասարակության ու դասակարգի անդամ է։ Փոխվում է այն հասարակությունը, որի մեջ ապրում է մարդը, այն դասակարգը, որին պատկանում է նա, փոխվում է ինքը մարդը, այդ ամենի շնորհիվ՝ նաև նրա ճանաչողությունը։

Այլ խոսքով, ճանաչողությունն իր բնույթով սոցիալական ակտ է։ Մարդու զգացողությունն ու մտածողությունը, որպես իմացության աղբյուրներ, գործում են ո՛չ թե իրենց բնական անմիջականությամբ, այլ սոցիալական միջնորդականությամբ։ Մարքսի նախորդներից ոչ մեկը այս ճշմարտությանը չհասավ։ Ֆոյերբախը թեև ընդունեց, որ ո՛չ թե մտածողությունն է պայմանավորում կեցությունը, այլ կեցությունն է պայմանավորում գիտակցությունը, բայց չկարողացավ բացահայտել կեցության սոցիալական բովանդակությունը, այսինքն՝ ցույց տալ, որ խոսքը վերաբերում է հասարակական կեցությանը, որի ծնունդ է նաև գիտակցող մարդը։

Այսպիսով, անտեսելով մարդու և նրա գործողությունների սոցիալական էությունը, Ֆոյերբախը հայեցողության շրջանակներից դուրս չեկավ։ Իր նախորդների նման նա ևս ստեղծեց աշխարհը ոչ թե փոխելու, այլ միայն բացատրելու սիստեմ։ Մարքսն առաջինն էր, որ ստեղծեց աշխարհը վերափոխելու փիլիսոփայություն։

Մարքսի նախորդներն առհասարակ հոգ են տարել ստեղծելու նախ իմացական սիստեմներ, ապա մտածել այն հասարակական երևույթների ճանաչողության միջոց դարձնելու մասին։ Մարքսը հակառակ ճանապարհ ընտրեց։ Նա սկսեց հասարակությունից, հասարակության օրինաչափությունների մատերիալիստական ըմբռնումից և ավարտեց դիալեկտիկական մատերիալիզմի ստեղծմամբ։ Այդ պատճառով, եթե այսօրվա համար ճիշտ է պատմական մատերիալիզմը սահմանել որպես դիալեկտիկական մատերիալիզմի տարածումը հասարակական երևույթների վրա, բայց չի կարելի անտեսել, առավել ևս թերագնահատել այն փաստը, որ Մարքսը դիալեկտիկական մատերիալիզմին է հանգել պատմության օրինաչափություններն ուսումնասիրելու հիման վրա, այսինքն՝ սկսել է պատմական մատերիալիզմից։ Դեռ երիտասարդ հասակում նա Ֆոյերբախի փիլիսոփայական աֆորիզմների գլխավոր թերությունը համարել է այն, որ վերջինս հիմնական շեշտը դրել է ոչ թե քաղաքականության, այլ բնության վրա։ Այդ շեշտի փոփոխմանը Մարքսը սկզբունքային նշանակություն է տվել, որի իրականացմամբ նա կարողացավ ստեղծել դիալեկտիկական մատերիալիզմը՝ աշխարհը հիմնովին փոխելու հեղափոխական ուսմունքը։

Մինչմարքսյան փիլիսոփայական սիստեմների գլխավոր արատներից մեկն էլ այն է, որ նրանք իրենց հետազոտման օբյեկտ են դարձրել մարդու ինտելեկտուալ կամ զգայական էությունը՝ կտրված հասարակական կյանքից։ Այդ պատճառով թե՛ առաջին (իդեալիստական) և թե երկրորդ (մատերիալիստական) ուղղությունները վերածվել են վերացական սխեմաների։ Իդեալիզմը փորձեց կանգնել գործունեության տեսակետի վրա, բայց դրա տակ հասկացավ ոգու, գիտակցության կամ բացարձակ ես-ի գործունեությունը, իսկ մատերիալիզմը, հանձին Ֆոյերբախի, ընդունեց «միայն թեորեական գործունեությունը»։ Հասկանալի է, որ այսպես հնարավոր չէր գիտական տեսություն ստեղծել։

Մարքսը առաջ քաշեց բոլորովին նոր տեսակետ։ Նա հայտարարեց.



«...այն հարցը, թե մարդկային մտածողությունը առարկայական ճշմարտությանը տիրում է թե ոչ, թեորիայի հարց չէ, այլ պրակտիկայի։ Պրակտիկայում մարդը պետք է ապացուցի իր մտածողության ճշմարտացիությունը... Պրակտիկայից մեկուսացած մտածողության իրական կամ ոչ իրական լինելու մասին վեճը զուտ սխոլաստիկական վեճ է»։ Այս հարցադրումով Մարքսն ապացուցեց, որ իրական գիտական ճանաչողությունը հնարավոր է միայն այն դեպքում, եթե դա հեղափոխական պրակտիկայի ընդհանրացում է, հենվում է մարդկանց առաջավոր փորձի վրա, որովհետև ամեն մի պրակտիկա թեորիայի ճշմարտության հիմք հանդիսանալ չի կարող։

Հեղափոխական պրակտիկան դիտելով որպես տեսության ելակետ, որպես թեորիայի կարգավորող և միաժամանակ դրա արդյունք, Մարքսը հաստատեց տեսության և պրակտիկայի միասնությունը, ապացուցեց, որ առանց պրակտիկայի տեսությունն անիմաստ է, սխոլաստիկական դատողությունների կույտ, իսկ առանց տեսության պրակտիկան կույր է, այսինքն՝ անհնար է կանխատեսել ու կարգավորել շարժման ընթացքը։

Մարքսի նախորդները չկարողացան հաստատել տեսության և պրակտիկայի միասնությունը, բացահայտել հասարակական զարգացման հիմնական օրինաչափությունները և դրանց հիման վրա կանխատեսել սոցիալիզմի հաղթանակի անխուսափելի անհրաժեշտությունը։ Կապիտալիզմի գիշատիչ բնույթը մերկացնելու հարցում դրական մեծ գործ կատարեցին ուտոպիստ սոցիալիստները, բայց նրանք սոցիալիզմը համարեցին միայն ցանկալի, դրա իրականացումը կապելով իշխող դասակարգի լուսավորության հետ։ Մարքսն առաջինն էր, որ սոցիալիզմը կապեց բանվորական շարժման հետ և, վերլուծելով բուրժուական հասարակության տնտեսական հարաբերությունները, ցույց տվեց, որ կապիտալիզմի զարգացմամբ «արտադրամիջոցների կենտրոնացումն ու աշխատանքի հանրայնացումը հասնում է այնպիսի մակարդակի, երբ իրենց կապիտալիստական թաղանթի հետ նրանք անհամատեղելի են դառնում»։ Ահա այդ ժամանակ «կապիտալիստական մասնավոր սեփականության ժամը հնչում է։ Սեփականազրկողները սեփականազրկվում են», այսինքն՝ հին հասարակությունն իր տեղը զիջում է նոր հասարակությանը։

Սա սոցիալիզմի հաղթանակի անխուսափելի անհրաժեշտության կանխատեսումն է, որն այսօր իրականություն է դառնում։ Բոլոր ճանապարհները տանում են դեպի կոմունիզմ։ Համաշխարհային բանվորական շարժման համար նշանաբան դարձած այս դրույթը Մարքսի գիտական կանխատեսումից արված մի եզրակացություն է։ Այս նշանակում է, որ Մարքսը ստեղծեց մի ուսմունք, որով ղեկավարվելն այսօր բոլոր ժողովուրդների համար անխուսափելի անհրաժեշտություն է դարձել։

Մարքսիզմի հակառակորդները փորձեցին անտեսել գիտության մեջ Մարքսի կատարած մեծագույն հեղաշրջումը։ Երբ այդ փորձը ձախողվեց, նրանք դիմեցին բոլոր միջոցների՝ մարքսիզմը հերքելու կամ գոնե խեղաթյուրելու, շահագործողների տիրապետությանը դրանից սպասվող վտանգը կանխելու համար։ Սակայն, անհնար էր հերքել մարքսիզմը՝ մարդկային ողջ գիտական մտքի և բանվորական շարժման պատմական զարգացման արդյունքը։ Ընդհակառակը, գնալով մարքսիզմն ավելի մասսայական է դառնում և ո՛չ միայն առաջադեմ քաղաքագետները, հասարակագետները, այլև բնագետները սկսում են խորապես համոզվել, որ առանց մարքսիզմի ինչպես հասարակական կյանքը, այնպես և գիտական միտքն իր խարխափումներից

դուրս գալ չի կարող։ Այս ճշմարտությունը հաստատվեց դարասկզբին՝ ֆիզիկայի ճգնաժամից դուրս բերելու ուղիների և մեթոդների հարցը որոշելիս։

Հայտնի է, որ բնագիտության մեջ կատարված մի շարք խոշոր հայտնագործությունները, մասնավորապես ատոմի ճեղքումն ու դրա ճառագայթման հայտնաբերումը, հարաբերականության տեսության սկզբունքի մուտքը գիտությունների մեջ և վերջինների մաթեմատիզացիան հակասության մեջ մըտան գիտության ընդունած մի շարք ընդհանուր դրույթների հետ, գիտնականների մեջ առաջ բերելով յուրօրինակ հուսալքում։ Եղան մարդիկ, որոնք հայտարարեցին, թե մատերիան չքանում է, մնում են միայն հավասարումները, թե գիտության հաստատած օրենքները իրականության նկատմամբ հիպոթեզներ են միայն, զուրկ օբյեկտիվ ճշմարտության նշանակությունից։

Կարճ ասած, գիտությունը, հատկապես ֆիզիկան, ճգնաժամ ապրեց։ Եղած փիլիսոփայական սիստեմներից ոչ մեկը չկարողացավ նպաստել, որ ֆիզիկան ձերբազերծվի ճգնաժամից։ Ընդհակառակը, դրանցից յուրաքանչյուրն աշխատեց բնագիտության դժվարություններն օգտագործել տերտերականության հասնող իդեալիզմի և մետաֆիզիկայի դիրքերն ամրացնելու, դրանով ավելի խորացնելու գոյություն ունեցող ճգնաժամը։ Մարքսիզմը, հանձին Լենինի, միակն էր, որ բնագետներին օգնության ձեռք մեկնեց, բացահայտելով ճգնաժամի պատճառներն ու ցույց տալով դրանից դուրս գալու ուղին։ Բնագիտության զարգացումը գիտական միտքը տարերայնորեն տանում է դեպի դիալեկտիկական մատերիալիզմը։ Խնդիրն այն է, որ տարերային շարժմանը տրվի գիտակցական ընթացք, որը վերջ կտա եղած ճգնաժամերին։ Գիտության մեջ տեղի ունեցող նորագույն հայտնագործությունները հաստատեցին լենինյան դրույթի ճշմարտացիությունը։

Բնագետներից ոմանք այն կարծիքին են, որ մարքսիզմը ուսմունք է միայն հասարակության մասին։ Հիմք ունենալով այդ, նրանք եզրակացնում են, որ մարքսիզմը ոչնչով իրենց օգնել չի կարող կամ այդ օգնությունն այնպիսին է, որ առանց դրան կարելի է յոլա գնալ։ Այդ հարցադրումը պարունակում է, առնվազն, երկու սխալ։ Առաջին. ճիշտ չէ, որ մարքսիզմը ուսմունք է միայն հասարակության մասին։ Իրականում այն ամբողջական փիլիսոփայական աշխարհայացք է, որը հավասարապես զբաղվում է ինչպես հասարակության, այնպես և բնության ընդհանուր օրինաչափություններով։ Դիալեկտիկայի օրենքները մշակվել են հիմք ունենալով նաև բնագիտության նվաճումները։ Փաստ է, որ առանց քիմիական տարրերի պարբերական սիստեմի, էներգիայի պահպանման ու վերածման օրենքի, անօրգանական նյութը օրգանականի վերածվելու հնարավորության ու բջջի հայտնաբերման, մատերիայի միասնության և բազմերանգության, դիալեկտիկական մատերիալիզմի սկզբունքը հաստատել անհնար է։ Բնագիտական ամեն մի դիսցիպլին, լինելով մատերիայի որևէ կոնկրետ օրինաչափությունների սիստեմի ուսումնասիրություն, կարող է հաջողությամբ առաջ գնալ, եթե ղեկավարվի մատերիայի բազմերանգության ու նրա բոլոր ձևերի միասնության դիալեկտիկական մատերիալիզմի սկզբունքով, եթե ճիշտ համակցի մասնավորն ընդհանուրի հետ, մասնավոր օրինաչափությունը դիտի ընդհանուրի իրականացման մասնավոր դեպք։ Կլասիկ մեխանիկայի օրենքների բացարձականացումից հրաժարվելը, դրանց որպես բնության ընդհանուր օրինաչափությունների մասնավոր ձևեր դիտելը հնարավորություն ընձեռեց հաղթահարելու ֆիզիկայի ճգնաժամը։



Երկրորդ. այդ հարցադրումը պարզապես եղած փաստերի անտեսում է։ Բանն այն է, որ դեռ «Սուրբ ընտանիք», այնուհետև «Գերմանական գաղափարախոսություն» աշխատությունների մեջ, հակադրվելով Հեգելի բնափիլիսոփայությանը, Մարքսն ու Էնգելսը զարգացրին այն միտքը, թե բնության միստիֆիկացումը հետևանք է դրա անջատմանը մարդկային պրակտիկայից և հակադրմանը վերջինին։ Մարդը բնության մի մասն է, սրա զարգացման արդյունքը։ Այդ արդյունքից, այսինքն՝ մարդու ծագումից հետո, բնության զարգացումը մարդու գործունեությունից դուրս կամ անկախ գոյություն չունի։ Փաստ է, որ բուսական և կենդանական աշխարհների զարգացման կարգավորման գործում մարդու դերը մեծ չափերի է հասել։ Նույնը պետք է ասել նաև անօրգանական աշխարհի մասին, եթե նկատի ունենանք բնության ուժերի, հատկապես էներգիայի աղբյուրների օրեցօր մեծ ծավալ ստացող օգտագործումը մարդու կողմից։ Ուստի, բնությունը հավերժ անփոփոխ «բնական հատկանիշներով» օժտված աբստրակտ ռեալականություն չէ, այլ պատմականորեն կոնկրետ է և տրված է մարդուն իր պրակտիկ գործունեության միջոցով։ Մարքսի այս միտքն այսօր էլ բնությունն ուսումնասիրելու առաջնորդող սկզբունք է։

Նույնը պետք է ասել նաև էվոլյուցիոն թեորիայի մասին։ Մարքսն ու Էնգելսը Դարվինին ողջունեցին, որը բուսական ու կենդանական աշխարհների մետաֆիզիկական ըմբռնմանը մահացու հարված հասցրեց։ Բայց նրանք, միաժամանակ, մի շարք սկզբունքային ուղղումներ մտցրին այդ մեծանուն մարդու ուսմունքի մեջ, որոնք դարվինիզմն ազատեցին մետաֆիզիկական խոտորումներից։ Ակադեմիկոս Վ. Լ. Կոմարովն իրավացի է, երբ ասում է, թե Մարքսի և Էնգելսի դիտողություններն առհասարակ բիոլոգիայի և, մասնավորապես, էվոլյուցիոն ուսմունքի մասին բնագիտության փիլիսոփայություն ստեղծելու անհրաժեշտ ցուցումներ են։ Եվ, վերջապես, մի՞թե Լենինի հիշատակած հարցադրումն այն մասին, թե բնագիտությունը տարերայնորեն գնում է դեպի դիալեկտիկական մատերիալիզմ, որպես նրա բուռն զարգացման արդյունք և նախադրյալներից մեկը, պակաս արժեքավոր մեթոդոլոգիական ցուցմունք է բնագիտության համար։

Այսպիսով, հիմք ունենալով վերոհիշյալ փաստերը, կարող ենք ասել, որ մարքսիզմը միայն հասարակական երևույթների ճանաչողության մեթոդ չէ, որ նա չի ստեղծվել միայն հասարակական կյանքի ուսումնասիրության հիման վրա, այն նաև բնագիտության ճանաչողության մեթոդ է, ձևավորված բնագիտական մեծաքանակ փաստերի հետազոտության հիման վրա։ Մարքսի ստեղծած ուսմունքը հավասարապես անհրաժեշտ է բոլորին՝ ինչպես գիտության ասպարեզում աշխատողին, այնպես էլ պրակտիկին, հասարակագետին ու բնագետին։ Դա հնացող ուսմունք չէ, որովհետև ոչ թե ինքնապարփակ մի սիստեմ է, այլ անընդհատ զարգացող գործողության մեթոդ։

ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ.

# ՄԱՐՔՍԸ ԵՎ ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ

Գիտությունը Մարքսի համար պատմականորեն շարժիչ, հեղափոխական ուժ էր,— ասել է Ֆ. Էնգելսը իր մեծ բարեկամի դամբանականում. այս մի քանի բառերով արտահայտված է այն ամենակարևորը, որ տեսնում ու գնահատում էր գիտական կոմունիստական աշխարհայացքի հանճարեղ հիմնադիրը գիտության մեջ։ Մեծ հեղափոխականին հետաքրքրում էր ամենից առաջ գիտության հեղափոխական ոգին ու դերը, նրա վերափոխիչ ներգործությունը հասարակության զարգացման վրա։ Եվ հենց Մարքսն է ամենայն խորությամբ բացահայտել գիտության սոցիալական բնույթն ու հեղափոխական մեծ դերը։

Գիտության վերաբերյալ մինչմարքսյան հայացքների մեջ տիրապետում էր իդեալիզմն ու վերացականությունը։ Քննել գիտության տեղն ու դերը հասարակական հարաբերություններից դուրս ու նրանցից անկախ, գերագնահատել նրա զարգացման մեջ սուբյեկտիվ գործոնների դերը՝ անկարող լինելով տեսնելու այդ զարգացման մեջ օբյեկտիվ օրինաչափություններն ու տենդենցները, գիտության հիմնական ֆունկցիան հանգեցնել զուտ լուսավորչական բնույթի խնդիրների կատարմանը և այլն,— այդպիսին էր տիրապետող հայեցողությունն այդ բնագավառում։ Գիտության շահադիտական օգտագործումը տիրապետող դասակարգերի կողմից, նրա տվյալների չարաշահումը հօգուտ այդ դասակարգերի, իր տեսական արտահայտությունն է գտել շահագործողական դասակարգերի գաղափարախոսության մեջ, գաղափարախոսություն, որն արդարացրել է գիտության տվյալների հակահումանիստական կիրառությունը։ Դրա հետ միասին, սկսած Վերածննդի դարաշրջանից, որը և ժամանակակից բնագիտության ծագման դարաշրջանն է, հանդիպում են ռացիոնալ գաղափարներ գիտության էության ու նրա սոցիալական, այդ թվում և արտադրական դերի վերաբերյալ, ազնիվ ձգտումներ՝ օգտագործել գիտության նվաճումները հօգուտ հասարակական առաջադիմության և աշխատավոր ժողովրդի, համարձակ կռահումներ՝ գիտության ապագա զարգացման և աճող դերի մասին։ Այդ ամենը իր որոշակի դերն է խաղացել գիտության սոցիալական բնույթի, զարգացման օրինաչափությունների և դերի վերաբերյալ մարքսիստական հիմնորոշ դրույթների և ամբողջական կոնցեպցիայի նախապատրաստման մեջ։

Մարքսը գիտության սոցիալական բնույթը ձևակերպել է մի հայտնի դրույթում, ըստ որի գիտությունը համընդհանուր պատմական զարգացման արգասիք է, որն աբստրակտ արտահայտում է այդ զարգացման քվինտեսենցիան (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 26, ч. I, стр. 399)։ Այս նշանակում է, որ գիտության մեջ ընդհանրացված և տեսական ամփոփման է ենթարկված մարդկանց պրակտիկ գործունեությունը, իմաստավորված նրանց դարավոր պայքարը բնության ուժերի դեմ, ինչպես և պայքարը հասարակական կարգերի բարելավման ուղղությամբ։ Գիտությունը հասարակական պրակտիկայի, ամենից առաջ, արտադրական պրակտիկայի, տեսական թանձրույթն է, մարդկանց հոգևոր գործունեության բարձրագույն արդյունքը։ Գիտությունը մարդկանց հոգևոր արտադրության ձևերից մեկն է և հասարակության ամբողջ հոգևոր ոլորտի հետ միասին ենթարկվում է որոշակի օրինաչափությունների։ Հասարակության նյութական կյանքի և նրա հոգևոր ոլորտի ընդհանուր օրինաչափության դասական ձևակերպումը տվել է Մարքսը. նյութական կյանքի արտադրության եղանակը պայմանավորում է կյանքի սոցիալական, քաղաքական և հոգևոր պրոցեսներն ընդհանրապես։ Դա էլ հենց գիտության զարգացման գլխավոր օրինաչափությունն է, օրինաչափություն, որն արտահայտում է գիտության և նրա ծնող սոցիալական պայմանների հարաբերությունը, նրա զարգացման պայմանավորվածությունը օբյեկտիվ տնտեսական գործոններով։

Մարքսյան այս հիմնորոշ դրույթները հնարավորություն են տալիս փնտրելու գիտության ծագման ու զարգացման ակունքները հասարակության նյութական կյանքի զարգացման մեջ և հասկանալու նրա զարգացման ընդհանուր ընթացքն ու հիմնական տենդենցները, որոնք առաջին հայացքից թվում են, թե կազմում են պատահական հայտնագործությունների մի անսիստեմ շարան, սուբյեկտիվ մոմենտների աններդաշնակ համակցություն, բայց ի հայտ են բերում իրենց ներքին տրամաբանությունը, երբ քննարկվում են հասարակության զարգացման արմատական օրինաչափությունների տեսանկյունից։

Քիչ չեն եղել փիլիսոփաներ, տնտեսագետներ ու գիտնականներ, որոնք դեռևս մինչև մարքսիզմի ծագումը ուշադրություն են դարձրել գիտության սոցիալական բնույթի վրա, նշել գիտության ազդեցությունը արտադրության վրա և այլն, բայց դրանցից ոչ մեկին վիճակված չի եղել բացահայտելու, նախ՝ արտադրության նշանակությունը գիտության զարգացման համար, երկրորդ գիտության նշանակությունն արտադրության համար, իր ամբողջ խորությամբ, այսինքն, որպես արտադրության հոգևոր գործոնի ու պոտենցիայի և դրանով իսկ, որպես արտադրողական ուժի, և երրորդ, քննելու գիտության դերը պատմականորեն տարբեր սոցիալական սիստեմներում։ Այդ և գիտության վերաբերյալ շատ ուրիշ խնդիրների լուծման ծառայությունը պատկանում է Մարքսին։

Դեռևս վաղ շրջանի իր աշխատություններից մեկում՝ «1844 թվականի տնտեսագիտական-փիլիսոփայական ձեռագրերում», Մարքսը մատնանշելով, որ նախկինում գիտությունը պատմագրության կողմից ուշադրության է առնըվել ի միջի այլոց, որպես լուսավորչության, օգտավետության, առանձին հայտնագործությունների գործոն, հակադրում է դրան միանգամայն նոր հայացք՝ առաջին պլանի վրա է մղում գիտության պրակտիկ դերը, սոցիալական նշանակությունը։ Բնագիտությունը,— ասում է Մարքսը,— ներխուժել է մարդկային կյանքի մեջ, վերափոխել է այն և նախապատրաստել մարդկության էմանսիպացիան, թեկուզ անմիջականորեն այն հարկադրված է մինչև վերջ հասցնել մարդկային հարաբերությունների ապամարդկայնացումը (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, М., 1956, стр. 595)։ Այս տողերում տրված է գիտության դերի գնահատականը մի ամբողջ պատմական ժամանա-

կաշրջանում և կանխատեսված նրա ավելի գործուն դերը ապագայում։

Գիտությունը միշտ էլ ունեցել է պրակտիկ նշանակություն, բայց այն նշանակությունը, որ Մարքսը բնութագրում է որպես ներխուժում մարդկային կյանքի մեջ և այդ կյանքի վերափոխում, այն ձեռք է բերել նոր ժամանակաշրջանում, մեքենայական արտադրության առաջացման հետ մեկտեղ։ Այս ժամանակաշրջանից է գիտությունը փոխարկվում անմիջական արտադրողական ուժի, և դրանով իսկ դառնում հասարակական առաջադիմության հզոր լծակներից մեկը։

Մեքենայական արտադրության ծագման պրոցեսի ուսումնասիրողները միշտ մատնանշել են, որ գիտությունը մեծ դեր է խաղացել այդ պրոցեսում, որը պատմության մեջ է մտել արդյունաբերական հեղաշրջում անվանմամբ, և այդ դերն անկասկած է։ Սակայն, մարքսիզմն ընդգծել է և այն հանգամանքը, որ հենց արտադրության զարգացման պահանջներն էին, որ կյանքի կոչեցին ժամանակակից բնագիտությունը և որ զարգացող արտադրությունը կարողացավ նրա վերելքի համար ստեղծել լուրջ նյութական ու տեխնիկական բազա։ Հայտնի է, որ մաթեմատիկայի, մեխանիկայի և մի շարք այլ գիտությունների սաղմնավորումը և առանձին նվաճումները վերաբերում են անտիկ աշխարհին, բայց հենց այն պատճառով, որ ստրկատիրական հասարակարգը տեղ չէր տալիս տեխնիկական առաջադիմությանը, գիտության տվյալների արտադրական կիրառմանը, գիտության ձեռքբերումները այդ հասարակարգում մնացին անհետևանք, գիտական միտքը ճահճացավ, ապա և մարեց։ Այլ բան ենք տեսնում մենք Վերածննդի դարաշրջանից սկսած։ Սկզբնավորվում է մի հասարակարգ, որի տեխնիկական բազիսը, Մարքսի բնութագրմամբ, շարժուն է ու հեղափոխական, հասարակարգ, որ իրեն ադեկվատ տեխնիկական բազիս է գտնում մեքենայական արտադրության մեջ, որը կարիք է զգում գիտության և պայմանավորում է նրա զարգացումը։ Մեքենաների սպորադիկ կիրառումը XVII դարում մաթեմատիկոսներին պրակտիկ հենակետեր ու խթաններ է տալիս ժամանակի մեխանիկայի ստեղծման համար, իսկ մեքենայական արտադրության զարգացումը պայմանավորում են էմպիրիկ ռուտինային եղանակների փոխարկումը բնագիտության գիտակցական կիրառումով (տե՛ս Կ. Մարքս, «Կապիտալ», հ. 1, 1954, էջ 367, 405)։

Մեքենայական արտադրության պայմաններում գիտության արտադրական կիրառությունը ստանում է որակական նոր բնույթ։ Եթե ամեն մի արտադրություն կարիք է զգում որոշակի հոգևոր գործոնի, և առհասարակ չի կարող լինել արտադրությունն առանց հոգևոր պոտենցիայի, ապա զարգացած մեքենաների վրա խարսխվող արտադրությունը կարիք է զգում այնպիսի հոգևոր գործոնի, ինչպիսին գիտությունն է։ Գիտությունն այստեղ կիրառվում է գիտակցորեն, խոշոր մասշտաբով և սիստեմատիկաբար, կիրառվում է արտադրության բոլոր ոլորտներում, այդ թվում և կառավարման։ Գիտության այդպիսի կիրառությունը նրան դարձնում է կարևորագույն արտադրողական ուժ։ Մարքսն է առաջին անգամ հիմնավորել տեսական ու պրակտիկ կարևորագույն նշանակություն ունեցող այն դրույթը, որ գիտությունը դառնալով արտադրության հոգևոր գործոնն ու պոտենցիան, այսինքն, կիրառվելով արտադրության մեջ՝ վերածվում է արտադրողական ուժի, և որ գիտության կիրառման հետևանքով, նրա տվյալները մարմնանում են արտադրության նյութական կոմպոնենտների, հատկապես մեքենաների մեջ, և դրանով իսկ հանդես բերում իրենց՝ որպես արտադրողական ուժի ֆունկցիան։ Գիտության, որպես արտա-



դրողական ուժի մարքսյան կոնցեպցիայի խոր հիմնավորումը տրված է «Քաղաքատնտեսության քննադատության հիմնական գծերը» աշխատության մեջ[1], որտեղ մասնավորապես ընդգծվում է հետևյալը. «Հիմնական կապիտալի զարգացումը ցուցանիշն է այն բանի, թե ի՛նչ աստիճանի է համընդհանուր հանրային գիտելիքը (Wissen, knowledge) փոխարկվել անմիջական արտադրողական ուժի և այստեղից՝ ցուցանիշն այն բանի, թե ի՛նչ աստիճանի են հասարակական բուն կենսապրոցեսի պայմանները ենթարկված համընդհանուր ինտելեկտի հսկողությանը և վերափոխված նրան համապատասխան, թե ի՛նչ աստիճանի են հասարակական արտադրողական ուժերը ստեղծված ոչ միայն գիտելիքի ձևով, այլև որպես հասարակական պրակտիկայի ռեալ կենսապրոցեսի անմիջական օրգանները» (Из рукописи К. Маркса «Критика политической экономии», «Вопросы философии», № 7, 1967, стр. 120)։ Այս խորիմաստ բանաձևման մեջ ցույց է տրված ոչ միայն այն, որ գիտությունը անմիջական արտադրողական ուժ է դառնում, որպես իրայնացված գիտելիք, որ փոխարկված է կապիտալի իրային կոմպոնենտի, այլև այն, որ գիտելիքը մտնում է արտադրության պրոցեսը և վերափոխում է այն, որ իրայնացված և անմիջաբար գործադրվող գիտությունը հանդես է գալիս արդեն որպես հասարակական պրակտիկայի անմիջական օրգան և, հետևաբար, արտադրության պրոցեսում իրայնացված գիտելիքներն ու կենդանի ինտելեկտուալ ուժը գործում են որպես միևնույն գիտության տարբեր գոյաձևեր, ընդ որում, ինքը՝ ինտելեկտուալ ուժը հանդիսանում է արտադրությունը հսկող ուժ։ Բայց դրանով չի սպառվում գիտության որպես արտադրողական ուժի մարքսյան ըմբռնման բովանդակությունը։

Մարքսը գիտությունը բնութագրում է որպես համընդհանուր հասարական ուժ, բացահայտելով դրանով գիտության այն առանձնահատկությունները, որ նա հանդիսանում է պատմական զարգացման արդյունք, սերունդների ինտելեկտուալ գործունեության հետևանք, համընդհանուր հարստություն, որը սակայն մասնավոր կապիտալիստական հարաբերությունների պայմաններում հանդես է գալիս որպես կապիտալի ուժ, կապիտալի իշխանություն աշխատանքի վրա։ Հարստության այդ տեսակը միաժամանակ և գաղափարական, և գործնական է։ Նա հարստություն է գաղափարների ձևով, որոնք կարող են գործադրվել անվերջ և ամենուր, եթե միայն դրանց գործադրման համար առկա են պայմաններ և պահանջներ։ Այդ գաղափարների գործադրումը նրանց դարձնում է միաժամանակ պրակտիկ ուժ, հասարակական պրակտիկայի կարևորագույն օրգան։ Հենց այն հանգամանքը, որ գիտությունը միաժամանակ և տեսական և գործնական հարստություն է, որ նրա գործադրման շրջանակները մշտապես աճում են, որ նրանք ժառանգվում են սերնդից սերունդ և այդ պրոցեսում ճշգրտվում, զարգանում ու գործադրման համար ավելի ու ավելի արդյունավետ դառնում, գիտությունը հանդես է գալիս, Մարքսի բնութագրմամբ, որպես հարստության ամենահուսալի, ամենահիմնավոր ձև։

Գիտության սոցիալական դերը ծավալվում է կոնկրետ պատմական պայմաններում և վերջիններիս համեմատ էլ դրսևորվում են նրա կիրառության եղանակն ու նպատակը։ Մարքսը բնականաբար, քննության հատուկ առարկա

---

[1] Այդ աշխատությունից հատվածներ են թարգմանված «Вопросы философии» ամսագրի 1965—1967 թթ. մի շարք համարներում, «Կ. Մարքսի՝ Քաղաքատնտեսության քննադատության ձեռագրից» խորագրով։

դարձրեց գիտության արտադրական և ամեն տեսակ այլ կիրառության բնույթն ու առանձնահատկությունները կապիտալիստական հասարակարգում։ Բացահայտելով այդ հասարակարգի զարգացման մեխանիզմը, Մարքսն ամենից առաջ ընդգծում էր նրա ներքին հակասականությունը, նրանում գործող ուժերի անտագոնիստական բնույթն ու պայքարը։ Ներքին հակասություններով լի սոցիալական այդ պայմանները իրենց կնիքն են դնում գիտության զարգացման բնույթի, նրա տվյալների կիրառության, հասարակական դերի վրա, դարձնում նրան կոնկրետ սոցիալական գործոն, նրա կիրառությանը տալիս հատուկ սոցիալական, դասակարգային բնույթ։

Գիտությունը կապիտալիզմի պայմաններում կիրառվում է ոչ թե առհասարակ, այլ կոնկրետ սոցիալական նպատակով,— կիրառվում է որպես շահագործման միջոց։ Այստեղ գիտության ֆունկցիան համանման է մեքենայի ֆունկցիային. երկուսն էլ ծառայում են որպես հավելյալ արժեքի արտադրության միջոց։ Մարդկային բանականության այդ օրգանները կապիտալը դարձնում է իր սեփական օրգանները և հակադրում դրանք աշխատավոր մարդկանց։ Դառնալով կապիտալի ուժ, գիտությունը, ինչպես և արտադրության մյուս գործոնները, դառնում են կապիտալի արտադրողական ուժ և դրանով իսկ հակակայում են բանվորներին որպես նրան խորթ ուժ։ «Ինչպես,—գրել է Մարքսը,—ճանրային աշխատանքի վրա խարսխված՝ գիտության, բնության ուժերի և աշխատանքի արդյունքների վիթխարի զանգվածների կիրառումները հանդես են գալիս միայն որպես աշխատանքի շահագործման միջոցներ, որպես հավելյալ աշխատանքի յուրացման միջոցներ, և հետևաբար՝ որպես ուժեր, որոնք պատկանում են կապիտալին և հակակայում են աշխատանքին» (Соч., т. 26, ч. I, стр. 399)։

Գիտության կապիտալիստական կիրառության առանձնահատկություններից մեկն այն է, որ նա արտադրության պրոցեսում անջատված է անմիջական արտադրողից, բանվորից և, այդ իմաստով, գործում է որպես ինքնուրույն ուժ, արտադրության ինքնուրույն գործոն։ Գիտության գործադրման համար այնտեղ էլ, իհարկե, պահանջվում են մարդիկ, բայց դրանք բանվորներ չեն, այլ մտավոր աշխատանքի մարդիկ, տեխնիկական մտավորականություն։ Այստեղ մենք գործ ունենք մի արտադրության հետ, որտեղ ֆիզիկական և մտավոր աշխատանքը անջատված են իրարից և հակադրված իրար։ Դա սկսվում է դեռ կապիտալիստական պարզ կոոպերացիայում, զարգանում է մանուֆակտուրային արտադրության մեջ և «իր ավարտին է հասնում խոշոր արդյունաբերության մեջ, որը գիտությունը որպես արտադրության ինքնուրույն պոտենցիա, զատում է աշխատանքից և նրան ստիպում ծառայելու կապիտալին» («Կապիտալ», հ. I, էջ 381)։ Արտադրության պրոցեսի ինտելեկտուալ ուժերի անջատումը ֆիզիկական աշխատանքից ծանր հետևանքներ են ունենում բանվոր դասակարգի համար։ «Ամայացման ենթարկված մեքենայական բանվորների մասնագործական հմտությունը, որպես մի չնչին և ոչ մի նշանակություն չունեցող դետալ, չքանում է գիտության հանդեպ, բնության վիթխարի ուժերի և հասարակական մասսայական աշխատանքի հանդեպ, որոնք մարմնավորում են մեքենաների սիստեմի մեջ և սրա հետ միասին ստեղծում են «գործատիրոջ» (master) իշխանությունը» («Կապիտալ», հ. I, էջ 444)։

Գիտության և մարդկային ամեն մի այլ ստեղծագործության կապիտալիստական կիրառության ավերիչ ներգործությունը աշխատավոր ժողովրդի վրա սկսվում է կապիտալիզմի զարգացման նախնական աստիճանից և այդ հասա-



րակության զարգացման զուգընթաց ավելի այլանդակ բնույթի ու հրեշավոր չափերի է հասնում, ընդ որում ոչ միայն արտադրության մեջ, այլև հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, մասնավորապես ռազմական գործում։ Իմպերիալիզմի դարաշրջանում միլիտարիզացիայի է ենթարկվում գիտությունը։ Գիտության վերջին տվյալների հիման վրա ստեղծվում են մասսայական ոչնչացման ու ավերման զենքեր, որոնց գործադրման սպառնալիքը կախված է ամբողջ մարդկության վրա. մի խոսքով ծայրահեղ աստիճանի է հասնում այն պրոցեսը, որը Մարքսը բնութագրել է որպես մարդկային հարաբերությունների ապամարդկայնացում։ Սակայն, դրա հետ միասին աճում ու լեռնանում են հասարակության առաջադիմական ուժերը, ժողովուրդների ազատագրական շարժումը. համընդհանուր պայքարն հանուն այն բանի, որ մարդկային բանականության պտուղները օգտագործվեն հօգուտ մարդկության, գիտությունը կիրառվի հումանիստական նպատակով, և հենց այդ պայքարում իր անփոխարինելի դերն ունի գիտությունը։

Բացահայտելով գիտության կապիտալիստական կիրառության էությունը, Մարքսը միաժամանակ ցույց տվեց, որ նման կիրառությունը բխում է ոչ թե գիտության բուն էությունից, ինչպես փորձում են հավատացնել բուրժուական գաղափարախոսներից ոմանք, այլ այն սոցիալական հարաբերությունների բնույթից, որոնց պայմաններում չկա առաջադիմություն առանց անտագոնիզմի։ Իսկ այդ հարաբերությունները հավերժական չեն։ Կապիտալիզմն ինքն է ստեղծում այն նախադրյալներն ու ուժերը, որոնք կանխորոշում են նրա անկումը և փոխարինումը ավելի բարձր հասարակական կարգերով։ Այդ ուժերի մեջ է մտնում և գիտությունը, որը փոխարկվելով անմիջական արտադրողական ուժի և հանդես գալով որպես արտադրության զարգացման զորեղ գործոն, նպաստում է սոցիալական առաջադիմությանը, մարդկային գործունեության հիմնական ոլորտում. գիտությունը ընդ սմին գործում է որպես կապիտալիստական հասարակարգի ընդերքում հասունացող հիմնական կոնֆլիկտի՝ արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների միջև ծավալվող կոնֆլիկտի և դրա վճռման կարևոր գործոն։ Դա հատուկ ընդգծված է Մարքսի կողմից. «...Արդի արդյունաբերության և գիտության միջև մի կողմից և մյուս կողմից, աղքատության ու անկման միջև՝ գոյություն ունեցող անտագոնիզմը, մեր դարաշրջանի արտադրողական ուժերի և հասարակական հարաբերությունների միջև գոյություն ունեցող այս անտագոնիզմը մի շոշափելի, ճնշող և անվիճելի փաստ է» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս. Ընտիր Երկեր, հ. 1, էջ 423)։ Բայց գիտության՝ որպես հասարակական առաջադիմության կարևոր գործոնի դերը չի սպառվում նյութական արտադրության ոլորտում։

Ինչպես լայն, գործնականորեն անսահմանափակ են գիտության՝ որպես իրականության արտացոլման և իմաստավորման ձևի, օբյեկտներն ու բնագավառները, այնպես էլ, հասարակության զարգացման համեմատ, ընդլայնվում են նրա տվյալների գործադրման բնագավառներն ու հնարավորությունները։ Մարքսը և Էնգելսը գիտության մեջ տեսնում էին հեղափոխական ուժ, նկատի առնելով ինչպես նրա աճող դերը բուն նյութական արտադրության մեջ, այնպես էլ մարդկային բոլոր հարաբերությունների մեջ, հասարակության վերնաշենքում, քաղաքական ու գաղափարական ոլորտներում։ Գիտությունը բացահայտելով հասարակության զարգացման օրենքները և կանխատեսելով այդ զարգացման հեռանկարները, զինում է դրանով իսկ հասարակության առաջադիմական ուժերին «պայքարի ճշգրիտ լոզունգով», կողմնորոշում է նրանց հա-

սարակական բարդ իրադրության մեջ, դառնում է աշխարհի հեղափոխական վերափոխման տեսական բազան։ «Քննադատության զենքը,— գրել է Մարքսը իր հեղափոխական գործունեության սկզբին,— չի կարող, իհարկե, փոխարինել զենքի քննադատությանը, նյութական ուժը պետք է տապալել հենց նյութական ուժով, բայց տեսությունն էլ նյութական ուժ է դառնում, հենց որ նա տիրապետում է մասսաներին» (Соч., т. I, стр. 422)։

Եթե բնության օրենքների իմացությունը անհրաժեշտ պայման է բնության ուժերը մարդու կամքին ենթարկելու համար, ապա նույնպիսի կարևորություն է ներկայացնում հասարակության զարգացման օրենքների իմացությունը հասարակական կյանքի հեղափոխական վերափոխման համար։ Մարքսի և նրա զինակից Էնգելսի մեծագույն ծառայությունն այն է, որ նրանք ստեղծեցին իսկական գիտություն հասարակության զարգացման ու նրա կոմունիստական վերափոխման մասին և դրանով զինեցին այդ պատմական պրոցեսի կենսագործողներին։ «Մարքսի և Էնգելսի մատուցած ծառայությունը,— գրել է Վ. Ի. Լենինը,— մի քանի բառով կարելի է արտահայտել այսպես, նրանք սովորեցրին բանվոր դասակարգին ինքնաճանաչություն և ինքնագիտակցություն, և երազանքների տեղը դրին գիտությունը» (Երկեր, հ. 2, էջ 7)։

Բնության և հասարակության վերաբերյալ գիտությունները միևնույն միասնական գիտության տարբեր բնագավառներն են, որոնք ելնում են միևնույն աշխարհհայացքային սկզբունքներից, ունեն նույն տրամաբանական կառուցվածքը և ենթարկվում են զարգացման ընդհանուր օրինաչափություններին։ Սակայն, դասակարգային հասարակության մեջ որոշակիորեն տարբերվել են նրանց զարգացման պայմանները, իսկ նրանց իմացական ու սոցիալական դերն ու ֆունկցիաները ոչ միայն տարբեր, այլև շատ հաճախ տրամագծորեն հակառակ մեկնաբանություն ու գնահատություն են ստացել տարբեր դասակարգերի գաղափարախոսների կողմից։ Բուրժուական փիլիսոփայության և սոցիոլոգիայի մեջ քիչ փորձեր չեն կատարվել ժխտելու հասարակության մասին գիտության հնարավորությունն առհասարակ, ինչպես և միմյանց հակադրելու գիտության այդ գլխավոր բնագավառները, կամ, ընդհակառակն, նույնացնելու բնության և հասարակության օրենքները։ Նման փորձերը արդյունք են իրականության իդեալիստական ու մետաֆիզիկական ըմբռնման և վերջին հաշվով արտահայտում են այն սոցիալական ուժերի շահերը, որոնք շահագրգռված չեն աշխարհի գիտական իմացությամբ կամ հասունացած չեն այդպիսի իմացության համար։ Պատմության ամենահեղափոխական դասակարգի գաղափարախոսին էր վիճակված բացահայտելու բնագիտության և հասարակագիտության օրգանական միասնությունը և դրանց փոխադարձ ներթափանցումը, ինչպես և ցույց տալու դրա օբյեկտիվ հիմքն ու պայմանը՝ բնության և հասարակության միասնությունը։ Պատմությունն ինքը բնության պատմության մի մասն է,— գրել է Մարքսը,— իսկ բնությունը՝ մարդու մասին գիտության անմիջական առարկան (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Из ранних произведений, стр. 596)։

Մարդու և բնության խորթացումը ու դրա տեսական դրսևորումները որոշակի պատմական պայմանների, հասարակության թերզարգացման արդյունք են եղել։ Հասարակության զարգացումը գործնականում և իմացության մեջ տանում է դեպի դրանց միասնությունը և դրանով իսկ նոր հարաբերության ստեղծումը բնագիտության և հասարակագիտության միջև։ «Հետագայում,— կանխատեսել է Մարքսը,— բնագիտությունը իր մեջ կառնի մարդու մասին գիտությունը նույն չափով, ինչ չափով մարդու մասին գիտությունը իր մեջ կառնի



բնագիտությունը. դա կլինի մեկ գիտություն» (Նույն տեղը)։ Բնագիտության և հասարակագիտության փոխադարձ ներթափանցման այդպիսի բարձր մակարդակի համար սոցիալական հիմք ու պայման կարող են կազմել միայն կոմունիստական կարգերը, որոնց պայմաններում արմատական, որակական տեղաշարժեր են տեղի ունենում գիտության զարգացման, արտադրական կիրառության և ամբողջ սոցիալական ֆունկցիայի մեջ։ Գիտության ապագա զարգացումը և հատկապես նրա կիրառության բնույթն ու հիմնական գծերը կանխատեսված են Մարքսի կողմից։

Ի հակադրություն կապիտալիստական կարգերի, որտեղ արտադրությունը գոյություն ունի արտադրության համար, բանվորը արտադրության պրոցեսի, և ոչ արտադրության պրոցեսը բանվորի համար, Մարքսը կանխատեսում է հասարակության զարգացման ավելի բարձր աստիճան, որտեղ արտադրությունը կդառնա աշխատավորի իսկական մարդկային զարգացման աղբյուր, և որի իրական հիմքն ու հիմնական սկզբունքը կլինի ամեն մի ինդիվիդումի լիակատար ու ազատ զարգացումը (տե՛ս Կապիտալ, հ. I, էջ 620)։ Գիտությունը, որ կապիտալիզմի ժամանակ զատվում է բանվորից և հակադրվում նրան որպես խորթ ուժ, շահագործման միջոց, որպես կապիտալի իշխանության օրգան,— կոմունիստական կարգերում գտնում է իր իսկական տեղն ու դերը, դառնում աշխատավոր մարդկանց սեփականությունը, նրանց հոգևոր զարգացման հիմնական աղբյուրը։ Գիտությունն այստեղ դառնում է անմիջական արտադրողական ուժ, ոչ միայն այն բանի հետևանքով, որ նրա տվյալները մարմնանում են արտադրության նյութական օբյեկտների մեջ, ընդ որում ավելի մեծ չափերով, քան երբևէ նախկինում, այլև, ու դա գլխավորն է, այն բանի հետևանքով, որ նա դառնում է աշխատավոր մարդկանց սեփականությունը, որը գործադրվում է նրանց կողմից որպես իրենց սեփական գիտելիքը և ուժը, գործադրվում է հենց իրենց համար, ամբողջ հասարակության զարգացման համար։ Գիտության ու տեխնիկայի բարձր զարգացման շնորհիվ, այստեղ այնուհետև փոխվում է աշխատողի տեղը արտադրության մեջ. նա դադարում է լինել արտադրության պրոցեսի անմիջական ագենտը, դուրս է գալիս արտադրության պրոցեսից և կանգնում նրա հետ կողք-կողքի որպես այդ պրոցեսի կարգավորիչ և վերահսկիչ, ընդ որում այդ ֆունկցիաների կատարման համար նա լայնորեն օգտագործում է ավտոմատ սարքավորումներ։ Հասարակությունը հասնում է զարգացման այնպիսի աստիճանի, որի դեպքում արտադրողական ուժ, հետևաբար և մեծագույն հարստություն է դառնում ազատ ժամանակը, որովհետև դա լցվում է հարուստ բովանդակությամբ, ծառայում է մարդու համակողմանի զարգացմանը և դրանով իսկ՝ նրա, որպես արտադրողական ուժի դերի բարձրացմանը։ Վերանում է ազատ ժամանակի և անմիջական աշխատաժամանակի հակադրությունը. աշխատանքը դառնում է կենսական անհրաժեշտություն, բայց ոչ թե խաղ կամ զվարճանք, ինչպես կարծում էր Ֆուրիեն, և ոչ միայն նա,— հիմա էլ հանդիպում են հայացքներ, որոնք կոմունիստական աշխատանքը պատկերում են գլխավորապես որպես միայն հեշտ զբաղմունք։ Այնինչ աշխատանքը ավելի ու ավելի հարուստ բովանդակությամբ կլցվի, կընդունի ավելի ու ավելի ստեղծագործական բնույթ, հետևաբար և ավելի լարված, բայց բնավ ոչ հյուծող կամ ձանձրալի։ Ազատ ժամանակը նոր բովանդակություն կտա և աշխատաժամանակին։ «Ազատ ժամանակը,— ամփոփում է իր հանճարեղ կանխատեսումները Մարքսը,— որ իրենից ներկայացնում է ինչպես ժամանց, այնպես էլ ժամանակ ավելի վեհ գործունեության հա-

մար—հասկանալի է, դարձնում է նրան, ով ունի այդ ժամանակը, մի այլ սուբյեկտ և որպես այդ այլ սուբյեկտ, նա էլ հետո մտնում է արտադրության անմիջական պրոցեսի մեջ։ Արտադրության այդ անմիջական պրոցեսը ձևավորվող մարդու նկատմամբ, դրա հետ միասին դիսցիպլինայի դպրոց է հանդիսանում, իսկ ձևավորված մարդու նկատմամբ, մարդու, որի գլխում ամբարկայվել են հասարակության կուտակված գիտելիքները, նա իրենից ներկայացնում է [գիտելիքների] կիրառություն, էքսպերիմենտալ գիտություն, նյութականորեն ստեղծագործական և առարկայորեն մարմնացած գիտություն» (Из рукописи К. Маркса «Критика политической экономии». «Вопросы философии», № 7, 1967, стр. 124)։

Բայց գիտության դերը կոմունիստական կարգերում չի սպառվելու նրանով, որ նա մեծապես նպաստելու է հասարակության և բնության միջև կատարվող պրոցեսի կատարելագործմանը, որ նա մարդկանց հնարավորություն է տալու իրենց և բնության միջև նյութափոխանակությունը իրականացնել «ուժերի նվազագույն ծախսումով և այնպիսի պայմաններում, որոնք ամենից ավելի արժանավոր են իրենց մարդկային բնությանը և համապատասխան են նրան» («Կապիտալ». հ. III, մ. II, 1949, էջ 360),— գիտությունը կդառնա մարդկային ուժերի զարգացման զորեղ գործոն, զարգացում, որ չի թելադրվի որևէ արտաքին հանգամանքով, այլ կլինի ինքնանպատակ, և այստեղ է հենց «ազատության իսկական թագավորությունը»։

Հասարակության ապագա զարգացման և նրանում գիտության աճող դերի վերաբերյալ Մարքսի կանխատեսումները իրենց հիմքում ունեին հասարակական կյանքի ռեալ պրոցեսների՝ օբյեկտիվ օրինաչափությունների խոր ուսումնասիրությունը, և արդեն պատմության փորձով հաստատված է դրանց ճըշմարտացիությունը։ Սոցիալիզմի երկրում գիտությունը դարձել է աշխատավոր ժողովրդի սեփականությունը և նրա բարիքները պատկանում են ամբողջ ժողովրդին։ Գիտատեխնիկական հեղափոխությունը բացում է նորանոր հնարավորություններ արտադրության մեջ որակական փոփոխություններ կատարելու համար, ավելի մեծ չափերով է գիտությունը փոխարկվում անմիջական արտադրողական ուժի և արդեն բողբոջում են արտադրության ճյուղեր, որոնք իրենցից ներկայացնում են էքսպերիմենտալ գիտություն։ Փոխվել է մարդու տեղն ու դերը արտադրության պրոցեսում, բարձրացել է բանվոր դասակարգի կուլտուրական մակարդակն ու տեխնիկական որակավորումը, կատարելագործվում է սոցիալիստական աշխատանքը, որը փոխարկվում է կոմունիստական ստեղծագործ, բովանդակալից աշխատանքի, և միաժամանակ աճում է աշխատավորների ազատ ժամանակը, մարդու համակողմանի զարգացման այդ կարևոր պայմանը։ Գիտությունը դարձել է կոմունիստական պրոգրեսի հզոր լծակը։

***

Մարքսի կյանքը գիտական ստեղծագործության անօրինակ սխրանք է։ Ավելի քան քառասուն տարվա ընթացքում մտքի ու կամքի այդ հսկան իր հավատարիմ զինակից և մեծ մտածող Ֆ. Էնգելսի հետ միասին հիմնադրեց ու կոփեց մի ուսմունք, որի մեջ օրգանապես միահյուսվում են գիտականությունն ու հեղափոխականությունը և որը դարձել է աշխարհի վերափոխման տեսական բազան։

Պատմությանը հայտնի են ոչ քիչ գիտական հայտնագործություններ, որոնք հեղաշրջում են կատարել մարդկային մտքի տարբեր բնագավառներում,



նոր հորիզոններ բացել մարդկության զարգացման ու հասունացման համար, նոր հնարավորություններ ստեղծել հոգևոր արտադրության ակտիվ դերի դըրսևորման համար։ Մարքսի և Էնգելսի կատարած հեղաշրջումը ուրույն տեղ է գրավում պատմության մեջ։ Դա հեղաշրջում էր փիլիսոփայության և ամբողջ հասարակական մտքի մեջ, որի շնորհիվ սոցիալիզմը ուտոպիայից դարձավ գիտություն, գիտություն նոր հասարակարգ կառուցելու մասին։

Այն, ինչ կատարեց Մարքսը գիտության համար, ոչ միայն գիտությունը բարձրացրեց մի նոր աստիճանի, որտեղից մտքի առջև նոր հորիզոններ և ծավալման համար նոր ուղիներ բացվեցին, այլև նոր վերաբերմունք ստեղծեց դեպի գիտությունն ինքը, նրա պրակտիկ ու տեսական արժողությունը։ Դարեր առաջ է հնչել իմաստուն դարձվածքը՝ «գիտությունը ուժ է»։ Մարքսը նոր իմաստ ու բովանդակություն տվեց այդ դարձվածքին. գիտությունը վերափոխիչ, ստեղծագործական ուժ է։ «Փիլիսոփաները միայն տարբեր կերպ բացատրել են աշխարհը, բայց խնդիրը նրա փոխելն է»,—գրել է Մարքսը։ Նրա ստեղծած գիտությունը աշխարհ վերափոխող գիտություն է, գիտություն, որ չի ճանաչում ոչ մի նախապաշարմունք և գիտե միայն մի ուղի՝ ճշմարտության որոնման ու հաստատման ուղին։

Թե ինչպիսին էր Մարքսը որպես գիտության մարդ, դա երևում է հենց նրանից, որ նա գիտության համար նշանաբան էր համարում մեծ Դանթեի խոսքերը. այստեղ պետք է հոգու ամրություն, այստեղ վախը չպիտի խորհուրդ տա։ Հոգու անօրինակ ամրություն էր պետք Մարքսին ելնելու դեմ-հանդիման ամբողջ պաշտոնական աշխարհին ու նրա «գիտությանը», բարձրացնելու ճնշման ու հալածանքի աշխարհի վրա ճշմարտության դրոշը և հռչակելու, որ գիտությունը պետք է պատկանի և ծառայի աշխատավոր ժողովրդին։

Մարքսի ստեղծած գիտությունն արդեն իր գոյության երկրորդ հարյուրամյակն է թևակոխել և պատմության զարգացման հետ միասին ավելի խոր է դրսևորվում նրա մեծ ուժն ու ներգործությունը հասարակության կյանքի վրա։ Այդ գիտությունը, որ զարգացել ու հարստացել է Վ. Ի. Լենինի հանճարով և զարգանում ու հարստանում է պատմության նոր փորձի, կոմունիստական շինարարության պրակտիկայի հիման վրա, ամենազոր է, որովհետև ճշմարիտ է։



ԹՈՎՄԱՍՅԱՆ Ն. Ռ.

# ՔԱՂԱՔԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՂԱՇՐՋՈՂԸ

*Մարքսիզմն արմատական հեղաշրջում հանդիսացավ գիտության երեք խոշոր բնագավառներում՝ փիլիսոփայության, քաղաքատնտեսության և սոցիալիզմի պատմության մեջ։ Նրա երեք բաղկացուցիչ մասերը սերտորեն կապված և փոխադարձաբար պայմանավորված են միմյանցով։ «Մարքսի մշակած ուսմունքը,— ինչպես ասված է ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի թեզիսներում,—* մի ամբողջական աշխարհայացք է, փիլիսոփայական, տնտեսագիտական և սոցիալ-քաղաքական հայացքների մի կուռ համակարգ»:

*Մարքսիզմի մեջ գլխավորը տնտեսագիտական ուսմունքն է, որը խարսխվում է նոր պատմափիլիսոփայության՝ պատմության մատերիալիստական թեորիայի սկզբունքների վրա։ Կիրառելով այդ ուսմունքի սկզբունքները կապիտալիստական հասարակության զարգացման օրինաչափությունների հետազոտության բնագավառում, Մարքսը գիտականորեն հիմնավորեց կապիտալիզմը սոցիալիստական կարգերով փոխարինելու անխուսափելիությունը։*

*Մարքսը ցույց տվեց, որ հասարակության զարգացման զսպանակը ոչ թե մարդու «մետաֆիզիկական բնությունն» է, ինչպես պնդում էին XVIII դարի բուրժուական մտածողները, այլ նյութական արտադրության պրոցեսը, որտեղ զբաղված մարդկանց հարաբերությունների ամբողջությունը կազմում է հասարակության տնտեսակարգը։ Քաղաքատնտեսությունն ուսումնասիրում է մարդկանց արտադրական հարաբերությունները, որոնց արտահայտության ձևերը՝ տնտեսական կատեգորիաներն ունեն կոնկրետ պատմական բովանդակություն։ Քաղաքատնտեսության ուսումնասիրության գիտական ըմբռնման շնորհիվ միայն հնարավոր դարձավ բացահայտել հասարակական հարաբերություններին ներհատուկ հակասությունների էությունը և գիտականորեն հիմնավորել տնտեսական ֆորմացիաների հաջորդափոխության անխուսափելիությունը։*

*Տնտեսական հետազոտությունների իր մեթոդը Մարքսն անվանեց աբստրակտ մեթոդ, որը մատերիալիստական դիալեկտիկայի սկզբունքների կիրառումն է տնտեսական երևույթների ուսումնասիրության բնագավառում։ Բնական գիտությունների կողմից օգտագործվող փորձարկին քաղաքատնտեսության մեջ փոխարինում է աբստրակցիայի ուժը, առանց որի անհնարին է բացահայտել տնտեսական երևույթների ներքին պատճառակցական կապակցությունները, երևույթի և էության դիալեկտիկական կապը և հանգել գիտական եզրակացությունների։*

*Տնտեսական երևույթների ուսումնասիրության աբստրակտ մեթոդը կիրառել են նաև բուրժուական կլասիկ տնտեսագետները, որոնց մոտ, սակայն, այդ մեթոդը հակապատմական է, մետաֆիզիկական։ Տնտեսական կատեգորիաները նրանք դիտում էին որպես մեկ ընդ միշտ տրված ավարտուն մեծություններ, առանց հետազոտելու պատմական զարգացման պրոցեսում նրանց կրած որակական փոփոխությունները։ Ռիկարդոյի մասին Մարքսը գրում է, որ նա շրջանցում է «անհրաժեշտ միջանկյալ օղակները և փորձում է անմիջականորեն ապացուցել տնտեսական կատեգորիաների համընկնումը միմյանց հետ»[1]։*

*Ժամանակակից բուրժուական տնտեսագետները քաղաքատնտեսության կատեգորիաների էությունը փորձում են մեկնաբանել մարդկանց հոգեբանության, կրոնա-բարոյական երևույթների վերլուծության միջոցով, իսկ երբեմն էլ դրանք դիտում որպես սոսկ տեխնիկական, տեխնոլոգիական երևույթների արտահայտության ձևեր։ Բոլոր դեպքերում էլ նրանք նպատակ ունեն տնտեսական կատեգորիաները ներկայացնել որպես սոցիալական, դասակարգային բովանդակությունից զուրկ գաղափարական աբստրակցիաներ։ Այսպես, օրինակ, հոգեբանական ուղղության ներկայացուցիչները կապիտալիստական կարգերին հատուկ սոցիալական աղետների (գործազրկության, ճգնաժամերի) պատճառը համարում են մարդու հոգեբանությանը հատուկ կուտակման ձգտումը, կամ տեխնիկական առաջընթացն ու արտադրության տեխնոլոգիայի կատարելագործումը։*

*Ջ. Քեյնսի «լրիվ զբաղվածության տեսության» հիմքում ընկած է նրա այն «հիմնական հոգեբանական օրենքը», ըստ որի մարդկանց հոգեբանությանը բնորոշ կուտակման ձգտումը ստեղծում է անհամամասնություն կուտակման ու սպառման միջև, իսկ խնայողություններն արգելակում են արտադրության ընդլայնումը։ Դրա հետևանքով աճում է գործազրկությունը, կրճատվում վճարունակ պահանջը և վրա է հասնում գերարտադրության տնտեսական ճգնաժամը։ Այդ աղետը վերացնելու համար Քեյնսը մատնանշում է արտադրության ընդլայնման հետևյալ աղբյուրները՝ ա) բանվորների «ռեալ աշխատավարձի աստիճանաբար կամ ավտոմատիկ իջեցում՝ գների բարձրացման հետևանքով»[2], բ) պետական բյուջեից ձեռնարկություններին ցածր տոկոսով, կամ նույնիսկ անտոկոս վարկավորում և գ) որպես էժան վարկի առատ աղբյուր մեծ քանակությամբ էմիսիայի բաց թողում։ Դժվար չէ նկատել, որ այս բոլոր միջոցներն էլ ելնում են ֆինանսական կապիտալի շահերից և ուղղված են բանվոր դասակարգի դեմ։*

*Ժամանակակից տեխնոլոգիական դպրոցի ներկայացուցիչներից Ռ. Թիոբոլտը գրում է, որ արտադրության պրոցեսի գիտա-տեխնիկական հեղաշրջման հետևանքով առաջիկա տարիներում կստեղծվի հսկայական գործազրկություն։ Այս սոցիալական կոնֆլիկտը չեզոքացնելու ուղին նա համարում է*

---

1 К. Маркс, Теории прибавочной стоимости (IV том «Капитала»), Москва, 1957, стр. 158.

2 Дж. М. Кейнс, Общая теория занятости, процента и денег, Москва, 1948, стр. 255—256.

պետական օրգանների կողմից բաշխման ռացիոնալ սիստեմի մշակումը, երբ առատ կերպով կբավարարվեն բոլոր քաղաքացիների պահանջմունքները՝ անկախ այն բանից, նրանք աշխատում են, թե ոչ։ Ահա այս և նման տնտեսագիտական սոփեստություններով է, որ ժամանակակից բուրժուական տնտեսագետները փորձում են քողարկել կապիտալիզմին ներհատուկ հակասությունները և այդ կարգերը փառաբանել որպես հասարակության կազմակերպման ամենառացիոնալ սիստեմ։

Բուրժուական կլասիկ քաղաքատնտեսության ներկայացուցիչների համար ժամանակի հասարակական հարաբերությունների և գիտության զարգացման մակարդակը չէր կարող բավարար հիմք հանդիսանալ՝ լուծելու հավելյալ արժեքի (շահույթի) պրոբլեմը։ Ապրանքային արտադրության հետագա զարգացումը Մարքսին հնարավորություն տվեց ստեղծել ուսմունք աշխատանքի երկակի բնույթի, աշխատուժ-ապրանքի և նրա առանձնահատկությունների մասին։ Դրանով իսկ Մարքսը լուծեց հավելյալ արժեքի պրոբլեմը և բացահայտեց նրա փոխակերպված արտահայտությունների (շահույթի, տոկոսի և ռենտայի) էությունը, նրանց ներքին դիալեկտիկական կապակցությունները։

Հավելյալ արժեքի թեորիան հանդիսանում է Մարքսի տնտեսագիտական ուսմունքի անկյունաքարը։ Կապիտալիստական հասարակարգում հայտնագործելով աշխատուժ-ապրանք կատեգորիան, Մարքսը ցույց տվեց նրա նոր արժեք, հավելյալ արժեք ստեղծելու հատկությունը, որով և այն տարբերվում է մնացած ապրանքային աշխարհից։ Մարդու գործունեությունը ունի այն առանձնահատկությունը, որ նրա աշխատուժը արտադրության պրոցեսում ստեղծում է իր արժեքից ավելի մեծ արժեք, հավելյալ արժեք, որը և կապիտալիստական հասարակարգում դառնում է կապիտալի կուտակման կենդանի աղբյուրը։ Արտադրության պրոցեսում, կոնկրետ աշխատանքի միջոցով, արտադրության միջոցների արժեքն է փոխանցվում նոր արտադրված ապրանքներին, մինչ աբստրակտ աշխատանքի միջոցով վերարտադրվում է աշխատուժի արժեքն ու ստեղծվում հավելյալ արժեք։ Բանվորների աշխատանքի չվճարված մասի արդյունքը յուրացվում է կապիտալիստների կողմից։ Մարքսը ցույց տվեց, որ հավելյալ արժեքի արտադրությունը հանդիսանում է կապիտալիստական արտադրության բուն բովանդակությունը, իսկ նրա արտադրության մեթոդների կատարելագործումը՝ կապիտալիստների գործելակերպը։

Կապիտալիստական հասարակարգի զարգացման, նրա առաջընթացի նյութական հիմքը հավելյալ արժեքի արտադրությունն է ու նրա կուտակումը։ Բանվոր դասակարգի կողոպուտը կապիտալիստների կողմից դառնում է կապիտալիստական մասնավոր սեփականության անընդհատ մեծացման ելակետն ու միակ պայմանը։ Հետևաբար, բուրժուական մասնավոր սեփականությունը, որ դարեր շարունակ փառաբանվել է որպես անձեռնմխելի սրբություն, այլ բան չէ, քան բանվոր դասակարգի սեփական աշխատանքի արդյունքի յուրացում։ Այսպիսով, Մարքսը հավելյալ արժեքի տեսությամբ բացահայտեց կապիտալիստական հասարակության շահագործողական էությունը, գիտականորեն հիմնավորեց նրա կործանման և նոր սոցիալիստական կարգերի ստեղծման անխուսափելիությունը, որով և սոցիալիզմը ուտոպիայից դարձրեց գիտություն։ Ահա թե ինչու հավելյալ արժեքի մարքսյան թեորիան, Էնգելսի դիպուկ արտահայտությամբ, պարզ երկնքից ճայթող կայծակի տպավորություն թողեց և այն էլ բոլոր քաղաքակիրթ երկրներում։



Բուրժուական հասարակության բոլոր գովերգուները այդ ուսմունքը ընդունեցին սվիններով։ Նրանք հենց շեմից մերժեցին արժեքի և հավելյալ արժեքի մարքսյան ուսմունքը։ Մարքսի այսպես կոչված «բարեկամներն» այն հայտարարեցին որպես «թեորիական սխեմա» իսկ բուրժուական քննադատներից «բարյացակամները» լավագույն դեպքում այդ ուսմունքը որոշ առումով տրամաբանական են համարում անցյալ՝ XVIII—XIX դարերի համար։ Ներկայումս, երբ աշխատուժը դադարել է ապրանք լինելուց, ինչպես պնդում է ֆրանսիացի բուրժուական տնտեսագետ Ֆուրաստյեն, երբ բանվորներն էլ ձեռնարկատերեր են և նրանց հետ միասին «աշխատանքային համագործակցության և՛ անդամ են և՛ կառավարող», երբ ժամանակակից ժողովրդական տնտեսությունը «կարելի է դիտել որպես մի խոշոր աշխատանքային համայնք» (Վեյսեր), ապա հավելյալ արժեքի Մարքսի տեսության մասին բուրժուական տնտեսագիտությունն ավելորդ է համարում խոսել ընդհանրապես։ Այդ ուսմունքը «հիմնավորված է ավելի շուտ բարոյական, քան տնտեսական տեսակետից» գրում է գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության տեսաբաններից Վեյսերը։ Ժամանակակից գիտա-տեխնիկական հեղաշրջումը ապահովում է նյութական բարիքների հսկայական առատություն, որով, իբր թե, անիմաստ են դառնում դասակարգային հակասությունների սրման, շահագործման աստիճանի բարձրացման վերաբերյալ հին զրույցները. տեխնիկական առաջադիմության գլխավոր նպատակը, ինչպես փորձում է հավաստել Ֆուրաստյեն, «կենսամակարդակի և աշխատավարձի բարձրացումն է»։

Իրականում, սակայն, կապիտալիստական երկրներում ներկայումս գնալով բարձրանում է բանվոր դասակարգի շահագործման աստիճանը և խորանում հակասությունն արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր կապիտալիստական եղանակի միջև, որն ավելի է սրում դասակարգային պայքարը։ «Այդ ամենը նշանավորում է կապիտալիստական երկրներում դասակարգային ճակատամարտերի նոր փուլի սկիզբը և մերկացնում սոցիալ-ռեֆորմիստական այն կոնցեպցիաների սնանկությունը, թե մարում է դասակարգային պայքարը, թե կապիտալիզմը էվոլյուցիոն կերպով վերաճում է սոցիալիզմի» (ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի թեզիսներից)։

Հավելյալ արժեքը ստեղծվում է արտադրության պրոցեսում, որը, սակայն, բաժանվում է շահագործող դասակարգերի միջև շահույթի, տոկոսի և հողային ռենտայի ձևերով, որոնք Մարքսը բնութագրեց որպես հավելյալ արժեքի փոխակերպված արտահայտություններ։ Բանն այն է, որ կապիտալիստական ձեռնարկության մեջ շահույթի մեծությունը պայմանավորված է ամբողջ ավանսավորված կապիտալով, որի հետևանքով էլ այն երևում է որպես ամբողջ կապիտալի ծնունդ, և նրա աշխատանքային ակունքը քողարկվում է։ Իրենց բուն աղբյուրից՝ հավելյալ արժեքից ավելի են հեռանում առևտրական շահույթը, փոխատվական տոկոսն ու ձեռնարկուական եկամուտը, որոնք անմիջականորեն ածանցվում են շահույթից։ Տնտեսական կատեգորիաների փոխանակությունների շղթայի այս օղակները ավելի են մթագնում երևույթների և նրանց էության փոխհարաբերությունը։ Առևտրական շահույթը թվում է ապրանքի արժեքի վրա կատարված մի հավելում, իսկ տոկոսը երևում է որպես կապիտալի եկամուտ բերելու բնական հատկություն։ Ավելի թանձր մշուշով է քողարկված հողային ռենտան, որի աշխատանքային ծագումը կասկածի տակ է դրվել նույնիսկ բուրժուական որոշ կլասիկ տնտեսա-

գետների կողմից։ Նրանցից հետո գռեհիկ տնտեսագետները ուղղակի հայ-
տարարեցին, որ հողից է ստացվում ռենտան և նրա չափը պայմանավորված
է հողի բնական հատկություններով։

Մարքսը ցույց տվեց, որ այս փոխակերպությունները պայմանավորված
են կապիտալիստական հարաբերությունների ֆետիշային բնույթով։ «Կապի-
տալ-տոկոս (շահույթ), հող-ռենտա, աշխատանք-աշխատավարձ ֆորմուլան
ներկայացնում է բոլոր մասերում միատեսակ և սիմետրիկ անհարիրություն»,
գրում է Մարքսը։ Վարձու աշխատանքի արդյունքները հակադրվում են ար-
տադրողներին որպես նրանց հարստահարող խորթ ուժ։ Այս պայմաններում
հավելյալ արժեքի գոյաձևերը կորցնում են արտադրական հարաբերություն-
ների հետ ունեցած իրենց կապերը և երևում որպես կապիտալ-արտադրամի-
ջոցների և հող-բնական տարրի փոխհարաբերություն։ Այս հանգամանքն է,
որ ընկած է կապիտալիզմի գովերգման բուրժուական տնտեսագիտական
ուղղությունների հիմքում։ XIX դարի գռեհիկ տնտեսագետներն ուղղակի պնն-
դում էին, որ շահույթի աղբյուրը կապիտալն է, հետևաբար շահագործման
ու անարդարության մասին սոցիալիստների դատողություններն անիմաստ
են։ Գերմանական բուրժուական տնտեսագետ Շումպետերը շահույթի ստա-
ցումը կապում էր տեխնիկական առաջընթացի և արտադրության տեխնոլո-
գիական պրոցեսների կատարելագործման հետ, որը և կազմում է ժամանա-
կակից տեխնոլոգիական ուղղության բովանդակությունը։

Արտադրության պրոցեսում ներկայումս կատարվող գիտա-տեխնիկական
հեղաշրջումն աշխատանքի արտադրողականությունը բարձրացնում է մեծ
չափերով և ապահովում նյութական արժեքների հսկայական աճ։ Արտադրու-
թյան կիբեռնետիկ տեսության ներկայացուցիչները տեխնիկական առաջըն-
թացը դիտում են որպես տնտեսական աճի մայրուղին, որի շնորհիվ, որպես
թե, արդեն լուծված են «զնողունակության և տնտեսական ճգնաժամերի
պրոբլեմները»,— գրում է ֆրանսիացի տնտեսագետ Վիմոնը, իսկ գերմանա-
ցի Դրուկերը պնդում է, որ «ավտոմատիզացիան դառնալով արտադրության
հիմք, ձեռք է բերում ինքնակարգավորում»։

Ժամանակակից բուրժուական տնտեսագետների մոտ այս հարցում
«նորն» այն է, որ արտադրաուժերի աճը նրանք համարում են հասարակու-
թյան բարեկեցության նյութական հիմքը, «առատության հասարակարգի»
«համընդհանուր կայունացում» (Կորդիներ)։ «Ազատ աշխարհի այս ոսկեդա-
րում», որպես թե, դասակարգային հակասություններն իսպառ անհետացել
են, վերանում են տարբերությունները բուրժուազիայի և պրոլետարիատի
միջև, և «հավասար հնարավորությունների համար մղվող հարյուրամյա պայ-
քարը մոտենում է իր ավարտին»[1]։ «Հավասար հնարավորությունների» տե-
սության կեղծիքը ցույց տալու համար բավական է նշել, որ ետպատերազմ-
յան վերջին 20 տարիներին Ռոկֆելլերների հարստությունը աճել է 8 անգամ,
Մորգաններինը՝ 3 անգամ, Ֆորդերինը՝ 7 անգամ, Մելլոններինը՝ 8 անգամ և
այլն։ Իսկ Մյուրդալի փառաբանած ԱՄՆ-ում բնակչության 1 տոկոսի ձեռքում
գտնվում է երկրի բոլոր բաժնետոմսերի 76 տոկոսը։

Ինչպես բուրժուական գռեհիկ տնտեսագիտական բոլոր ուղղությունները,
արտադրության կիբեռնետիկ դպրոցը նույնպես ինքնատիպ չէ։ Աշխատավար-
ձի սոցիալական դպրոցի ներկայացուցիչներից դեռ Մ. Տուգան-Բարանովսկին

[1] Г. Мюрдал, Мировая экономика, Изд. Иностр. лит., Москва, 1958, стр. 484.



էր գրում, թե «որքան բարձր է աշխատանքի արտադրողականությունը, այն-
քան ավելի բարձր կլինի ռեալ աշխատավարձը»[1]։ Իսկ աշխատանքի արտա-
դրողականության բարձրացման նյութական հիմքը արտադրամիջոցների ու
արտադրապրոցեսի կատարելագործումն է։ Հետևաբար, այս հարցում վերա-
նում է ամեն մի տարբերություն «հին» սոցիալական դպրոցի և «նոր» ար-
տադրության կիբեռնետիկ ուղղության ներկայացուցիչների միջև։

Մարքսիզմի կլասիկները ցույց են տվել, որ կապիտալիստական հասա-
րակարգում արտադրաուժերի զարգացումը տեղի է ունենում արտադրության
համակենտրոնացման պայմաններում։ Ժամանակակից նյութա-տեխնիկական
հեղաշրջումն արտադրաուժերի զարգացման բնագավառում և գիգանտ մոնո-
պոլիաների ու պետական մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացումը
երկմիասնական պրոցես է։ Արտադրաուժերի հետագա զարգացումը կարող է
տեղի ունենալ արտադրության հասարակական բնույթի ընդլայնման ու խո-
րացման պայմաններում միայն։ Բայց, ինչպես Մարքսն է ցույց տվել, կա-
պիտալիստական արտադրության զարգացումը միաժամանակ բուրժուական
արտադրական հարաբերություններին ներհատուկ հակասությունների խորաց-
ման պրոցես է։ Այսինքն՝ կապիտալիստական արտադրության զարգացմանը
զուգընթաց սրվում է նրա հիմնական հակասությունը՝ հակասություն արտա-
դրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր կապիտալիստա-
կան եղանակի միջև։ Կապիտալիզմի ժամանակակից ջատագովները փառա-
բանում են միայն կապիտալիստական արտադրության զարգացման պրոցեսի
մի կողմը՝ արտադրության հասարակական բնույթի ընդլայնումը և փորձում
են հավատացնել, որ այդ հիման վրա էլ տեղի է ունենում հասարակության
բոլոր խավերի բարեկեցության բարձրացում և նրանց շահերի ներդաշնա-
կության կատարելագործում։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում կապիտալիստական արտա-
դրության հանրայնացման աստիճանն ավելի բարձրացավ, ստեղծվեց համա-
պետական և միջպետական մոնոպոլիստական միավորումների ընդարձակ
ցանց։ Այդ մոնոպոլիստական միավորումների փառաբանությունը ծավալուն
տեղ է գրավում ժամանակակից բուրժուական տնտեսագիտության մեջ։ Գեր-
հզոր մոնոպոլիաների կամ ուլտրամոնոպոլիաների գովերգությունը նորու-
թյուն չէ։ Երկրորդ ինտերնացիոնալի պարագլուխ Կ. Կաուցկին դրա հիման
վրա էր, որ ստեղծեց ուլտրաիմպերիալիզմի իր տեսությունը։ Ժամանակա-
կից բուրժուական տնտեսագետները հրապարակ հանեցին կապիտալիստա-
կան աշխարհի էկոնոմիկայի ինտեգրացիայի տեսությունը, որը փաստորեն
Կ. Կաուցկու ուլտրաիմպերիալիզմի նոր տարբերակն է։

Բուրժուական տնտեսագետները փորձում են ակցիոներական ընկերու-
թյունների և պետական մոնոպոլիստական միավորումների տիրապետությու-
նը ներկայացնել որպես հասարակության զարգացման այնպիսի մի նոր աս-
տիճան, որտեղ ֆինանսական օլիգարխիան, իբր թե, իր տեղը զիջում է
համաժողովրդական պետության իշխանությանը, երբ «վագրը, այսինքն մաս-
նավոր ձեռնարկատերը, դարձել է տնային կատու, որը լակում է պետության
կողմից իր ամանը լցրած կաթը»։ Ներպետական և միջպետական մոնոպո-
լիստական միավորումների փառաբանության միջոցով բուրժուական տնտե-

2 М. Туган-Барановский, Основы политической экономии, Москва, 1911, стр. 372.

սագետները նպատակ ունեն քողարկել մոնոպոլիստական միավորումների ռեակցիոն էությունը, աշխատավորների ուշադրությունը շեղել այն իրողությունից, որ ժամանակակից գիգանտ կոնցեռնները իմպերիալիստական խմբավորումների տնտեսական միավորումներն են միայն, որոնց նպատակն է իրականացնել աշխարհի տնտեսական բաժանումն ու տերիտորիալ վերաբաժանումը։

Սոցիալիզմը, որի մասին դարեր շարունակ երազել էին մարդկության լավագույն մտածողները, Մարքսը և Էնգելսը ուտոպիայից դարձրին գիտություն։ Մարքսը ապացուցեց, որ հասարակության սոցիալիստական վերակառուցումը սերտորեն կապված լինելով արտադրաուժերի զարգացման որոշ աստիճանի հետ, հանդիսանում է պատմական զարգացման ընթացքի անխուսափելի արդյունք։ Հավելյալ արժեքի թեորիայով Մարքսը բացահայտեց կապիտալիստական արտադրության մեխանիզմը, գիտականորեն հիմնավորեց բանվոր դասակարգի պայքարի միջոցով բուրժուական կարգերը սոցիալիստականի փոխելու անհրաժեշտությունը։ Ըստ որում, Մարքսը ընդհանուր գծերով ցույց է տվել նաև ապագա կոմունիստական հասարակության առանձնահատկությունները։ Կապիտալիզմը վերջին շահագործողական հասարակարգն է, որով և ավարտվում է հասարակության նախապատմությունը։ Սոցիալիստական կարգերի ստեղծումով պատմության մեջ սկսվում է բոլորովին նոր դարաշրջան, անդասակարգ, շահագործման հարաբերություններից զերծ դարաշրջան։

Ժամանակակից բուրժուական տնտեսագետները Մարքսի այս ուսմունքն էլ «հնացած» են համարում։ Սակայն գիտական կոմունիզմի դեմ նրանց պայքարի մեթոդները, բնականաբար, փոխվել են։ Եթե 20—30-ական թվականներին բուրժուազիայի գաղափարախոսները սոցիալիստական շինարարությունը մեր երկրում որակում էին որպես «պատմական զարգացման բնական ընթացքից պատահական շեղում» կամ «բոլշևիկյան ավանտյուրա», ապա այսօրվա նրանց ժառանգները սոցիալիզմի տեսության և պրակտիկայի դեմ նույն մեթոդներով պայքարել այլևս չեն կարող։ Հենց միայն այն փաստը, որ կապիտալիստական երկրներում ստեղծվել է սոցիալիստական էկոնոմիկայի ուսումնասիրության գիտահետազոտական հաստատությունների ընդարձակ ցանց, վկայում է հակասովետական գաղափարախոսության սնանկությունը։ Ներկայումս բուրժուական տնտեսագետների մի ամբողջ բանակ ջանում է «ապացուցել», որ, իբր թե, կապիտալիստական և սոցիալիստական կարգերի միջև սկզբունքային տարբերություններ չկան, թե ժամանակակից կապիտալիստական հասարակության մեջ աստիճանաբար սահմանափակվում ու վերանում է շահագործումը, սոցիալիզմն ու կապիտալիզմը, որպես թե, «փոխադարձաբար ներթափանցում են մեկը մյուսի մեջ» (Լ. Լորիա) և այլն։

Բուրժուական տնտեսագետներից շատերը նույնիսկ պնդում են, թե Մարքսի երազանքը հասարակության սոցիալիստական վերակառուցման մասին իրականացավ ոչ թե «կոմունիստական պետության մեջ հիմնված այն թեորիաների վրա, որոնք նա այնպես եռանդուն քարոզում էր, այլ այն իրականություն դարձավ Ամերիկայում» և մյուս զարգացած կապիտալիստական երկրներում։ Բուրժուական տնտեսագիտական գրականության մեջ այժմ եռանդուն կերպով պրոպագանդվում է, այսպես կոչված, կոնվերգենցիայի տեսությունը, ըստ որի՝ կապիտալիստական և սոցիալիստական տնտեսություններին հատուկ ընդհանուր տենդենցների զարգացումը, իբր թե,



տանում է դեպի այդ սիստեմների սինթեզը, տեղի է ունենում նրանց հիբրիդացման պրոցես։ Այս ուղղության ներկայացուցիչները պնդում են, որ այդ նոր հիբրիդ հասարակությունը կապիտալիզմից ժառանգում է մասնավոր սեփականության, ձեռնարկատերերի շահույթի, շուկայական սիստեմի կատեգորիաները, իսկ սոցիալիստական հասարակարգից վերցնում է հավասարության, արտադրության վրա բանվորական հսկողություն սահմանելու, տնտեսական պլանավորման սկզբունքները, որի հետևանքով և «կապիտալիզմը ներթափանցում է սոցիալիզմի մեջ» (Տինբերգեն)։

Հասկանալի է, որ ոչ բոլոր բուրժուական տնտեսագետներն են ընդունում կոնվերգենցիայի տեսությունը, ավելի ճիշտ նրանք բաժանում են այդ ուղղության ներկայացուցիչների այն պնդումը միայն, որ սոցիալիստական էկոնոմիկան զարգանում է կապիտալիստական սկզբունքներով, իսկ հակառակը երբեք լինել չի կարող։ Ամերիկացի տնտեսագետ Կ. Գրիֆինը պնդում է, որ «միայն սովետական սիստեմը կարող է զարգանալ ամերիկյան ուղիով, բայց ոչ ընդհակառակը»։

Սովետական էկոնոմիկան ուսումնասիրող բուրժուական տնտեսագետների մեծ մասի հիմնական խնդիրն է «ապացուցել», որ տնտեսավարման սոցիալիստական սկզբունքները, որպես թե, վաղուց է ինչ չեն արդարացնում իրենց, որ դրանք իրենց տեղը զիջում են կապիտալիստական տնտեսության սկզբունքներին։ Տնտեսական ռեֆորմը նրանք գնահատում են որպես պլանային տնտեսավարության սիստեմի ձախողում և վերադարձ դեպի ազատ շուկայական տնտեսություն։ Նրանք, արդեն այդ «նոր տնտեսաձևի» համար հորինել են «շուկայական սոցիալիզմ» անունը, որի հետագա զարգացման անխուսափելի հետևանքը, որպես թե, պետք է լինի տնտեսության պլանավորման սիստեմի վերացումը և «շուկայական սիստեմի» լիակատար տիրապետությունը։

Բուրժուական տնտեսագետների այս փաստարկումների սնանկությունը ցույց տալու համար հիշենք Մարքսի հանրահայտ դրույթն այն մասին, որ ապրանքային արտադրությունն ու շուկայական հարաբերություններն ամենևին էլ հատուկ չեն միայն կապիտալիստական արտադրաեղանակին, այլ բնորոշ են նաև մյուս հասարակական տնտեսական ֆորմացիաներին։ Զարգացնելով Մարքսի այս դրույթը, Վ. Ի. Լենինը ստեղծեց ամբողջական ուսմունք սոցիալիստական հասարակարգում ապրանքային արտադրության բնույթի և շուկայական կատեգորիաների դերի ու նշանակության մասին՝ միաժամանակ ցույց տալով նրանց արմատական տարբերությունը կապիտալիստական ապրանքային հարաբերություններից։ Շուկան սոցիալիստական հասարակարգում հանդիսանում է տնտեսական ինֆորմացիայի հարուստ աղբյուր՝ հասարակական սպառման կառուցվածքի ուսումնասիրության համար, որն արտադրության ճիշտ պլանավորման կարևոր պայմաններից մեկն է։ «Երկրում կիրառվող տնտեսական ռեֆորմը,— ասված է թեզիսներում,— ընդլայնում է սոցիալիզմի օրենքների գիտականորեն հիմնավորված օգտագործման հնարավորությունները՝ կենտրոնացված կառավարման ու տեղական նախաձեռնության ճիշտ և արդյունավետ զուգորդման, ղեկավարման տնտեսական մեթոդների ուժեղացման ճանապարհով։ Դա նպաստում է սոցիալիզմի արտադրական հարաբերությունների զարգացմանն ու կատարելագործմանը»։

Տնտեսական ռեֆորմի հիմնական խնդիրն է հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը և ժողովրդի կենսամակարդակի բարելավումը, որի համար սոցիալիստական պլանային մարմինները օգտագործում են նաև ապրանքադրամային տնտեսության կատեգորիաները։ Այս բնագավառում սոցիալիստական երկրների ձեռք բերած նվաճումները ցույց տալու համար բավական է նշել, որ սոցիալիստական սիստեմի երկրներում արդյունաբերական արտադրանքը 1951—1966 թվականների ընթացքում աճեց ավելի քան 5,6 անգամ, իսկ կապիտալիստական երկրներինը՝ 2,4 անգամ միայն։

Երկրի տնտեսական զարգացման և բնակչության կենսամակարդակի բարձրացման կարևոր ցուցանիշներից մեկը ազգային եկամտի աճման տեմպերն են։ Վերջին 16 տարիների ընթացքում (1951—1966 թթ.) ազգային եկամուտն աճել է ՍՍՀՄ-ում 3,9 անգամ, Բուլղարիայում 4,3 անգամ, ԳԴՀ-ում՝ 3,3 անգամ, Լեհաստանում՝ 3 անգամ, իսկ ԱՄՆ-ում 1,8 անգամ, Անգլիայում՝ 1,5 անգամ։ Ազգային եկամտի աճման տեմպերի տարբերությունը ավելի է մեծանում, երբ այն վերցնում ենք մեկ շնչի հաշվով։ Միևնույն ժամանակաշրջանում մեկ շնչի հաշվով ազգային եկամուտը աճել է՝ ՍՍՀՄ-ում 3 անգամ, Ռումինիայում՝ 3,8 անգամ, Բուլղարիայում՝ 3,7 անգամ, ԳԴՀ-ում՝ 3,6 անգամ, իսկ ԱՄՆ-ում ու Անգլիայում՝ միայն 1,4 անգամ։ 1968 թվականի սկզբներին ԱՄՆ-ում ու Անգլիայում, Ֆրանսիայում, Իտալիայում և ԳՖՀ-ում գործազուրկների թիվն անցնում էր 6 միլիոն մարդուց։ Այս իրողությունն է ահա, որ աղավաղում են բուրժուական տնտեսագետները, սոցիալիստական տնտեսության հասցեին ուղղված իրենց զրպարտություններին «գիտական» տեսք տալու նպատակով։ Սակայն սովետական էկոնոմիկայի զարգացման հիսնամյա պատմությունը, սոցիալիստական համաշխարհային տնտեսության ձեռք բերած հսկայական նվաճումներն անհերքելիորեն ցույց են տալիս տնտեսության սոցիալիստական սիստեմի հսկայական առավելությունները տնտեսության կապիտալիստական սիստեմի նկատմամբ։

Պատմությունն ունի իր զարգացման օբյեկտիվ ընթացքն ու օրինաչափությունը։ Ավելի քան հարյուր տարի է, ասված է ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի թեզիսներում, ինչ պատմական զարգացումը ընթանում է մարքսիստական տեսության կանխագուշակած ուղիով։ Պատմության ամեն մի շրջադարձին մարքսիզմը նորանոր հաղթանակներ է տանում։



ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա.

# ՄԱՐՔՍԸ ԵՎ ՃՆՇՎԱԾ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱԶԱՏԱԳՐՈՒՄԸ

Տասնիններորդ դարը մարդկությանը տվեց գիտության, արվեստի, քաղաքական կյանքի ամենաբազմազան բնագավառների ականավոր գործիչներ։ Այդ փայլուն համաստեղության մեջ բացառիկ է Կարլ Մարքսը, որը արմատական հեղաշրջում կատարեց ո՛չ միայն գիտության մեջ, այլև պատասխաններ տվեց պատմական զարգացման ամբողջ ընթացքի կողմից XIX դարի կեսերին օրակարգի մեջ դրված կարևորագույն հարցերին։ Իր բարեկամ ու զինակից Ֆրիդրիխ Էնգելսի հետ մշակելով փիլիսոփայական, տնտեսագիտական և սոցիալ-քաղաքական հայացքների մի կուռ համակարգ, Մարքսը բացահայտեց շահագործման ու սոցիալական ճնշման բոլոր ձևերից մարդկությունն ազատագրելու իրական ուղիները, հիմնավորեց կապիտալիզմի և նրան զուգընթաց պահպանված մյուս շահագործողական ֆորմացիաների վերացման ու անդասակարգ կոմունիստական հասարակարգի հաղթանակի անխուսափելիությունը։ Մարքսը ապացուցեց, որ համաշխարհային-պատմական վերափոխումն իրականացնելու ունակ միակ սոցիալական ուժը արդյունաբերական բանվորների դասակարգն է, և նա բանվորներին զինեց իրենց պատմական առաքելության գիտակցությամբ, կռեց նրանց ազատագրական պայքարի անհաղթելի զենքը՝ հեղափոխական տեսությունը։

Կարլ Մարքսի ըմբռնմամբ բանվոր դասակարգի ազատագրումը սոսկ մեկ դասակարգի կյանքի պայմանների փոփոխություն չէ, այլ հասարակության կյանքի բոլոր կողմերի արմատական վերափոխում, ամբողջ հասարակության ազատագրում արտադրամիջոցների մասնավոր սեփականությամբ պայմանավորված՝ շահագործումից ու ճնշումից։ Քանի դեռ պահպանվում է մասնավոր սեփականությունը, ո՛չ միայն բանվորն ազատ չի կարող լինել, այլև ազատ չեն կարող լինել ժողովուրդները և անհնար են նրանց միջև իսկական բարեկամական հարաբերությունները։ Ուրեմն, մարդկության ազատագրության առաջին պայմանը արտադրության հիմնական միջոցների մասնավոր սեփականության, մարդու կողմից մարդու շահագործման ոչնչացումն է, ժողովուրդների միջև հավասարների եղբայրական հարաբերությունների հաստատումը։

Այս կարևորագույն միտքը Մարքսը ձևակերպեց իր հեղափոխական գործունեության արշալույսին։ «Որպեսզի ժողովուրդները կարողանան իսկապես

միավորվել, նրանք պետք է ընդհանուր շահեր ունենան։ Որպեսզի նրանց շահերը ընդհանուր լինեն, պետք է ոչնչացնել սեփականության գոյություն ունեցող հարաբերությունները, որովհետև սեփականության գոյություն ունեցող հարաբերությունները պայմանավորում են որոշ ժողովուրդների շահագործումը մյուսների կողմից. սեփականության գոյություն ունեցող հարաբերությունների ոչնչացման գործում շահագրգռված է միայն բանվոր դասակարգը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Վ. Ի. Լենին, Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին, Երևան, 1960, էջ 38)։ Այստեղից Մարքսը հանգեց այն եզրակացության, որ պրոլետարիատի հաղթանակը բուրժուազիայի նկատմամբ կնշանավորվի ոչ միայն իրեն՝ բանվոր դասակարգի ազատագրությամբ, այլև հնարավոր կդարձնի հաղթահարելու ազգային ու հասարակական բոլոր կոնֆլիկտները, որոնք ժողովուրդների միջև թշնամանք են առաջացնում։

Ուսումնասիրելով մարդկության զարգացման պատմական ընթացքը, Մարքսը նկատեց, որ արտադրության կապիտալիստական եղանակի զարգացումը հակասական արդյունքների է հասցնում։ Այն, մի կողմից՝ մի շարք, մասնավորապես հետ մնացած, ժողովուրդների քաղաքական ու տնտեսական կախման մեջ է դնում ուժեղ, արդյունաբերապես զարգացած կապիտալիստական երկրներից, ծնում թալանչիական ու նվաճողական պատերազմներ, ստեղծում գաղութակալության համաշխարհային համակարգ, թշնամացնում ժողովուրդներին, մյուս կողմից՝ կապիտալիզմի ստեղծած համաշխարհային տնտեսությունը նպաստում է ազգային կղզիացման ու ժողովուրդների հակադրությունների անհետացմանը։ Այդ պրոցեսը դրսևորվում է նրանում, որ կապիտալիզմի տիրապետությունը բոլոր երկրներում հանգեցնում է վերջ ի վերջո բուրժուական հարաբերությունների առաջացմանը, ծնում ազգային բուրժուազիա ու պրոլետարիատ, իսկ վերջինն իր վիճակով ու նպատակներով սոսկ ազգային մնալ չի կարող։ Պրոլետարիատն իր կյանքի պայմաններով, տնտեսական դրությամբ միջազգային է, նրա դասակարգային թշնամին միջազգային է, նրա ազատագրության պայմանները նույնպես միջազգային են և, հետևաբար, նա չի կարող մեկուսացած մնալ ու պետք է ձգտի համաշխարհային միասնության՝ բոլոր երկրների բանվորների հետ։

Տասնիններորդ դարում, բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունների ժամանակ, բանվոր դասակարգն արդեն իր կնիքն էր դնում հասարակական շարժման վրա և դրա շնորհիվ (մասնավորապես Եվրոպայի մի շարք երկրներում) բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունները միահյուսվում են ազգային-ազատագրական շարժմանը։ Սակայն, բուրժուազիայի տիրապետությունն, ինչպես ճիշտ ըմբռնեց Կ. Մարքսը, ի վիճակի չէ վերջնականապես հաղթահարել ժողովուրդների շահագործումն ու ճնշումը, որովհետև այն պահպանում է ճնշման հիմքը՝ արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը։ Ժողովուրդների կղզիացման ու նրանց հակադրությունների լիակատար հաղթահարումը հնարավոր է միայն կապիտալիզմի կործանումից և պրոլետարիատի տիրապետության հաստատումից հետո։ Այդ միտքը որոշակի և ավարտուն հռչակվեց Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի համատեղ գրած «Կոմունիստական կուսակցության մանիֆեստում»—գիտական կոմունիզմի հանճարեղ ծրագրային փաստաթղթում։ «Ինչ չափով որ ոչնչացվելու է մի անհատի շահագործումը մյուսի կողմից,— նշեցին Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը,—այն չափով էլ ոչնչացվելու է մի ազգի շահագործումը մյուսի կողմից։

Ազգերի ներսում եղած դասակարգերի անտագոնիզմի հետ միասին կվե-



րանան նաև թշնամական հարաբերությունները ազգերի միջև» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, Երևան, 1950, էջ 34)։

Կ. Մարքսը բազմիցս նշել է, որ պրոլետարիատի հաղթանակը զարգացած կապիտալիստական երկրում միաժամանակ ճնշված ազգերի ազատագրման ազդանշան կլինի, այն վճռական նշանակություն կունենա բոլոր ճնշվողների հաղթանակի համար։ Այսպիսով իշխող ազգի պրոլետարիատը պետք է ձգտի, առաջին հերթին, տապալել իր ազգի կապիտալիստների իշխանությունը, որով կհասնի նաև ճնշված ազգերի ազատագրությանը։ «Ահա թե ինչու,—նշում էր Մարքսը,— Լեհաստանը պետք է ազատագրել ոչ թե Լեհաստանում, այլ Անգլիայում» («Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին», էջ 39)։

Կապիտալիզմի տապալումը չի կարող սոսկ մի երկրի, սոսկ տեղական հարց լինել, այն միջազգային, համաշխարհային հարց է, որի իրականացման համար անհրաժեշտ է բոլոր երկրների բանվորների միջազգային միավորում։ Հանգամանորեն վերլուծելով 1848—1951 թթ. բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունների արդյունքները Եվրոպայում, Մարքսը ցույց տվեց, որ նրանց պարտությունը եվրոպական մի շարք ժողովուրդների գցեց խոշոր կապիտալիստական տերությունների լծի տակ։ Բայց, միաժամանակ, այդ ժողովուրդների ազգային անկախության համար մղվող հեղափոխական պայքարն ուղղակի կախման մեջ դրվեց սոցիալիստական հեղափոխության ճակատագրից, չքացավ նրանց կարծեցյալ ինքնուրույնությունը սոցիալական մեծ հեղաշրջումից։ «Ո՛չ հունգարը, ո՛չ լեհը, ո՛չ էլ իտալացին,—իրավացիորեն եզրակացրեց Մարքսը,— ազատ չեն լինի, քանի դեռ բանվորը ստրուկ է մնում» (Ընտիր երկեր, հ. 1, էջ 176)։

Մեծ մտածողը բանվորների միջազգային միավորումը համարում էր բոլոր ճնշված ժողովուրդների ազատագրման առաջին պայմաններից մեկը։ Կապիտալիզմի համապարփակ տիրապետության պայմաններում անիմաստ կլիներ առաջ քաշել բոլոր ժողովուրդների միավորման ու համերաշխության նշանաբանը։ Իրավ, այն ժամանակ միավորվել ու համերաշխել կարող էին միայն տարբեր ազգերի բանվորները։ Հիմնադրելով բանվորների միջազգային ընկերությունը՝ Առաջին ինտերնացիոնալը, Մարքսը գործնականում իրականացրեց այդ միավորումը։ «Անցյալի փորձը ցույց տվեց,— գրել է Մարքսը Ինտերնացիոնալի «Հիմնադիր մանիֆեստում»,—որ արհամարհական վերաբերմունքը եղբայրական այն դաշինքի նկատմամբ, որ պետք է գոյություն ունենա տարբեր երկրների բանվորների միջև և նրանց դրդի իրենց ազատագրական պայքարում ամուր պաշտպանելու միմյանց, պատժվում է նրանց ցաք ու ցրիվ ջանքերի ընդհանուր պարտությամբ» («Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին», էջ 75)։

Անձնվեր հեղափոխականն իր կյանքը նվիրեց բոլոր երկրների ու ազգերի բանվորներին համախմբելու, միավորելու և կապիտալիզմի ու բռնության դեմ անհաշտ պայքար մղելու գործին։ Նա ցույց տվեց, որ այդ միավորումն ինքնին չի ստեղծվի, որ դրա համար անհրաժեշտ է երկարատև ու համառ գիտակցական պայքար։ Չէ՛ որ կապիտալիստները պայմաններ են ստեղծում տարբեր ազգերի բանվորներին թշնամացնելու և ամեն կերպ ձգտում պահպանել այդ թշնամությունը։ Անգլիական բուրժուազիան, նշում էր Մարքսը, ո՛չ միայն շահագործում է իռլանդական ժողովրդին, ստիպում իռլանդական չքավորներին հարկադրաբար ներգաղթել Անգլիա, այլև խոր հակամարտություն է սերմանում անգլիական ու իռլանդական բանվորների միջև։ Անգլիական միջին բան-

վորն ատում է անգլիական բանվորին, որպես մի մրցակցի, որն իջեցնում է իր աշխատավարձը և կենսամակարդակը։ Նույն պատճառով Հյուսիսային Ամերիկայի հարավային նահանգների սպիտակ չքավորները ատում են սև ստրուկներին։

Մյուս կողմից՝ նվաճված երկրներում գաղութակալ բուրժուազիան արտոնյալ պայմաններ է ստեղծում իր ազգությանը պատկանող բանվորների վերնախավերի համար և դրա հետևանքով ճնշված ազգերի աշխատավորները նրանց մեջ տեսնում են ոչ թե իրենց բախտակիցներին, այլ ճնշողներին ու հարստահարողներին։ Բուրժուազիան արհեստականորեն բորբոքում ու պաշտպանում է այդ հակամարտությունը, որովհետև նա գիտի որ «այդ երկպառակության մեջ է իր հզորությունը պահպանելու իսկական գաղտնիքը» («Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին», էջ 115)։

Բուրժուազիան ձգտում է հավերժացնել ժողովուրդների սարկացումը, ազգամիջյան պայքարը։ Հակադրելով ճնշող և ճնշված ժողովուրդներին, նա ազատությունից զրկում է ո՛չ միայն ճնշված, այլև ճնշող, գաղութակալ ազգին, որովհետև ոչ մի ազգ չի կարող ազատ լինել, շարունակելով ճնշել ուրիշ ազգերի։ «Այն ժողովուրդը,—գրում է Մարքսը,—որը հարստահարում է մի ուրիշ ժողովրդի կռում է իր սեփական շղթաները» (նույն տեղը)։ Այդ ազդեցությունից, որի մեջ նրան հրում է բուրժուազիան, պրոլետարիատը կարող է մաքրվել միայն հեղափոխության միջոցով։

Պատմական զարգացումը ցույց տվեց մարքսյան մտքերի անվերապահ ճշմարտացիությունը։ Այժմ նույնիսկ ամենազարգացած կապիտալիստական երկրում՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, բուրժուազիան սերմանում ու պահպանում է ազգային ու ռասայական խտրականությունը, հակամարտության մեջ ներգրավում ամերիկյան բանվորներին ու նրանց զինվորական գրատներ հագցնելով ուղարկում կեղտոտ պատերազմի՝ վիետնամական ժողովրդի դեմ։

Իր բազմաթիվ հոդվածներում ու ելույթներում Մարքսն անմիջականորեն արձագանքում ու խրախուսում էր ճնշված ժողովուրդների պայքարն իրենց անկախության համար։ Տասնյակ հոդվածներ ու ելույթներ է նվիրել նա Իռլանդիայի, Լեհաստանի ազատագրական պայքարին, բազմիցս մերկացրել անգլիական բուրժուազիայի գաղութային քաղաքականության և դիվանագիտության գաղտնի քայլերը, կոչ արել անգլիական պրոլետարիատին պայքարելու բրիտանական կայսրության լծի տակ հեծող ժողովուրդների ազատագրության համար։ Մեծագույն համակրանքով էր վերաբերում Մարքսը իտալական ժողովրդի ազատագրական պայքարին։ Իր բազմաթիվ հոդվածներում, նամակներում նա մերկացնում էր ֆրանսիական ու ավստրիական բռնակալների նվաճողական քաղաքականությունը Իտալիայում, բացահայտում նրանց ստոր գործարքները և ոգեշնչում իտալական աշխատավորներին՝ երկրի անկախության համար մղվող նրանց հերոսական պայքարում։

Անդրադառնալով եվրոպական խոշոր պետությունների և ցարական Ռուսաստանի՝ Կովկասի ու Մերձավոր Արևելքի համար մղած պայքարին, նա վճռականորեն մերկացնում էր նրանց զավթողական նպատակները և հակասական շահերը։ Նրանցից յուրաքանչյուրը ձգտում է մյուսի հաշվին նվաճել նոր երկրամասեր, հանգուցային դիրք գրավող քաղաքներ ու իրեն ենթարկել տեղական բնակչությանը։ Մարքսը հանգամանորեն վերլուծել է XIX դարի երրորդ քառորդի բոլոր քիչ թե շատ խոշոր պատերազմները (մասնավորապես Ղրիմի,



ֆրանս-պրուսական, ռուս-թուրքական պատերազմները) և ցույց տվել դրանց անարդարացի, նվաճողական բնույթը։

Բացահայտելով գաղութակալության անմիջական կախումը կապիտալիզմի զարգացումից, Կ. Մարքսն առանձնահատուկ ուշադրություն նվիրեց Արևելքի ժողովուրդների վիճակին ու նրանց պատմական զարգացման հեռանկարներին։ Նա մեծ գոհունակությամբ էր արտահայտվում գաղութակալների դեմ ծավալվող ամեն մի ապստամբության մասին։ Իր բազմաթիվ հոդվածներում նա հանգամանալից վերլուծել է XIX դարի կեսերի հնդկական ու չինական ապստամբությունները և վճռականորեն պաշտպանել գաղութակալության դեմ այդ ժողովուրդների զինված պայքար մղելու իրավունքը, անխնա մերկացրել Անգլիայի, Ֆրանսիայի և մյուս գաղութակալ տերությունների թալանչիական քաղաքականությունը Հնդկաստանում, Չինաստանում, Իրանում, Աֆղանստանում, Սիրիայում, նեգրական ծագում ունեցող բնակչության նկատմամբ կիրառվող խտրականությունը՝ ԱՄՆ-ում։

Գնահատելով անգլիական գաղութարարների դեմ հնդկական ապստամբության պատմական նշանակությունը, Մարքսը նշեց, որ թեև այն էական փոփոխություն չմտցրեց Հնդկաստանում տիրող գաղութային կարգերում, սակայն բացահայտեց հնդիկ ժողովրդի ատելությունը գաղութային ստրկության նկատմամբ և ակնհայտ դարձրեց իր ազատագրության համար վճռական պայքարի ելնելու նրա ունակությունը։

«Պարոն Ֆոգտը» հայտնի պամֆլետում և բազմաթիվ հոդվածներում Կ. Մարքսը վճռականորեն դատապարտեց նվաճումների ու զավթումների քաղաքականությունը, դիմակազերծեց տիրապետող բուրժուական դասակարգի դիվանագիտության կողմից կիրառվող աճաբեկման ու շանտաժի ստոր մեթոդները, փոքր երկրների գործերին կոպտորեն միջամտելու, մի ազգը մյուսի դեմ գրգռելու անհամար փաստերը։

Մերկացնելով գաղութակալության շահադիտական նպատակները և լուսաբանելով ճնշված ժողովուրդների պայքարը օտար լծի դեմ, Կ. Մարքսը բանվորներին դաստիարակում էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի, բոլոր երկրների աշխատավորների հետ համերաշխության ու միասնության ոգով։

Բուրժուական սոցիոլոգները ձգտում են գաղութակալությունը արդարացնել, պնդելով, թե նրա շնորհիվ հետամնաց ժողովուրդները զարգանում, հասնում են ժամանակակից մակարդակի, ընդունակ դառնում ինքնուրույն կյանքի։ Ստացվում է, որ, իբր, նվաճված ժողովուրդների համար գաղութակալությունը ոչ թե չարիք է, այլ բարիք։ Խորապես վերլուծելով գաղութային ճնշման տարբեր կողմերը, Կ. Մարքսն անհերքելիորեն ցույց տվեց գաղութակալության գիշատիչ, թալանչիական բնույթը։ Թեև գաղութարարները ստիպված են նվաճված երկրներում զարգացնել տրանսպորտը, արդյունաբերության այս կամ այն ճյուղը, սակայն, ինչպես նկատում է Մարքսը, նրանք այդ անում են լոկ իրենց շահի և ոչ նվաճված ժողովրդի վիճակը բարելավելու համար։

Անդրադառնալով Հնդկաստանում անգլիական տիրապետության հնարավոր արդյունքներին, նա նշում է. «Այն ամենը, ինչ անգլիական բուրժուազիան ստիպված կլինի իրագործել Հնդկաստանում, չի ազատագրի ժողովրդական մասսաներին և էականապես չի բարելավի նրանց սոցիալական դրությունը, որովհետև թե մեկը և թե՛ մյուսը կախված է ոչ միայն արտադրաուժերի զարգացումից, այլև ժողովրդի կողմից դրանց տիրապետելուց։ Բայց ինչ որ նա անպատճառ անելու է—դա նյութական նախադրյալների ստեղծումն է ինչպես

մեկ, այնպես էլ մյուս խնդրի իրագործման համար»․ այնուհետև Մարքսը շարունակում է․ «Մի՞թե բուրժուազիան երբևիցե ավելին է արել։ Մի՞թե նա երբևիցե հասել է պրոգրեսի, առանց ստիպելու, որ ինչպես առանձին մարդիկ, այնպես էլ առանձին ժողովուրդներ գնան արյան ու կեղտի, աղքատության ու ստորացումների ծանր ճանապարհով» (Ընտիր երկեր, հ. 1, էջ 419)։

Այսպիսով, գաղութակալների կողմից արդյունաբերության զարգացումը ճնշված ժողովուրդներին ոչ թե բարիք, այլ տառապանք ու ստորացում է բերում․ Նրանք այդ քաղաքակրթության պտուղներից կարող են օգտվել միայն այն ժամանակ, երբ ճնշող երկրի պրոլետարիատը տապալի իր բուրժուազիային կամ երբ գաղութակալված ժողովուրդը կարողանա իր վրայից վերջնականապես թոթափել օտարերկրյա լուծը։

Գիտական կոմունիզմի հիմնադիրը մշակեց ճնշված ժողովուրդների ազատագրման ու միավորման կուռ տեսություն, որը նրա սոցիալ-քաղաքական ուսմունքի բաղկացուցիչ տարրն է։ Նրա գործի մեծ շարունակող Վ. Ի. Լենինը զարգացրեց իր ուսուցչի հանճարեղ գաղափարները և մշակեց ազգային-գաղութային հարցի մարքսիստական տեսությունը՝ որպես պրոլետարական կուսակցության հեղափոխական ծրագրի անբաժանելի մասը։ Վ. Ի. Լենինը վերլուծեց և ընդհանրացրեց իմպերիալիզմի դարաշրջանի նոր երևույթները և բացահայտեց կապիտալիզմի գաղութային համակարգի կործանման ուղիները։

Կյանքը ապացուցեց Կարլ Մարքսի գաղափարների գիտականությունն ու ճշմարտացիությունը։ Ճնշված ժողովուրդների ազատագրության դարաշրջանը սկսվեց աշխարհում առաջին հաղթանակած սոցիալիստական հեղաշրջումից՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո։ Իրականացավ մարքսյան կանխատեսումը։ Կապիտալիստների ու կալվածատերերի լուծը թոթափած ռուս ժողովուրդն ազատագրեց ցարական կայսրության լծի տակ հեծող ժողովուրդներին և մարտական ազդանշան դարձավ գաղութային ստրկության մեջ գտնվող հարյուրավոր ժողովուրդների ազատագրական պայքարի համար։ «Միջազգային պրոլետարիատի հեղափոխական հաղթանակների, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների կենսագործման շնորհիվ,— կարդում ենք Մարքսի ծննդյան 150-ամյակին նվիրված թեզիսներում,— հասել է գաղութային ճնշումից ժողովուրդների ազատագրման դարաշրջանը»։ Սոցիալիզմի համաշխարհային համակարգի և կոմունիստական շարժման վճռական ազդեցությամբ գաղութակալությունն իր հոգեվարքն է ապրում։ Հարյուրավոր ժողովուրդներ ազատագրվել են գաղութային լծից և ձեռք են բերել ազգային անկախություն, համաշխարհային ասպարեզ է դուրս եկել միջազգային պրոլետարիատի մի նոր ջոկատ՝ ազատագրված երկրների երիտասարդ բանվոր դասակարգը։ Աշխարհի տարբեր մասերում ընթացող ազգային-ազատագրական պայքարի սուր ծայրն այժմ ուղղված է իմպերիալիզմի ու նեոգաղութատիրության դեմ, որի միջնաբերդն է դարձել ԱՄՆ-ի իմպերիալիզմը։ Ամերիկյան իմպերիալիստները ո՛չ միայն աշխարհի բոլոր մասերում պաշտպանում ու աջակցում են հետադիմական ուժերին, այլև իրենց զինված ուժերն են նետում ազատագրվող ժողովուրդների դեմ։ Վիետնամի ազատասեր ժողովրդի դեմ մղվող ամոթալի պատերազմը ԱՄՆ-ի իմպերիալիզմի գաղութակալական քաղաքականության ծայրագույն դրսևորումն է։ Իսկ Միացյալ Նահանգներում շարունակվում է ներքին պատերազմը նեգրական բնակչության դեմ։

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունները հավատարիմ լինելով իրենց մեծ ուսուցչի ավանդներին, միշտ հետևողականորեն պայքարում



են ճնշված ժողովուրդներին անկախություն տալու, գաղութատիրությունը լիովին ոչնչացնելու համար։ Օրինաչափ է, որ այդ պայքարի ավանգարդում կանգնած է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, որը ուժ ու ջանք չի խնայում ազատագրվող ժողովուրդներին նրանց արդարացի պայքարում աջակցելու համար։

Սովետական Միության լենինյան արտաքին քաղաքականությունը մարմնացնում է Կարլ Մարքսի մեծ գաղափարները, անհերքելի ապացուցում, որ սոցիալական ճնշումից ազատագրված ժողովուրդը բոլոր ռասաների ու ազգերի պատկանող ժողովուրդների անդավաճան բարեկամն է։ Ասիայի ու Աֆրիկայի ազատագրված երկրների ժողովուրդները գիտեն, որ իմպերիալիզմի ու գաղութատիրության դեմ իրենց մղած կենաց ու մահու պայքարում նրանք վստահորեն կարող են հենվել սովետական ժողովուրդների եղբայրական օգնության վրա։ Սովետական Միությունը տասնյակ ազատագրված երկրներում ազգային տնտեսության, արդյունաբերության ու ժամանակակից մշակույթի զարգացման անշահախնդիր ջատագովն է։ Հնդկաստանում, Եգիպտոսում, Սիրիայում, Իրաքում, Բիրմայում, Սոմալիում, Եթովպիայում և բազմաթիվ այլ երկրներում Սովետական Միության օգնությամբ կառուցված մետաղաձուլական կոմբինատները, մեքենաշինական գործարանները, հիդրոհանգույցները, հիվանդանոցներն ու բարձրագույն կրթության օջախներն այդ բանի համոզիչ վկաներն են։

Մարքսի երազած ժողովուրդների լիակատար ազատագրումը ճնշումից ու շահագործումից, նրանց ազատ ու անկաշկանդ զարգացումն արդեն իրականություն է դարձել աշխարհի ժողովուրդների մեկ երրորդին միավորած սոցիալիզմի համակարգում։



## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԿՈՒՍՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ

ԵՐԻՑՅԱՆ Խ. Հ.

# ՍՈՑԻԱԼԻՍՏ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆՆԵՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍՆԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՆԱԽՕՐՅԱԿԻՆ

*Սոցիալիստական հեղափոխությունը մեր երկրում հաղթանակեց կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ։ Աշխատավորների հեղափոխական պայքարը գլխավորելու դերը վիճակվեց միայն կոմունիստական կուսակցությանը, որը հեղափոխության նախապատրաստման և անցկացման ժամանակաշրջանում, ինչպես և իր ստեղծման օրից իրեն դրսևորեց որպես բոլոր կեղեքվածների շահերի իսկական արտահայտիչ։ Կոմունիստները այն միակ քաղաքական ուժն էին, որին մասսաները հավատում և որի հետևից գնում էին։ Մնացած բոլոր քաղաքական կուսակցությունները այդ շրջանում կորցրել էին իրենց գաղափարական-քաղաքական ազդեցությունը և հեղափոխության հաղթանակից հետո վերջնականապես չքացան պատմական թատերաբեմից։ Այդ կուսակցություններից էր նախկինում բազմանդամ և համեմատաբար քաղաքական խոշոր ազդեցություն ունեցող սոցիալիստ-հեղափոխականների (էսեռների) մանրբուրժուական կուսակցությունը։*

*Սոցիալիստ-հեղափոխականների քաղաքական սնանկությունն ուներ իր մի շարք պատճառները։ Կուսակցության ստեղծման օրից նրա հիմքում դրված էին մանրբուրժուական, ուտոպիական, հակամարքսիստական թեորիան և ավանտյուրիստական տակտիկան։ Հասարակության զարգացման օրենքների, դեմոկրատական և սոցիալիստական խնդիրների, պատմության մեջ անհատի և ժողովրդական մասսաների, ինչպես և առանձին դասակարգերի դերի մասին էսեռ տեսաբանների հակագիտական հայացքները չէին կարող չհանգեցնել այդ կուսակցության քաղաքական սնանկությանը։*

*Էսեռների կուսակցության կործանման հիմնական պատճառը նրա հակաժողովրդական քաղաքականությունն էր։ Մանրբուրժուական հեղափոխությունից և հեղափոխական ավանտյուրիզմից նետվելով ռեֆորմիզմի և հակահեղափոխական բուրժուազիայի գիրկը, սոցիալիստ-հեղափոխականների կուսակցությունը քայլ առ քայլ մոտենում էր իր փլուզմանը։ Բախտը կապելով բուրժուազիայի հետ, նրանք վարում էին տիրապետող դասակարգերի շահերի պաշտպանության քաղաքականություն, դրանով նախապատրաստում իրենց*



*կուսակցության անկումը։ Հոդվածում փորձ է արվում ցույց տալ էսեռների քաղաքական անկման մի էտապը, մասնավորապես 1917 թվականի հուլիսյան դեպքերից մինչև հոկտեմբեր։*

* * *

Բուրժուական ժամանակավոր կառավարությունը, որն ստեղծվեց 1917 թվականի փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունից հետո, մինչև իր վախճանը ապրեց մի քանի քաղաքական ճգնաժամ։ Եվ եթե նրան հաջողվեց իր գոյությունը յոթ ամիս պահպանել, ապա այդ գործում նրան լուրջ օգնություն ցույց տվին էսեռները և մենշևիկները։ Ժամանակավոր կառավարության առաջին կամ ապրիլյան ճգնաժամի ժամանակ նրանք մեծ ծառայություն մատուցեցին կապիտալիստներին ու կալվածատերերին՝ իրենց ներկայացուցիչներին մտցնելով մայիսի 5-ին ստեղծված նոր կոալիցիոն կառավարության կազմի մեջ։

Բուրժուական ժամանակավոր կառավարության կազմում վեց սոցիալիստների առկայությունը ժողովրդական մասսաներից ժամանակավորապես թաքցնում էր բուրժուազիայի իսկական նպատակները, քողարկում նրա հակաժողովրդական քաղաքականությունը։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ դրանով բուրժուազիան հնարավորություն ստացավ սոցիալիստների միջոցով կատարելու այն, ինչ չէր կարող կատարել իր իսկ կուսակցությունների միջոցով։ Արտաքուստ այնպիսի տպավորություն էր ստեղծվել, որ սոցիալիստ-մինիստրներն այժմ կարող էին ժամանակավոր կառավարության միջոցով բավարարել ժողովրդական մասսաների պահանջները. վերջիններս միամտորեն հավատում էին նրանց տված կեղծ խոստումներին և սպասում դրանց կատարմանը։ Իրականությունը բոլորովին այլ բան ցույց տվեց։ Բուրժուական ժամանակավոր կառավարության կազմում եղած էսեռների և մենշևիկների ներկայացուցիչները վարում էին հակաժողովրդական քաղաքականություն։

Լենինը գտնում էր, որ բուրժուական ժամանակավոր կառավարությունը չի կարող երկար շարունակել իր քաղաքականությունը, նրա էությունը վաղ թե ուշ կբացահայտվի ժողովրդական մասսաների առջև։

Բոլշևիկների կուսակցությունը, հեղափոխության խաղաղ զարգացման պայմաններում, բացահայտելով էսեռների և մենշևիկների համաձայնողական քաղաքականությունը, քայլ առ քայլ նվաճում էր մասսաների վստահությունը։ Ժամանակավոր կառավարության երկրորդ քաղաքական ճգնաժամի ժամանակ, երբ գումարվեց սովետների I համագումարը, բոլշևիկների հետևից արդեն գնում էր Պետրոգրադի և Մոսկվայի պրոլետարիատի մեծ մասը։ Ինչպես ժամանակավոր կառավարության, այնպես էլ էսեռների և մենշևիկների համար քաղաքական ճգնաժամը ավելի խորացավ, երբ ռազմաճակատում ձախողվեց բուրժուական իշխանության նախաձեռնած հարձակման ավանտյուրիստական պլանը։ Լցվեց ժողովրդի համբերության բաժակը, այն հանգեցրեց Պետրոգրադի բանվորների և զինվորների հուլիսյան ցույցին։

Բոլշևիկները դեմ էին այդ ցույցին, քանի որ նման անժամանակ գործողությունը կարող էր քաղաքացիական պատերազմի առիթ ստեղծել և վնասել հեղափոխության ուժերին։ Կուսակցությունը հաշվի էր առնում այն հանգամանքը, որ թեև մայրաքաղաքի բանվորների և զինվորների ուժերը բավարար էին ժամանակավոր կառավարությունը տապալելու համար, սակայն իշխանությունն իր ձեռքում պահել չէր կարող, որովհետև ժողովրդական մասսաների

մեծ մասը դեռևս հավատում էր էսեռներին ու մենշևիկներին: Բայց քանի որ
հնարավոր չէր զսպել մոլեգնող մասսաների հեղափոխական վճռականությու-
նը, բոլշևիկների կուսակցության Կենտկոմը որոշում ընդունեց մասնակցել
ցույցին և նրան տալ խաղաղ ու կազմակերպված բնույթ: Մոտ կես միլիոն
ցուցարարներ փողոց դուրս եկան՝ «Ամբողջ իշխանությունը սովետներին» լո-
զունգով: Մասսաների պահանջը կիրականանար, եթե չլիներ էսեռների և մեն-
շևիկների բռնած դիրքը. Նրանք ցանկանալով պահպանել կոալիցիան բուր-
ժուազիայի ու կադետների հետ, հուլիսյան ցույցը համարեցին «բոլշևիկների
դավադրություն»: Պետրոգրադի սովետի էսեռա-մենշևիկյան ղեկավարությունը
վերջնականապես անձնատուր եղավ ժամանակավոր կառավարությանը, պա-
հանջելով Պետրոգրադ կանչել հակահեղափոխական զորքեր: Ժամանակավոր
կառավարության հրամանով, էսեռների ու մենշևիկների հավանությամբ խա-
ղաղ ցույցին մասնակցող բանվորներին ու զինվորներին գնդակոծեցին:

Այսպիսով հաշվեհարդար սկսվեց հեղափոխական բանվորների ու զին-
վորների, բոլշևիկների կուսակցության հետ. իշխանությունները միջոցներ
ձեռնարկեցին Լենինին ձերբակալելու համար: Նրանք ցանկանում էին հեղա-
փոխության առաջնորդին ֆիզիկապես ոչնչացնել: Բանվորների, զինվորների և
գյուղացիների դեպուտատների սովետների էսեռա-մենշևիկյան ղեկավարու-
թյունը խրախուսում էր ժամանակավոր կառավարության գործողությունները:
Լենինն այս առիթով գրում էր. «Սովետների և սոցիալիստ-հեղափոխականների
ու մենշևիկների կուսակցությունների առաջնորդները, Ծերեթելու և Չեռնովի
գլխավորությամբ, վերջնականապես դավաճանել են հեղափոխության գործին,
հանձնելով այն հակահեղափոխականների ձեռքը և իրենց ու իրենց կուսակ-
ցությունների ու սովետները դարձնելով հակահեղափոխության թզենու տերև
(Երկեր, հ. 25, էջ 214):

Կադետական կուսակցության ղեկավար Միլյուկովը շատ դիպուկ բնու-
թագրեց սոցիալիստ-հեղափոխականներին, նշելով, որ նրանք հանդես եկան
բուրժուական հեղափոխությունը սոցիալիստական հեղափոխությունից պաշտ-
պանելու դերում:

Սոցիալիստ-հեղափոխականների կուսակցության Կենտկոմը միջոցներ
ձեռնարկեց բոլշևիկների կուսակցության դեմ պայքարն ուժեղացնելու համար.
հուլիսյան օրերից անմիջապես հետո որոշում ընդունվեց, որը լրիվին արտա-
ցոլում էր հակահեղափոխության ձգտումը: Սոցիալիստ-հեղափոխականների
կուսակցության Կենտրոնական կոմիտեն լրիվին հավանություն տվեց ժամա-
նակավոր կառավարության միջոցառումներին: Կենտկոմը կոչ արեց բոլոր
կուսակցական կազմակերպություններին օգնություն ցույց տալ ժամանակա-
վոր կառավարությանը:

Սոցիալիստ-հեղափոխականների կուսակցության Կենտկոմի կոչին արձա-
գանքեցին տեղական շատ կազմակերպություններ: Մայկոպի էսեռական կազ-
մակերպությունը հանդիմանեց բոլշևիկներին այն բանի համար, որ նրանք,
իբր, ազատության թշնամիներ են և որոշում ընդունեց հավանություն տալ
բոլշևիզմի դեմ մղվող պայքարի՝ ժամանակավոր կառավարության միջոցա-
ռումներին: Նման որոշումներ ընդունեցին նաև Մոսկվայի քաղաքային, Պետ-
րոգրադի, Նևայի շրջանային, Մինսկի քաղաքացիական և էսեռական այլ կազ-
մակերպություններ:

Բոլշևիկների դեմ էսեռները մոբիլիզացրին ո՛չ միայն կուսակցական
ուժերը, այլև սովետները: Գյուղացիական դեպուտատների Համառուսաստան-



յան սովետի աջ էսեռական գործկոմը միահամուռ պաշտպանեց բանվորների
և զինվորների համառուսաստանյան սովետի գործադիր կոմիտեին: Այս երկու
օրգանների նիստերից չէր չքանում հուլիսյան դեպքերի հարցը. իսկ հուլիսի
4-ի միացյալ նիստում, ուր աջ էսեռները մեծամասնություն էին կազմում,
ընթացիկ մոմենտի քննարկման ժամանակ պահանջվեց ժամանակավոր կա-
ռավարությունը հայտարարել «հայրենիքի և հեղափոխության փրկության»
կառավարություն: Նիստին մասնակցում էին նաև Պետրոգրադի 54 գործարան-
ների և ֆաբրիկաների 90 ներկայացուցիչ, որոնցից հինգը ելույթներ ունեցան
և խիստ քննադատեցին սովետների առաջին գումարման համառուսաստան-
յան գործկոմի կոչը, որով հուլիսյան ցույցին մասնակցելու համար բանվոր-
ներն ու զինվորները մեղադրվում էին որպես «հակահեղափոխականներ»:
Բանվորները պահանջեցին, որ ժամանակավոր կառավարությունից հեռանան
տասը կապիտալիստ-մինիստրները և հայտարարեցին, որ նրանք վստահում
են սովետին և ոչ նրանց, ում սովետն է վստահում: Իրենց ելույթներում
մայրաքաղաքի բանվորների ներկայացուցիչները հայտարարեցին, որ ժամա-
նակավոր կառավարության դեմ ոչ թե բունտ է բարձրացված, այլ ելույթ է
կազմակերպված. այնուհետև նրանք պահանջեցին, որ ամբողջ հողը տրվի ժո-
ղովրդին, վերացվեն բոլոր այն հրամանները, որոնք ուղղված են հեղափո-
խական բանակի դեմ, միջոցներ ձեռնարկվեն կապիտալիստների սաբոտաժի
և լոկաուտների դեմ, հսկողություն սահմանվի արտադրության նկատմամբ:
Իրենց ելույթների վերջում բանվոր դասակարգի ներկայացուցիչները պահան-
ջեցին ամբողջ իշխանությունը հանձնել բանվորների, զինվորների և գյուղա-
ցիների սովետներին:

Պետրոգրադի առաջավոր բանվորների ելույթները վկայում են, որ մայ-
րաքաղաքի պրոլետարիատը՝ որպես Ռուսաստանի բանվոր դասակարգի առա-
ջավոր ջոկատ, բոլշևիկների շնորհիվ հսկայական քայլ էր արել իր դասակար-
գային գիտակցության գաղափարական հասունացման համար, որ սոցիա-
լիստական հեղափոխության բանակը ամրանում էր ու հզորանում:

Պետրոգրադի բանվորների պահանջը՝ ամբողջ իշխանությունը հանձնել
սովետներին, պաշտպանեցին բոլշևիկ Լունաչարսկին և ձախ էսեռ Կամկովը:
Լունաչարսկին հայտարարեց, որ եթե չլինեին բոլշևիկները, ապա էսեռները և
մենշևիկները վաղուց կխեղդվեին անարխիայի մեջ: Այնուամենայնիվ, սո-
վետների համառուսաստանյան գործադիր կոմիտեների միացյալ նիստը ըն-
դունեց էսեռա-մենշևիկյան գիծը, որի հիմնական նպատակը երկրում հակահե-
ղափոխական դիկտատուրա ստեղծելն էր: Եվ ահա 1917 թ. հուլիսի 6-ին եր-
կու գործկոմները նոր կոալիցիոն կառավարություն ստեղծելու մասին որոշում
ընդունեցին: Էսեռներն ու մենշևիկներն առաջարկեցին ժամանակավոր կառա-
վարությանը տալ «հեղափոխական դիկտատուրայի» իրավունք: Այդ հարցը
քննարկվեց սովետների հուլիսի 9-ի միացյալ նիստերում: Բոլշևիկների ֆրակ-
ցիայի անունից հանդես եկավ ընկ. Պանինը: Նա բացահայտեց էսեռների ու
մենշևիկների առաջարկության հակահեղափոխական բնույթը և վճռականա-
պես հայտարարեց, որ այդ հեղափոխական դիկտատուրա չէ և ուղղված է հե-
ղափոխության բարեկամների, բոլշևիկների և նրա առաջնորդ Լենինի դեմ:
Բոլշևիկ Պանինի ելույթը պաշտպանեցին ձախ էսեռները. նրանց անունից
հանդես եկավ Կամկովը: Նա քննադատեց ժամանակավոր կառավարության
վարած քաղաքականությունը և առաջարկեց չքվեարկել էսեռների ու մենշևիկ-
ների առաջարկության օգտին:

Չնայած դրան, սովետների էսեռա-մենշևիկյան ղեկավարությունն անց-
կացրեց իր բանաձևը, որով ժամանակավոր կառավարությունը համարվում
էր «հեղափոխության փրկիչ» և նրան տրվում էին երկրում «կարգ ու կանոն»
ստեղծելու անսահմանափակ իրավունքներ։ էսեռներն ու մենշևիկները պահան-
ջում էին երկրում ստեղծել «կարգ ու կանոն», ամբողջ ուժով հարձակվել նրանց
վրա, ովքեր ներսից քայքայում էին հեղափոխության գործը, կոչ էին անում
բանակին՝ չենթարկվել կառավարությանը։ Սրանով էսեռա-մենշևիկյան ղե-
կավարությունը ուզում էր հաշվեհարդար տեսնել բոլշևիկների հետ, ձախողել
հեղափոխությունը, փրկել բուրժուա-կալվածատիրական տիրապետությունը
Ռուսաստանում։

Զբավարարվելով դրանով, Համառուսաստանյան գյուղացիական սովետի
գործկոմը, բանվորների և զինվորների Համառուսաստանյան սովետի գործ-
կոմի հետ միասին, հուլիսի 12-ին մի նոր որոշում ընդունեց, որը բացա-
հայտորեն ուղղված էր բոլշևիկների կուսակցության դեմ։ Որոշումը պահան-
ջում էր բոլշևիկների և Լենինի դեմ բաց դատավարություն սկսել։ Այդ նույն
որոշմամբ բանվորների և զինվորների հուլիսյան ցույցը գնահատվում էր
որպես հեղափոխական մեծամասնության կամքի դեմ ուղղված «խռովություն»։

Այսպիսով, սովետների էսեռա-մենշևիկյան ղեկավարությունը լրիվին
գլորվեց հակահեղափոխության գիրկը։ Մանրբուրժուական կուսակցություն-
ների ու նրանց առաջնորդների այդ շրջանի գործողությունների շուրջ Լենինը
գրում էր. «էսեռներն ու մենշևիկները հուլիսի 4-ին վերջնականապես գլոր-
վեցին հակահեղափոխության աղբահորը, որովհետև մայիսին և հունիսին
նրանք անշեղ գլորվում էին դեպի այդ հորը, մասնակցելով կոալիցիոն մի-
նիստրությանը և հավանություն տալով հարձակման քաղաքականությանը»
(Երկեր, հ. 25, էջ 252)։

էսեռական մամուլը բոլշևիկների դեմ կեղծիքի և զրպարտության արշավ
կազմակերպեց։ Նիժնի-Նովգորոդի էսեռական կոմիտեի օրգան «Народ», Տամ-
բովի «Крестьянский союз», Եկատերինոսլավի՝ «Крестьянский союз» և այլ
թերթեր ամբողջ ձայնով պահանջում էին պայքարի դուրս գալ բոլշևիկների
դեմ, քանի որ վերջիններս, իբր, կազմալուծում են մասսաներին։ էսեռների
կուսակցության մեծ թե փոքր գործիչները տեղերում վարում էին իրենց Կենտ-
կոմի հակահեղափոխական գիծը, որի նպատակն էր կործանել իսկական հե-
ղափոխական ուժերը։ Նոր ժամանակավոր կառավարությունը, որին էսեռներն
ու մենշևիկները համարում էին «հայրենիքի և հեղափոխության փրկարար
կառավարություն», փաստորեն իմպերիալիստական բուրժուազիայի ռեակցիոն
դիկտատուրա էր, որն ուզում էր արյան մեջ խեղդել բուն հեղափոխությունը։

Հուլիսյան ճգնաժամից հետո ձևավորված նոր ժամանակավոր կառավա-
րության կազմում արդարադատության մինիստր նշանակվեց էսեռների կու-
սակցության ականավոր գործիչներից մեկը՝ Զարուդնին։ Այդ «սոցիալիստը»
իր գործունեությունը սկսեց բոլշևիկների կուսակցության դեմ դատական գործ
հարուցելով։

Սոցիալիստ-հեղափոխականների կուսակցության Կենտկոմի անդամ Բու-
նակովը լայն աշխատանք ծավալեց ռազմաճակատից հրավիրված սովետների
դելեգատների շրջանում, որպեսզի նրանք հավանություն տան հեղափոխության
դեմ պայքարելու ժամանակավոր կառավարության միջոցառումներին։ Սև գործ
էին կատարում նաև էսեռներ Չեռնովը, Գոցը, Մինորը և մյուսները։

Օգտվելով քաղաքային մանր բուրժուազիայի շրջանում իրենց ունեցած



ազդեցությունից, էսեռները 1917 թ. հուլիսին տեղի ունեցած մունիցիպալ ընտ-
րություններին քաղաքային դումաներում կարողացան մեծամասնություն նվա-
ճել։ Այդ հանգամանքը նրանց հնարավորություն ընձեռեց պաշտոններ գրա-
վելու բուրժուական պետական ապարատում և դումաները դարձնելու հակա-
հեղափոխության օջախներ։ Քաղաքային այն դումաներում, ուր, մենշևիկների
հետ միասին, մեծամասնություն էին կազմում էսեռները, ժամանակավոր
կառավարության հակահեղափոխական-հակաժողովրդական քաղաքականու-
թյունը ջերմ պաշտպանություն էր գտնում։

Փետրվարյան հեղափոխությունից հետո Տամբովի էսեռները պաշտպանում
էին նահանգային պետական իշխանությունը, որը ցանկանում էր պահպանել
հին, ցարական կարգերը։ Նրանք հավանություն տվեցին ժամանակավոր կառա-
վարության նահանգային կոմիսարի այն հրամանին, որով վերջինս կարգա-
դրում էր գավառային կոմիսարներին՝ ձեռք չտալ ցարական ոստիկանությանը,
սահմանափակվել միայն նրա վերանվանմամբ (միլիցիա)։ Տամբովի էսեռական
կազմակերպության ղեկավարներից մեկը՝ Շատովը, հանդես գալով երկաթգծի
արհեստանոցներում, հայտարարեց, որ քաղաքային դուման դեմ է ցարական
գործիչների բանտարկությանը, քանի որ նրանք նոր կարգերի համար ամենևին
վտանգավոր չեն։ էսեռների ջանքերով Տամբովի սովետում ընտրվեցին քա-
ղաքային խոշոր բուրժուազիայի և չինովնիկության ներկայացուցիչները։

Հակահեղափոխության հարձակումը հուլիսյան դեպքերից հետո պատա-
հական չէր, այն վաղուց էր նախապատրաստվում, որին իրենց համաձայնո-
ղական քաղաքականությամբ նպաստում էին մանրբուրժուական «սոցիալիս-
տական» կուսակցությունները։ Հուլիսյան դեպքերից հետո էսեռները բացա-
հայտ գործունեություն ծավալեցին։ Նրանք կապիտալիստների և կալվածա-
տերերի իշխանության միջոցով ցանկանում էին հաշվեհարդար տեսնել բոլշե-
վիկների կուսակցության հետ, խեղդել հասունացող հեղափոխությունը։ Ահա
թե ինչու հուլիսյան օրերից հետո էսեռների կուսակցությունն անցավ հակա-
հեղափոխության լագերը և բուրժուազիայի հետ համաձայնողականության
կուսակցությունից վերածվեց հակահեղափոխությանն ուղղակի աջակցողների
կուսակցության։

Լենինը նշում է, որ էսեռները, մենշևիկների հետ միասին, սկսեցին ցած
գլորվել հենց այն օրից, երբ առաջին բուրժուական կառավարությանը պայ-
մանական պաշտպանություն խոստացան, մայիսի 6-ին նրանց փրկեցին կոր-
ծանումից, դարձան բուրժուական իշխանության պաշտպաններ ու ծառաներ։
Սովետների I համագումարի ժամանակ էսեռները մասնակցում էին բոլշևիկ-
ների կուսակցության և հեղափոխական պրոլետարիատի դեմ կազմակերպված
զրպարտանքի ու կեղծիքի արշավանքին, իսկ հուլիսի 3-ին համաձայնեցին
Պետրոգրադ կանչել հակահեղափոխական ուժերին՝ բանվորներին և զինվոր-
ներին գնդակահարելու համար, որ իշխանությունը վերջնականապես հանձնվի
բոնապարտիստներին «Աստիճանից աստիճան։ Մի անգամ ոտք դնելով բուր-
ժուազիային համաձայնողականություն ցուցաբերելու թեք մակարդակի վրա,
էսեռներն ու մենշևիկներն անզուսպ կերպով ցած գլորվեցին և հասան մինչև
հատակը...

էսեռների ու մենշևիկների կուսակցությունների այդպիսի խայտառակ
ֆինալը պատահականություն չէ, այլ մանր տնտեսատերերի, մանրբուրժուա-
զիայի տնտեսական դրության Եվրոպայի փորձով շատ անգամ հաստատված
հետևանք» (Երկեր, հ. 25, էջ 298)։

***

Հուլիսյան դեպքերից հետո բուրժուազիայի և կալվածատերերի դիկտատուրան բացահայտ հարձակման անցավ հեղափոխության դեմ: Վերջացավ երկիշխանության և հեղափոխության խաղաղ զարգացման ժամանակաշրջանը: Սովետները էսեռա-մենշևիկյան ղեկավարությամբ դարձան բուրժուական կառավարության կցորդը: Բոլշևիկների կուսակցությունը «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգը ժամանակավորապես հանեց օրակարգից: Սակայն, դա չէր նշանակում ընդհանրապես հրաժարվել սովետների հանրապետությունից: Խոսքը այն սովետների մասին էր, որոնք էսեռների և մենշևիկների համաձայնողական քաղաքականության հետևանքով, հեղափոխության խաղաղ զարգացման պայմաններում, իրենց ձեռքը չվերցրին ամբողջ իշխանությունը և անցան հակահեղափոխության կողմը: Այդ սովետները չէին կարող լինել ժողովրդական իշխանության օրգաններ: Բոլշևիկները համոզված էին, որ մոտ ապագայում իրենք պատշաճ տեղ կգրավեն սովետներում և այն կդարձնեն հեղափոխական իշխանության օրգաններ: Լենինը նշում էր, «Սովետները կարող են և պետք է հանդես գան այդ նոր հեղափոխության մեջ, բայց ո՛չ այժմյան սովետները, ո՛չ դեպի բուրժուազիան համաձայնողականություն ցուցաբերող օրգանները, այլ նրա դեմ հեղափոխական պայքար մղող օրգանները: Որ մենք այն ժամանակ էլ կողմնակից կլինենք ամբողջ պետության կառուցմանը սովետների տիպով, այդ այդպես է: Դա սովետների հարց չէ ընդհանրապես, այլ տվյալ հակահեղափոխության դեմ և տվյալ սովետների դավաճանության դեմ պայքար մղելու հարց» (Երկեր, հ. 25, էջ 231—232):

Վ. Ի. Լենինի այն կանխագուշակումը, որ էսեռա-մենշևիկյան սովետների փոխարեն կստեղծվեն նոր, բոլշևիկյան սովետներ, բխում էր կոնկրետ-պատմական պայմաններից: Դրա համար Լենինը բոլշևիկյան կուսակցական կազմակերպություններից պահանջում էր՝ չլքել սովետները, ուժեղացնել աշխատանքը այնտեղ, սովետները չթողնել սոցիալ-դավաճանների ձեռքում: Հիմնական խնդիրն էր՝ համառ, գաղափարական պայքարում բացահայտել էսեռների ու մենշևիկների բուն էությունը, նպաստել մասսաների դասակարգային գիտակցության զարգացմանը, օգնել նրան կողմնորոշվելու քաղաքական կուսակցությունների մեջ, կատարել գիտակցական ընտրություն ձախ և աջ էսեռների, բոլշևիկների և մենշևիկների միջև, այսինքն՝ հեղափոխության, ժողովրդի բարեկամներին տարբերել նրա թշնամիներից: Անհրաժեշտ էր էսեռների և մենշևիկների դեմ մղվող պայքարում մարտական նոր ջոկատներով համալրել հեղափոխության բանակը:

Պայքարը վերստին բռնկեց Մոսկվայում պետական խորհրդակցության նախօրեին: Բուրժուազիան հակահեղափոխության հող էր նախապատրաստում ռազմական դիկտատուրա ստեղծելու համար: Նա դեմ էր սահմանադիր ժողովին, դրանից ցանկալի արդյունք չէր սպասում: Սակայն ելքը գտնվեց. սահմանադիր ժողովը փոխարինվեց «Մոսկովյան խորհրդակցությամբ»: Խորհըրդակցության ամբիոնից բուրժուազիայի և կալվածատերերի ներկայացուցիչները համառորեն պահանջում էին շարունակել պատերազմը, բանակում ստեղծել «կարգ ու կանոն», երկրում հաստատել ռազմական դիկտատուրա և այլն:

«Էսեռական կուսակցության վերնախավը» «Մոսկովյան խորհրդակցությունում» ներկայացնում էր քաղաքային դումաները, զեմստվոները և էսեռա-



մենշևիկյան սովետները: Մենշևիկների հետ միասին էսեռները ողջունեցին այդ ժողովը, որտեղ հավաքվել էր հակահեղափոխության միջուկը:

Վ. Ի. Լենինը պետական խորհրդակցությունն անվանեց հակահեղափոխության «թագադրում»: Այդ խորհրդակցության նկատմամբ բոլշևիկների կուսակցության տակտիկան մշակված էր դեռևս Կենտկոմի 1917 թ. օգոստոսի 5-ի պլենումում: Բոլշևիկները պետք է ներկայանային խորհրդակցությանը, մշակեին դեկլարացիա, հրապարակեին այն և անմիջապես հեռանային խորհրդակցությունից:

Այդ միանգամայն ճիշտ տակտիկա էր, որի նպատակն էր բացահայտել հակահեղափոխության պլանները: Սակայն էսեռա-մենշևիկյան դավադիր ղեկավարությունը խանգարեց բոլշևիկներին մտնելու պատվիրակության կազմի մեջ և մասնակցելու խորհրդակցությանը: Այդ ժամանակ բոլշևիկները վճռեցին դեկլարացիա հրատարակել և այն տարածել բանվորների, զինվորների և գյուղացիների շրջանում: Դեկլարացիան բացահայտում էր ժամանակավոր կառավարության հրավիրած խորհրդակցության նպատակները: Այնտեղ ասված էր, որ ժամանակավոր կառավարությունն ինքը հակահեղափոխության կազմակերպիչ է և խորհրդակցությունը հրավիրել է, որպեսզի կոնկրետ միջոցներ ձեռք առնի հեղափոխության նվաճումները ոչնչացնելու համար:

Այդ մեղադրական ակտ էր, ուղղված խորհրդակցության կազմակերպիչների դեմ, որը միաժամանակ մասսաների տրամադրության ստուգման միջոց էր: Բոլշևիկների կուսակցության կոչով մասսաները զինված պայքարի ելան կոռնիլովյան բանդաների դեմ, ջախջախեցին նրանց և պաշտպանեցին հեղափոխության նվաճումները: Այդ պայքարի ընթացքում վերակենդանացան սովետները: Էսեռա-մենշևիկյան ղեկավարությունը ձգտում էր նսեմացնել սովետների դերը, բայց վերջիններս, մասսաների հեղափոխական նախաձեռնությունը գլխավորելու գործում դրսևորեցին իրենց կենսունակությունը: Կոռնիլովյան բանդաների դեմ մղվող պայքարում բանվորները, զինվորները, գյուղացիները ձեռք բերին հեղափոխական պայքարի նոր փորձ, բարձրացավ նրանց քաղաքական ակտիվությունը, որն սկսվել էր դեռևս ժամանակավոր կառավարության առաջին ճգնաժամի ժամանակ և մեծ թափ ստացավ հուլիսյան դեպքերից, հատկապես, Կոռնիլովի խռովության ջախջախումից հետո:

Հուլիսյան դեպքերից հետո հակահեղափոխությունը ժամանակավորապես հաղթեց: Բայց այն անզոր էր կասեցնելու հեղափոխական իրադրության հետագա զարգացումը, հեղափոխական ուժերի համախմբումը: Ընդհակառակը, ժամանակավոր կառավարության բացահայտ հակահեղափոխական գործունեությունները կրկին բացահայտեցին նրա դիմակը, ուժեղացրին ժողովրդական մասսաների ատելությունը նրա նկատմամբ: Սոցիալիստ-հեղափոխականների կուսակցության հակահեղափոխական գործունեության ուժեղացումը նրանից վանեց ո՛չ միայն բանվորներին, այլև մանրբուրժուական տատանողական խավերին: Աշխատավորների վստահությունը էսեռների նկատմամբ սկսեց արագորեն չքանալ: Ստեղծված իրադրության պայմաններում հասունացավ էսեռական կուսակցության քաղաքական ճգնաժամը, սկսվեցին կազմալուծվել էսեռական կազմակերպությունները:

Էսեռական կուսակցության շարքային անդամներն անվստահություն էին հայտնում իրենց Կենտկոմի նկատմամբ, քննադատում նրա վարած քաղաքական գիծը: Հայտնում ենք Կենտրոնական կոմիտեին,— գրում էին ռազմական «Բոբ» նավակի անձնակազմի էսեռները,— որ մինչև այժմ մենք լիովին վստա-

հել ենք նրան, որը ժամանակավոր կառավարության կազմում ուղարկեց իր
ներկայացուցիչներին։ Մենք հարկ ենք համարում ասելու, որ Կենտրոնական
կոմիտեն հրապուրվեց համաձայնություններով և բռնեց բուրժուական կառա-
վարության գործերին լիովին չմիջամտելու ուղին, մեր կուսակցության լու-
համաձայնությամբ այդ կառավարությունը դարձել է հակահեղափոխական,
հետապնդում է ընկերներին (բոլշևիկներին)։ Մենք հայտարարում ենք, որ եթե
հետագայում ևս շարունակվի նման վնասակար համաձայնողական քաղաքա-
կանությունը, Ձեզ կվերադարձնենք մեր անդամության տոմսերը։

Սրանով էսեռական կուսակցության անդամները միաժամանակ արտա-
հայտում էին անկուսակցական նավաստիների տրամադրությունները։

Դեպքերի զարգացումը ակնհայտորեն ցույց տվեց, որ էսեռների կուսակ-
ցությունը քաղաքական սնանկություն էր ապրում։ Նրանք կորցնում էին ազ-
դեցությունը ո՛չ միայն բանվորների, այլև մանր բուրժուազիայի շրջանում։
Բանվորներն ու գյուղացիները սեփական փորձով համոզվեցին էսեռների և
մենշևիկների դավաճանական քաղաքականության մեջ, այլևս չէին կարող
նրանց թողնել սովետներում, պահանջում էին անցկացնել ընտրություններ։
Սկսվեց սովետների բոլշևիկացման բուռն ժամանակաշրջան, որը հիմնովին
փոխեց սովետների կազմը. էսեռա-մենշևիկյան ղեկավարության փոխարեն
սովետներում հաստատվեց բոլշևիկների ղեկավարությունը։

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության նախօրյակին էսեռնե-
րը կորցրին իրենց երբեմնի «հեղինակությունը», կուսակցությունը կանգնեց
քաղաքական խոր ճգնաժամի առջև, կազմալուծվեց, պառակտվեց երկու մասի։
Ձախ էսեռները, որոնք չէին կարող բաժանել աջերի դիրքը Հոկտեմբերի նախ-
օրյակին և չէին ցանկանում կորցնել իրենց ազդեցությունը գյուղացիական
մասսաների շրջանում, վարեցին ավելի ճկուն տակտիկա, պաշտպանեցին իշ-
խանությունը սովետներին հանձնելու բոլշևիկյան պահանջը։ Աջ էսեռները ան-
ցան հակահեղափոխության գիրկը և կատաղի պայքար ծավալեցին բոլշևիկ-
ների, հեղափոխության դեմ։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից
հետո աջ էսեռները ավելի բացահայտ գլորվեցին հակահեղափոխական ազ-
բակույտը և դարձան սովետական իշխանության թշնամիներ։ Ձախերը հետա-
գայում ևս պառակտվեցին։ Նրանց մի մասը միացավ բոլշևիկներին, մյուս
մասը՝ 1918 թվականի հուլիսի 6-ի խռովությունից հետո դարձավ կուլակի
շահերն արտահայտող կուսակցություն. գյուղում սոցիալիստական հեղափո-
խության խորացման պայմաններում, երբ միջակ գյուղացին թեքվեց դեպի սո-
վետական իշխանությունը, այդ կուսակցությունը քայքայվեց կազմակերպո-
րեն, ջախջախվեց գաղափարապես։ Սոցիալիստական հեղափոխության հաղ-
թանակը գյուղում, 1918 թ. լիովին հաստատեց բոլշևիկների վարած ճիշտ քա-
ղաքականությունը աջ ու ձախ էսեռների նկատմամբ։

Պատմական փաստերը հնարավորություն են տալիս հանգելու այն անվի-
ճելի եզրակացությանը, որ էսեռների կուսակցության կործանման պատճառը
ոչ թե պրոլետարիատի դիկտատուրայի ձեռնարկած ռեպրեսիաներն էին, ինչ-
պես պնդում են Հոկտեմբերյան հեղափոխության պատմությունը կեղծող
բուրժուական պատմաբանները, այլ նրա բռնած թշնամական դիրքն էր ժո-
ղովրդի, սովետական իշխանության դեմ։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԳՆԱԳՈՅԱՑՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ*

Գյուղատնտեսական մթերքների անցյալում գոյություն ունեցող գնման և հանձնման գների մակարդակը կոլտնտեսություններին ու սովխոզներին չէր շահագրգռում ավելացնելու դրանց արտադրությունը, որովհետև անտեսվել էին արժեքի օրենքի պահանջները։ Ուստի, անհրաժեշտ էր արժեքի օրենքի պահանջներին համապատասխան բարձրացնել գյուղատնտեսական մի շարք մթերքների գնման ու հանձնման գները։ Դրանց ճիշտ սահմանումը կարևոր նշանակություն ունի ո՛չ միայն այս կամ այն արտադրանքի արտադրության ավելացման, այլև ողջ ժողովրդական տնտեսության զարգացման համար։

Չնայած վերջին տարիներին մի քանի անգամ բարձրացվել են անասնաբուծական մթերքների գնման և հանձնման գները, այնուհանդերձ, անասնաբուծության արտադրական ծախսերը շատ տնտեսություններում չեն հատուցվում արտադրանքի իրացումից ստացված միջոցներով։ Այսպես, 1966 թ. տվյալներով, կաթի արտադրությամբ գյուղատնտեսական տարին շահույթով են փակել հանրապետության 104 կոլտնտեսություն, խոշոր եղջերավոր անասունի մսի արտադրությամբ 186, ոչխարի մսի՝ 218, թռչունի մսի՝ 143, բրդի՝ 105 կոլտնտեսություն։ Ինչպես տեսնում ենք, անասնաբուծական մթերքների արտադրությամբ հանրապետության կոլտնտեսությունների միայն մի մասն է տնտեսական տարին փակել օգուտով։ Թեև 1965 թվականից զգալիորեն բարձրացվել են գնման և հանձնման գները, այնուամենայնիվ, անասնաբուծական մթերքների արտադրությունը (բացառությամբ տավարի և ոչխարի մսի) ինչպես հանրապետության, այնպես էլ Լոռու բարձրավանդակի մի շարք կոլտնտեսություններում դեռևս շահութաբեր չէ։ Այդ են ցույց տալիս տվյալները (տես 48-րդ էջի աղյուսակը)։

Բացի դրանից, եթե մինչև 1965 թվականը գործող հանձնման գներով ինչպես հանրապետության, այնպես էլ Լոռու բարձրավանդակի սովխոզներում (ամբողջությամբ վերցրած) անասնաբուծական մթերքների արտադրությունը վնասաբեր էր, ապա հանձնման գների բարձրացման շնորհիվ տավարի, խոզի և ոչխարի մսի արտադրությունը հանրապետության սովխոզներում և կովի կաթի, տավարի ու խոզի մսի արտադրությունը Լոռու բարձրավանդակի սով-

* Տպագրվում է հարցադրման կարգով... Խմբ.։

խողներում շահութաբեր է։ Եթե դրան ավելացնենք և այն, որ օգտավետ ճյուղերում խիստ ցածր է շահութաբերության մակարդակը, ապա հասկանալի է, որ առանձին մթերքների արտադրության ցածր շահութաբերությամբ չի կարելի ընդհանրապես ապահովել ընդլայնված վերարտադրությունն անասնաբուծության մեջ։

Անասնաբուծական մթերքների արտադրության շահութաբերության մակարդակը, 1966 թ. (տոկոսներով) *

| Մթերքներ | Կոլտնտեսություններում | | Սովխոզներում | |
|---|---|---|---|---|
| | 1964 թ. գներով | Նոր գներով | 1964 թ. գներով | Նոր գներով |
| Հանրապետությունում | —43,1 | —28,9 | —32,5 | —13,4 |
| Կովի կաթ | —31,6 | + 2,6 | —32,0 | + 2,0 |
| Տավարի միս[1] | —40,9 | —0,04 | —35,9 | + 9,8 |
| Խոզի միս | —38,5 | +18,8 | —28,8 | +35,1 |
| Ոչխարի միս | —11,3 | —11,3 | — 3,1 | — 3,1 |
| Թռչունի միս | —20,1 | —20,1 | —21,6 | —21,6 |
| Բուրդ | —43,9 | —43,9 | —23,6 | —23,6 |
| Ձու (հազար հատ) | | | | |
| Լոռու բարձրավանդակում | —33,3 | —16,6 | —20,0 | + 2,6 |
| Կովի կաթ | —22,3 | +15,1 | —24,2 | +13,7 |
| Տավարի միս | —45,0 | — 6,5 | —16,9 | +47,0 |
| Խոզի միս | —50,9 | — 0,1 | —53,2 | — 6,4 |
| Ոչխարի միս | —24,2 | —24,2 | — | — |
| Թռչունի միս | —25,7 | —25,7 | —29,3 | + 3,4 |
| Բուրդ | —42,2 | —42,2 | — | — |
| Ձու (հազար հատ) | | | | |

1 Միսը՝ կենդանի քաշով։

գյուղատնտեսության բնագավառի աշխատողների հիմնական խըն-

Այսոր գյուղատնտեսության բնագավառի աշխատողների հիմնական խնդիրն է՝ նվազագույնի հասցնել գյուղատնտեսական մթերքների մեկ միավորի արտադրության աշխատանքի և միջոցների ծախսումները։ Դա հավասարապես վերաբերում է և բուսաբուծության և թե, առանձնապես, անասնաբուծության մթերքների արտադրությանը։ Չնայած կուսակցության ու կառավարության մի շարք միջոցառումներին (հատկապես մթերքների գնման և հանձնման գների բարձրացումը), այնուամենայնիվ, անասնաբուծական մթերքների արտադրությունը հանրապետության բազմաթիվ տնտեսություններում դեռևս շահավետ չէ։ Այսպես, 1966 թ. տվյալներով, Ստեփանավանի շրջանի Կուրթանի կոլտնտեսությունում անասնաբուծության գծով վնասները կազմել են 106308 ռուբլի, Վարդաբլուրում՝ 39095։ Թեև այդ տնտեսություններում բուսաբուծության ճյուղի շահույթների հաշվին ո՛չ միայն փոխհատուցվել են անասնաբուծության վնասները, այլև ապահովվել է այդ տնտեսությունների ընդլայնված վերարտադրությունը, բայց և այնպես անասնաբուծության բնագավառում այդպիսի դրությունը չի կարելի նորմալ համարել։ Մեր կարծիքով արտադրությունը պետք է կազմակերպել այնպես, որ յուրաքանչյուր ճյուղը իր ստացած միջոցներով ոչ միայն փոխհատուցի կատարված ծախսերը, այլև ստացվի զուտ եկամուտ՝ ընդլայնված վերարտադրության համար։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ինչպես հանրապետության շատ կոլտնտեսություններում, այնպես էլ սովխոզներում անասնաբուծության

* Ծանոթություն։ Աղյուսակը կազմված է կոլտնտեսությունների և սովխոզների տարեկան հաշվետվությունների նյութերի հիման վրա։



արտադրական ծախսերը չեն փոխհատուցվում արտադրանքի իրացումից ստացված միջոցներով և առաջանում են զգալի վնասներ։ Դա ցույց է տալիս, որ աշխատանքի վարձատրության բարձրացումը կոլտնտեսություններում չի ուղեկցվել աշխատանքի արտադրողականության համապատասխան աճմամբ։ Մինչդեռ, ինչպես սովորեցնում են մարքսիզմի կլասիկները, աշխատանքի արտադրողականության աճը միշտ պետք է առաջ անցնի աշխատանքի վարձատրության աճից։ Այդ են պահանջում հասարակության շահերն ամբողջապես և յուրաքանչյուր աշխատողի շահերն առանձնապես։ Միայն այդ պայմաններում է հնարավոր հանրային արտադրության հետագա ընդլայնումը և աշխատանքի վարձատրության ֆոնդի մեծացումը։ Դա հնարավորություն կընձեռի ո՛չ միայն ավելացնել կոլտնտեսականի վաստակը, այլև բազմապատկել սոցիալիստական սեփականությունը և դրա հիման վրա ապահովել աշխատանքի արտադրողականության աճն ու աշխատավորների նյութական բարեկեցության վերելքը։ Եթե աշխատանքի արտադրողականության աճը առաջ անցնի նրա վարձատրության աճից, ապա տնտեսությունը հնարավորություն կստանա ո՛չ միայն բարձրացնել աշխատանքի վարձատրությունը և դրանով ամրապնդել աշխատողների նյութական շահագրգռվածությունն արտադրության զարգացման գործում, այլև կունենա կուտակումներ, կընդլայնի հանրային արտադրությունը։

Թեև տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունների բազայի վրա սովխոզներ կազմակերպելու հետևանքով փոքր-ինչ նվազել է անասնաբուծական մթերքների արտադրությունը, դրան հակառակ, ավելացել են արտադրական ծախսերը։ Այսպես, համախառն արտադրանքը 1965 թ. 69520 հազար ռուբլու դիմաց, 1966 թ. կազմել է 67084 հազար ռուբլի, կամ նվազել է 3,5 տոկոսով, մինչդեռ արտադրական ծախսերը 71398 հազար ռուբլուց հասել են 75400 հազար ռուբլի, կամ ավելացել 5,6 տոկոսով (փոխանակ նվազելու)։

Անասնաբուծական մթերքների հանձնման գների բարձրացման շնորհիվ սովխոզներում անասնաբուծության ճյուղի վնասները 1964 թ. 9205 հազար ռուբլուց նվազել և 1965-ին հասել են 2043 հազար ռուբլու։ Այդ վնասները շատ տնտեսություններում ծանր բեռ են գյուղատնտեսության համար։ Ահա թե ինչու մյուս ճյուղերից ստացվող շահույթների զգալի մասը հատկացվում է այդ վնասները փակելուն։ Այդ անկասկած, արգելակում է ոչ միայն անասնաբուծության, այլև ողջ գյուղատնտեսության զարգացումը։ Հարց է առաջանում. ի՞նչ անել։ Անասնաբուծության բավարար շահութաբերությունն ապահովելու համար գուցե նորի՞ց բարձրացնել այդ ճյուղի մթերքների գնման և հանձնման գները։ Մեր կարծիքով, ոչ։ Գոյություն ունեցող գները չի կարելի ցածր համարել։ 1965—66 թթ. կոլտնտեսային և սովխոզային անասնաբուծության պրակտիկայում առաջին անգամ մի շարք մթերքներ ո՛չ միայն ապահովեցին այդ ճյուղի արտադրության ծախքերի հատուցումը, այլև որոշ չափով շահույթը։ Անասնաբուծական մթերքների ներկայումս գործող գնման և հանձնման գներն անհրաժեշտ տնտեսական պայմաններ են ստեղծում այդ ճյուղի զարգացման համար։ Այժմ (բացառությամբ կաթի և բրդի) հազիվ թե խելացի լինի դրանց հետագա բարձրացումը։ Այդ միջոցառման իրագործումը կհակասի հասարակության շահերին, քանի որ կկասեցնի սննդամթերքների մանրածախ գների իջեցումը և դրանով կսահմանափակի աշխատավորների գնողունակությունը։

Գյուղատնտեսության արդյունավետության բարձրացման միակ ճիշտ և

հուսալի ուղին բոլոր ճյուղերի և, ամենից առաջ, անասնաբուծության ինտեն-
սիվացումն է, գյուղատնտեսական արտադրանքների գնման ու հանձնման
գների հետագա կատարելագործումը, դրանց խոր շերտավորումը ըստ գոտի-
ների և միկրոգոտիների։

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու ասպարե-
զում կոլտնտեսությունների շահագրգռվածությունը բարձրացնելու նպատա-
կով անհրաժեշտ է այդ մթերքների գնման գները սահմանել ըստ գոտիների։
Իհարկե, հողակլիմայական, տնտեսական պայմանները և արտադրության
մասնագիտացման ուղղությունը նկատի ունենալով կարելի է որոշ չափով
գները շերտավորել ըստ ենթագոտիների (հատկապես լեռնային շրջաններում,
Լոռի-Փամբակ, Զանգեզուր, Թալին, Աշտարակ և այլն)։ Գները ցածր չպետք
է լինեն այդ մթերքների միջին գոտիական ինքնարժեքից։ Այդ են թելադրում
հանրապետության լեռնային բարդ, կտրտված ռելիեֆի, հողակլիմայական և
ըստ գոտիների կոլտնտեսությունների տնտեսական զարգացման տարբեր
մակարդակ ունեցող պայմանները։ Այդ են պահանջում նաև անասնաբուծա-
կան մթերքների առատություն ստեղծելու շահերը։

Անասնաբուծական հիմնական մթերքների 1 ց. ինքնարժեքը և առաջարկվող գները
ըստ ՀՍՍՀ գոտիների կոլտնտեսությունների (1966 թ.)

| Գոտիները | Կաթ[1] ինքնարժեքը (ռ.) | Կաթ[1] առաջարկվող գինը (ռ.) | Տավարի միս ինքնարժեքը (ռ.) | Տավարի միս մթերման գինը (ռ.) | Տավարի միս առաջարկվող գինը (ռ.) | Բուրդ ինքնարժեքը (ռ.) | Բուրդ մթերման գինը (ռ.) | Բուրդ առաջարկվող գինը (ռ.) |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Շիրակ | 22,2 | 25 | 129 | 143,5 | 145 | 441 | 372 | 450 |
| Սևան | 20,9 | 22 | 122 | 137,5 | 145 | 429 | 339 | 450 |
| Նախալեռնային | 25,7 | 28 | 174 | 135,6 | 180 | 543 | 407 | 550 |
| Կենտրոնական | 20,8 | 22 | 139 | 143,3 | 145 | 427 | 368 | 450 |
| Զանգեզուր | 19,1 | 20 | 131 | 135,9 | 145 | 405 | 336 | 450 |
| Դարալագյազ | 21,5 | 25 | 126 | 146,4 | 145 | 470 | 418 | 500 |
| Հյուսիս-Արևելյան | 22,7 | 25 | 147 | 140,9 | 150 | 449 | 351 | 450 |
| Լոռի-Փամբակ | 18,5 | 20 | 123 | 140,9 | 145 | 483 | 413 | 500 |
| Արարատյան | 25,2 | 28 | 178 | 135,1 | 180 | 579 | 477 | 550 |
| ՀՍՍՀ | 21,8 | 24 | 128 | 140,0 | 145 | 413 | 372 | 500 |

[1] Կաթի իրացման գինը 15,5 ռուբլի է։

Ինչ վերաբերում է խոզի, թռչունի մսի և ձվի գնման գներին, ապա հարկ
է նշել, որ միջին հաշվով, դրանք ցածր չեն։ Այդ մթերքների արտադրության
հետագա ավելացման և շահութաբերության բարձրացման խնդիրը պետք է
լուծել ըստ գոտիների խոզաբուծությունն ու թռչնաբուծությունը ճիշտ տեղա-
բաշխելու, մասնագիտացումը խորացնելու, ինչպես նաև միջկոլտնտեսային
խոշոր ֆերմաներ կազմակերպելու միջոցով։ Ստեղծված մանր ֆերմաներում
շատ սահմանափակ են նոր տեխնիկա և արտադրության տեխնոլոգիա ներ-
դնելու և, հետևապես, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու
հնարավորությունները։

Այսպիսով, մեր կարծիքով, կոլտնտեսային և սովխոզային արտադրու-
թյան զարգացման տնտեսական խթանման մեջ կարևորագույն օղակներից



մեկը պետական գնման և հանձնման գների այնպիսի մակարդակի սահմա-
նումն է, որն ըստ գոտիների և միկրոգոտիների ավելի լրիվ արտացոլեր
արտադրանքի արտադրության վրա կատարվող աշխատանքի հանրորեն ան-
հրաժեշտ ծախսերը։ Հարկավոր է հատուցել նյութական ծախսերը, ապահովել
աշխատանքի վարձատրության հանրորեն անհրաժեշտ մակարդակը և բավա-
րար քանակությամբ զուտ եկամտի ստացումը՝ տնտեսության հիմնական ու
շրջանառու ֆոնդերի կազմավորման, արտադրության բարձր ցուցանիշների
հասնելու, պարգևատրման, սոցիալ-կուլտուրական ֆոնդերի գոյացման, պե-
տությանը հարկային և ապահովագրական վճարումների հատուցման համար։

Սոցիալիստական տնտեսության մեջ գինը արժեքի օրենքի օգտագործ-
ման կարևորագույն լծակն է։ Ժողովրդական տնտեսության պլանային հմուտ
ղեկավարման համար անհրաժեշտ է ոչ թե սահմանել գները՝ որպես աշխա-
տանքի հանրորեն անհրաժեշտ ծախսումների ընդօրինակում ժողովրդական
տնտեսության առանձին ճյուղերում և առանձին ձեռնարկություններում,
այլ գինն օգտագործել որպես ձեռնարկության նորմալ եկամտաբերության
ապահովման առավել ճկուն և արդյունավետ միջոց։ Հետևաբար, արտադրանքի
գնման և հանձնման գները չեն կարող լրիվ համապատասխանել դրանց ար-
ժեքին։ Գինը փոքր ինչ ցածր պետք է լինի արժեքից այն նպատակով, որ
ապահովվի կենտրոնացված զուտ եկամտի գոյացման մեջ կոլտնտեսություն-
ների և սովխոզների մասնակցությունը։ Այդ եկամուտը ծախսվում է համա-
ժողովրդական կարիքների վրա։ Պետությունը պետք է իր տրամադրության
տակ միջոցներ ունենա նաև գյուղատնտեսության մեջ կենտրոնացված պլանա-
յին կապիտալ ներդրումների համար (օրինակ, մելիորատիվ կառուցումնե-
րի, ճանապարհաշինարարության և այլն, որոնք չեն իրագործվում առանձին
տնտեսությունների կողմից)։ Ուստի, հավելյալ արդյունքի մի մասը, որն
ստեղծվում է գյուղատնտեսության մեջ, գների մեխանիզմի միջոցով մուծվում
է պետության կենտրոնացված զուտ եկամտի մեջ շրջանառության հարկի
ձևով։

Պլանային գնագոյացման կարևորագույն սկզբունքը գների օգտագործումն
է որպես սոցիալիստական արտադրության նյութական խթանման գործոն։
Անհրաժեշտ է փոխհատուցել արտադրանքի արտադրության այն ծախսերը,
որոնք ապահովում են ընթացիկ և հեռանկարային պլաններում նախատեսված
ընդլայնված վերարտադրության տեմպերը։ Սոցիալիզմի հիմնական տնտե-
սական և աշխատանքի արտադրողականության անշեղ աճի օրենքներին հա-
մապատասխան գները պետք է ապահովեն արտադրության աշխատողների
աշխատանքի դիմաց նյութական հատուցման (վարձատրման) աճը։ Գների,
աշխատավարձի և շահույթի ճիշտ փոխհարաբերությունների սահմանումը
գյուղատնտեսության զարգացման պլանավորման մեջ արմատական հարց է։

Պետական և հանձնման գները վերջին տարիներս, ինչպես կոլտնտեսու-
թյուններում, այնպես էլ սովխոզներում պլանավորում են նկատի ունենալով
առաջին հերթին գյուղատնտեսական մթերքների արտադրության եկամտա-
բերության ապահովումը։ Քանի որ դեռևս չենք հասել այդ բանին, ապա պլա-
նային գնագոյացման խնդիրն է՝ արտադրանքի գնման և հանձնման գները
սահմանել այնպիսի մակարդակով, որ ապահովվի առանձին մթերքների ար-
տադրության շահութաբերությունը երկրի յուրաքանչյուր բնատնտեսական գո-
տում։

Նյութական խթանման ուղղությամբ կուսակցության և կառավարության

ձեռնարկած տնտեսական միջոցառումների պայմաններում թեև կոլտնտեսությունների ու սովխոզները շահութաբեր են, այնուամենայնիվ, մեծ չափով տարբեր է դրանց շահութաբերությունը (ըստ երկրի առանձին շրջանների և ճյուղերի)։ Առանձնապես այդ վերաբերում է հանրային անասնաբուծությանը։ Բուսաբուծության բարձր շահավետ ճյուղերի կողքին երկրի շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում անասնաբուծությունը վնասաբեր է։ Այդ անբարեպատեհ երևույթը պայմանավորող շատ գործոններից են կերի բարձր ինքնարժեքը և աշխատանքների մեքենայացման ցածր մակարդակը ֆերմաներում։ Էական նշանակություն ունեն նաև գնման և հանձնման գների անբավարար շերտավորումը ըստ երկրի շրջանների, գոտիների և միկրոգոտիների, մսի և կաթնամթերքների տարբեր արտադրանքի նկատմամբ գների անհամարժեք հարաբերակցության ու անասնաբուծական արտադրանքի տարբեր ասորտիմենտի նկատմամբ բնակչության պահանջարկի անբավարար հաշվառումը և այլն։ Հետևաբար գնման և հանձնման գների սիստեմի կատարելագործումը՝ գիտական և պլանային կազմակերպությունների անհետաձգելի խնդիրն է։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության գործում աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու համար կարևոր նշանակություն կարող են ունենալ նաև ըստ գոտիների և միկրոգոտիների միասնական մթերման գներ սահմանելը՝ ինչպես կոլտնտեսությունների, այնպես էլ սովխոզների համար, որը ցածր չպետք է լինեն գոյություն ունեցող պետական գնման գներից։ Առանձնապես այդ վերաբերում է մեր հանրապետության և համանման պայմաններում գտնվող կոլտնտեսություններին ու սովխոզներին, ուր գրեթե տարբերություն չկա գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մակարդակի և աշխատանքի մյուս պայմանների տեսակետից, քանի որ համանման մթերքների արտադրության վրա գրեթե հավասար ծախսեր են կատարվում։ Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ շատ մթերքների գնման և հանձնման գները հավասարվել են, իսկ որոշ մթերքներինը՝ մոտենում են։ Կարծում ենք, որ «Սովխոզները և պետական գյուղատնտեսական ձեռնարկությունները լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1967 թ. որոշումը, որտեղ «Սահմանված է, որ լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրված սովխոզների և մյուս պետական գյուղատնտեսական ձեռնարկությունների կողմից պետությանը վաճառվող գյուղատնտեսական մթերքների դիմաց վճարվում է կոլտնտեսությունների համար սահմանված վերադիր գնման գներով» պետք է տարածվի նաև դեռևս լրիվ տնտհաշվարկի չանցած սովխոզների վրա։ Այդ հանգամանքը պայմաններ կստեղծի գյուղատնտեսության բոլոր ճյուղերը, առանձնապես անասնաբուծությունը՝ շահավետ դարձնելու համար։

Էական թերություններ կան նաև կերի կուլտուրաների գների սահմանման գործում։ Մի՞թե տրամաբանական է, երբ ինչպես մեկ ցենտներ գարու, այնպես էլ մեկ ցենտներ բազմամյա խոտերի հանձնման գինը հավասար է 2,7, իսկ բնական խոտերինը՝ 2,3 ռուբլու և այլն։ Իհարկե, 1 ցենտներ խոտը իր կերային արժանիքներով հավասար չէ 1 ցենտներ գարու։ Կարծում ենք, որ կերային կուլտուրաների համար պետք է սահմանվի միասնական գին՝ ինչպես կոլտնտեսությունների, այնպես էլ սովխոզների համար՝ հիմք ընդունելով կերային միավորների քանակը, դրանց սննդարարությունը



(մարսելի պրոտեինակերամիավորների քանակը)։ Դա հնարավորություն կընձեռի (ելնելով անասունների կերակրման զոոտեխնիկական նորմաներից) ճիշտ ընտրելու կերային կուլտուրաների կազմը և գերազանցապես ընդարձակելու այն կուլտուրաների ցանքատարածությունները, որոնք աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումներով միավոր տարածությունից ապահովում են առավելագույն քանակությամբ մարսելի պրոտեինակերամիավորներ։

Այսպիսով, գյուղատնտեսական արտադրանքների գնման և հանձնման գների հետագա կատարելագործումը, դրանց շերտավորումը ըստ երկրի գոտիների և միկրոգոտիների (կերային կուլտուրաների դեպքում հաշվի առնելով նաև դրանց կերային արժանիքները), ինչպես նաև միասնական մթերման գների սահմանումը գյուղատնտեսության հետագա զարգացման, դրա արդյունավետության բարձրացման կարևորագույն պայմանն են։

ՋՈՒՐԱԲՅԱՆ Ա. Ա.
ՍԱՄՎԵԼՅԱՆ Ա. Հ.

---

# ԲԱՐՁՐՈՐԱԿ ՍԵՐՄԸ ԱՌԱՏ ԲԵՐՔԻ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է

Գյուղատնտեսական կուլտուրաների սերմնաբուծությունը բարելավելու և այդ գործում եղած թերությունները վերացնելու նպատակով ՍՍՀՄ Մինիստրների սովետը և ՍՄԿԿ Կենտկոմը մի շարք միջոցառումներ են սահմանել։ Նրանք այդ հարցին անդրադարձան նաև 1960 թ. ապրիլի 23-ին և որոշում ընդունեցին «Հացահատիկային, յուղատու կուլտուրաների ու խոտերի սերմնաբուծությունը լավացնելու մասին». սահմանվեց սերմնաբուծության նոր կարգ. էլիտային և առաջին վերարտադրության սերմերի արտադրությունը հանձնարարվեց գիտահետազոտական ինստիտուտներին ու ուսումնափորձնական հիմնարկություններին։

Սերմնաբուծության նոր կարգին անցնելու կապակցությամբ ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի 1960 թ. օգոստոսի 25-ի որոշմամբ, հանրապետությունում էլիտային և առաջին վերարտադրության սերմերի արտադրությունը կազմակերպվեց երկրագործության գիտահետազոտական ինստիտուտի ու սովխոզների բազայի վրա։

Պետք է նշել, որ նոր ցանցը, կարճ ժամանակում, զգալի աշխատանք կատարեց սերմնաբուծության բարելավման ուղղությամբ։ Այսպես, 1947 թվականի 9,6 տոկոսի դիմաց, 1967 թվականին հացահատիկային կուլտուրաների 99,8 տոկոսը ցանվել է սորտային սերմերով։ Դրա, ինչպես նաև մյուս միջոցառումների շնորհիվ, հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի միջին բերքատվությունը 1953 թ. 7-ի դիմաց 1967-ին՝ կազմել է 14,8 ցենտներ։

Նկատելիորեն աճել են նաև կարտոֆիլի ու ցանովի բազմամյա խոտաբույսերի (կորնգան, առվույտ, երեքնուկ) սորտային ցանքատարածություններն ու դրանց բերքատվությունը։

Փորձով ապացուցված է, որ սորտային սերմերով կատարված ցանքերն

ավելի լավ ու ռացիոնալ են կլանում հողում եղած ջրի ու սննդանյութերի պաշարները և դիմանում են կլիմայական անբարենպաստ պայմաններին: Շրջանացված լավագույն սելեկցիոն ու բերելավված տեսակները 20—30 տոկոս և երբեմն էլ ավելի բերք են տալիս:

Հացահատիկային կուլտուրաների ու խոտաբույսերի, ինչպես նաև կարտոֆիլի էլիտային սերմնաբուծական տնտեսությունները կատարում ու գերակատարում են էլիտային ու առաջին վերարտադրության սերմերի արտադրության և վաճառքի առաջադրանքները. դրանց շնորհիվ զգալի չափով ավելացել է կոլտնտեսություններին ու սովխոզներին սորտերի թարմացման համար տրվող սերմերի քանակը: 1967 թվականին այդ նպատակով կոլտնտեսություններին ու սովխոզներին վաճառվել է ավելի քան 20000 ցենտներ սերմ:

Գնահատելի աշխատանք են կատարել հանրապետության գիտահետազոտական ինստիտուտներն ու առանձին գիտական աշխատողներ: Նրանց երկարատև ու համառ աշխատանքով առաջին անգամ, 1949 թվականին, շրջանացվեցին ակադեմիկոսներ Վ. Հ. Գուլքանյանի, Ս. Հ. Պողոսյանի, գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Գ. Հ. Սուրմինյանի ստացած աշնանացան ցորենի «Արտաշատի—42» և գյուղատնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ Բ. Մ. Գարասեֆերյանի՝ «Արմյանկա» սորտերը: Բարելավվեց սելեկցիոն նոր սորտերի ստացման ու արտադրության գործը:

Սակայն, ինչպես էլիտային սերմնաբուծական տնտեսություններում, այնպես էլ շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում այդ բնագավառում դեռևս կան լուրջ թերություններ:

Հայաստանի մի շարք շրջանների գյուղատնտեսական արտադրական վարչությունների և շատ կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներ տարիներ շարունակ հույսը դնելով պետության վրա, անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկում սեփական արտադրությունից պահանջվող քանակությամբ սերմեր ստանալու համար: Դեռևս շատ կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներ ու մասնագետներ ոչ միայն լուրջ ուշադրություն չեն նվիրում գյուղատնտեսական, հատկապես հացահատիկային կուլտուրաների, ցանովի բազմամյա ու միամյա խոտաբույսերի սերմնադաշտերի առանձնացմանը, այլև ագրոտեխնիկական բարձր մակարդակով չեն կազմակերպում դրանց մշակությունն ու խնամքը: Ավելին, հաճախ սերմնադաշտերից ստացված բերքը պահում են ընդհանուր միջնապատեր չունեցող պահեստներում, որի հետևանքով սերմերը խառնվում են:

Հանրահայտ է, որ սերմնադաշտերը սերմնաբուծության կազմակերպման ամենակարևոր օղակներից մեկն է. այնտեղ անհրաժեշտ է ստեղծել բույսերի աճի ու բազմացման այնպիսի պայմաններ, որ հնարավոր լինի ո՛չ միայն պահպանել, այլև լավացնել ու բարձրացնել մշակության մեջ եղած բույսերի, սերմերի դրական հատկանիշները: Սերմնադաշտերը պետք է լինեն բարձր ագրոտեխնիկայի իրականացման դաշտեր, հետևաբար բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում լավագույն պայմաններ պետք է ստեղծել այն ցանքերի համար, որոնցից ստացված սերմերն ենթակա են լայն տարածման:

Բարձրորակ ու կայուն բերքատու՝ սելեկցիոն սորտերը ստեղծվել և ստեղծվում են լավագույն ագրոտեխնիկայի կիրառման պայմաններում: Առանց դրա, բարձր հատկանիշներ ունեցող սորտերը կամ դրանց սերմերը մի քանի սերունդների ընթացքում վատանում ու կորցնում են իրենց դրական հատկանիշները: Բույսերի աճի ու զարգացման համար բարենպաստ պայման-



ներ ստեղծելու նպատակով անհրաժեշտ է պահպանել սերմնաբուծության հիմնական կարգը: Ելնելով դրանից, սելեկցիոն կայաններում, գիտահետազոտական ինստիտուտների ուսումնական հաստատությունների սերմնաբուծական տնտեսություններում, բարձր ագրոտեխնիկայի կիրառման պայմաններում են աճեցվում էլիտային ու առաջին վերարտադրության սերմերը և վաճառվում կոլտնտեսություններին ու սովխոզներին: Ստացված էլիտային և առաջին վերարտադրության սերմերը պետք է ցանվեն սերմնադաշտերում:

Մեր հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում սորտաթարմացումը կատարվում է հինգ տարին մեկ անգամ: Եթե շրջանների տնտեսություններում յուրաքանչյուր տարի սերմնադաշտերի մեկ հինգերորդը ցանվի, կառաջանան տարբեր սորտերի ու վերարտադրության սերմերի խառնուրդներ. ուստի սորտերի թարմացումը տեղերում կարգավորելու և հեշտացնելու համար անհրաժեշտ է շրջանի տնտեսությունները բաժանել հինգ խմբի (հավասար ցանքատարածություններ ունենալու պայմանով), կազմել սորտաթարմացման պլան ու համապատասխան սերմնաբուծական տնտեսություններից ստացվող էլիտային ու առաջին վերարտադրության սերմերն ամեն տարի տալ խումբ տնտեսությունների և այդպիսով հինգ տարին մեկ ավարտել սորտերի թարմացումը:

Անհրաժեշտ է նշել, որ առանձին շրջանային գյուղատնտեսության արտադրական վարչություններ խախտում են սահմանված կարգը. էլիտային սերմնաբուծական տնտեսություններից ստացվող էլիտային ու առաջին վերարտադրության սերմերն երբեմն տրվում են սերմի պակասը լրացնելու կամ ոչ կոնդիցիոն սերմերով փոխարինելու: Այս երևույթը հատկապես ակնառու է Մարտունու շրջանի տնտեսություններում:

Թալինի շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում շրջանացված 4-ի փոխարեն մշակվում է 7 տեսակ, Մարտունու շրջանի տնտեսություններում՝ 3-ի փոխարեն 6, Աբովյանի շրջանում՝ 5-ի փոխարեն 7 սորտ և այլն: Նույն վիճակն է նաև մի շարք այլ շրջաններում: Հացահատիկային կուլտուրաների (աշնանացան ցորեն) բազմասորտության մշակության հետևանքով խիստ դժվարություններ է ստեղծվում սերմնաբուծության գործի կազմակերպման ուղղությամբ, որը, իր հերթին, բացասաբար է անդրադառնում բարձր բերքի ստացման վրա:

Հայաստանի բարձր լեռնային ու լեռնային շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում աշնանացանն ավելի շուտ է սկսվում, քան նախորդ տարվա բերքահավաքը, կամ դրանք զուգադիպում են, որով մեծ դժվարություններ են առաջանում ժամանակին անհրաժեշտ քանակությամբ բարձրորակ սորտային սերմեր ձեռք բերելու գործում: Այդ գոտիների տնտեսությունների ղեկավարները ժամանակին չեն մտահոգվում նաև աշնանացանի սերմացուի՝ անհրաժեշտ չափով փոխանցիկ ֆոնդեր ստեղծելու խնդրով: Հետևաբար նրանց տնտեսությունները ստիպված աշնանը ցանում են նոր ստացված և հետբերքահավաքյան հասունացման շրջանը չանցած թարմ սերմեր, որը խիստ բացասաբար է անդրադառնում բերքատվության վրա: Նման վիճակին վերջ տալու համար, մեր կարծիքով, անհրաժեշտ է ունենալ աշնանացանի սերմացուի առնվազն 30 տոկոսի չափով փոխանցիկ ֆոնդ:

Ինչպես հայտնի է, մի քանի տարի առաջ, ուշադրությունից վրիպել էր խոտացանությունը, որի հետևանքով առանձին շրջաններում որոշ չափով

կրճատվեցին հատկապես բազմամյա ցանովի խոտերի ցանքատարածությունները: Ձեռնարկված միջոցների շնորհիվ հետագայում այդ երևույթը կանխվեց: Այժմ արդեն լուրջ աշխատանք է տարվում ցանքաշրջանառությունների իրացման միջոցով կայունացնելու բազմամյա խոտերի ցանքատարածությունները: Այդ ուղղությամբ մեծ գործ են կատարել Անիի, Կամոյի, Մարտունու, Բասարգեչարի և Վեդու շրջանների տնտեսությունները, որոնք 1967 թվականի գարնանը խոտացանության պլանը կատարել են 102—136,7 տոկոսով:

Սակայն պետք է նշել, որ Ալավերդու, Ամասիայի, Ղուկասյանի, Կրասնոսելսկի, Սևանի և մի շարք այլ շրջանների տնտեսություններ թերակատարում են խոտաբույսերի ցանքի պլանը: Նշված շրջանները 1967 թվականի գարնանը խոտաբույսերի ցանքի պլանը կատարել են 53,1—68,6 տոկոսով: Դրա պատճառն անհրաժեշտ քանակությամբ սերմով ապահոված չլինելն է:

Խոտի սերմեր ստանալու համար սերմնադաշտերը շատ դեպքերում չեն առանձնացնում, իսկ առանձնացնելիս էլ հարկ եղած ուշադրություն չեն նվիրում դրանց մշակության ու խնամքի վրա, որի հետևանքով սերմնադաշտերից ստացվում է ցածր բերք և դրանով չի ապահովվում ցանքի պլանի կատարումը: Որպեսզի ցանքի պլանը բոլոր տնտեսություններում ժամանակին կատարվի, պետք է անհրաժեշտ չափով սերմնադաշտեր առանձնացնել և դրանցից ապահովել պահանջվող քանակությամբ սերմի ստացումը:

Ներկայումս լուրջ կարևորություն է տրվում կարտոֆիլի արտադրության ավելացմանը, որը մեծ չափով պայմանավորված է կարտոֆիլի սերմնաբուծության բարելավմամբ: Վերջին երկու-երեք տարում կարտոֆիլի էլիտային և առաջին վերարտադրության սերմերի արտադրության հիմքը դրվեց: 1965 թվականին կոլտնտեսություններին ու սովխոզներին է վաճառվել 1826 տոննա սորտային կարտոֆիլի սերմացու, որից էլիտա 310, 1966-ին՝ 2020 տոննա, այդ թվում 785 տոննա էլիտա և առաջին վերարտադրության սերմեր, իսկ 1967-ին՝ 1860 տոննա: Հնգամյակով նախատեսված է (1968 թվականից սկըսած) հանրապետության կոլտնտեսություններին ու սովխոզներին տարեկան տալ 3000—3500 տոննա բարձրորակ էլիտային և առաջին վերարտադրության սերմեր, որով կապահովվի եղած պահանջը:

Չնայած այս բոլորին, անհրաժեշտ է նշել, որ մեր գիտահետազոտական հիմնարկությունների ու սելեկցիոներների ստացած ու շրջանացված սելեկցիոն նոր սորտերը, առանձին դեպքերում, մեծ արատներ ունեն (քարամրիկ, փոշեմրիկ, ժանգ և այլ հիվանդություններով վարակվածությունը, անկանգունությունը): Այդ պատճառով էլ որոշ սորտեր լայն տարածում չեն գտնում ու երբեմն շատ շուտով դառնում են անպետք: Օրինակ, «Լենինականի—3» աշնանացան ցորենը, «Լենինական—216» գարնանացանը, գարու «61—51» սորտերը և այլն:

Մեր կարծիքով, եղած թերությունների հիմնական պատճառը սելեկցիոներների ու այլ մասնագետների (ֆիտոպատոլոգ, բիոքիմիկ, ագրոտեխնիկ), դեռևս չկոորդինացված, մասամբ նաև անհամատեղ աշխատանքն է:

Հայաստանի պայմաններում հացահատիկի արտադրության ավելացման գործում հատկապես կարևոր նշանակություն ունի բարձր բերքատու սորտերի ներդրումը: Այդ տեսակետից մեծ հեռանկարներ կան աշնանացան ցորենի «Բեզոստայա—1» սորտի ցանքատարածությունների ընդարձակման համար: Այս տարի այն կհասնի շուրջ 44300 հեկտարի:

Աշնանացան ցորենի «Բեզոստայա—1» սորտի բերքատվության տվյալ-



ները ցույց են տալիս, որ այն մեր հանրապետության պայմաններում լավ է աճում: Այս սորտը մշակության մեջ եղած մյուս սորտերի համեմատությամբ, բոլոր դեպքերում ավելի բարձր բերք է տալիս: Օրինակ, Գորիսի շրջանի Զանգեզուր սովխոզի 1965 թվականին աշնանացան ցորենի «Նովոուկրինկա—83» տեսակի առաջին վերարտադրության ցանքերի միջին բերքը մեկ հեկտարից (պահեստային) կազմել է 12 ցենտներ, «Գյուլգյանի» տեղական սորտերինը՝ 8, իսկ «Բեզոստայա—1-ինը» 16 ցենտներ: 1966 թվականին «Գյուլգյանի» տեղական սորտի մեկ հեկտարի միջին բերքը եղել է 6, իսկ «Բեզոստայա—1»-ինը՝ 18 ցենտներ:

Վերջին տարիների բերքից երևում է, որ մի շարք այլ սորտերի համեմատությամբ, «Բեզոստայա—1»-ը մի քանի անգամ ավելի արդյունք է տալիս հանրապետության տարբեր շրջաններում:

Այսպիսով, «Բեզոստայա—1» սորտի սերմով ցանք կատարող բոլոր տնտեսությունները բարձր բերք են ստացել: Ահա թե ինչու կոլտնտեսությունների, սովխոզների ու շրջանային գյուղատնտեսական օրգանների ղեկավարների ուշադրությունը պետք է կենտրոնացվի սերմնաբուծության գործի բարելավման վրա, որը հնարավորություն կընձեռի լավորակ սերմեր ստանալ, դրանով իսկ կայուն ու բարձր բերքի հիմքը դնել:

ՎԱՐԴԱՆՅԱՆ Զ. Մ.

## ԳԼԽԱՎՈՐ ՃՅՈՒՂԸ ԾԽԱԽՈՏԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆ Է

Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության էկոնոմիկայում իր բարձր եկամտաբերությամբ առանձնակի տեղ է գրավում ծխախոտագործությունը: Մեզ մոտ մշակվող 7,9 հազար հեկտար ծխախոտի պլանտացիաներից տարեկան ստացվում է 13—14 հազար տոննա հումք: 1965 թ. տվյալներով ՍՍՀՄ-ում ստացված ծխախոտի 9,3 տոկոսը տվել է Հայաստանը:

Հանրապետության միայն կոլտնտեսություններում ծխախոտի պլանտացիաները 1966 թ. կազմեցին 4,9 հազար հեկտար: Ծխախոտագործությունն առավել զարգացած է Հյուսիս-արևելյան գոտում՝ Ալավերդու, Իջևանի, Նոյեմբերյանի և Շամշադինի շրջաններում, ուր ծխախոտը հիմնականում մշակվում է անջրդի պայմաններում (բացի Ալավերդու շրջանից): Մշակվում են ծխախոտի խոշորատերև՝ Օստրոլիստ—2747 և մասամբ Պերեմոժեց—83, իսկ վերջին տարիներս նաև խոշորատերև մի քանի այլ սորտերի հիբրիդներ:

Հիշյալ գոտու կոլտնտեսություններում ծխախոտի պլանտացիաները 1966 թ. հասան 1288 հեկտարի, որը կազմում է հանրապետության կոլտնտեսությունների ծխախոտի ընդհանուր տարածության 26,3 տոկոսը: Նույն թվականին այդ գոտում ծխախոտի համախառն բերքը կազմեց 23,6 հազար ցենտներ կամ կոլտնտեսություններում արտադրված ծխախոտի 29,5 տոկոսը:

Երեք տարվա տվյալներով (1964—1966 թթ.) գոտու կոլտնտեսությունները տարեկան ստացել են միջին հաշվով 29,3 հազար ցենտներ ծխախոտի հումք, որը կազմում է նույն տարիներում հանրապետության կոլտնտեսություններում ստացված ծխախոտի հումքի 33,2 տոկոսը:

Հյուսիս-արևելյան գոտու գյուղատնտեսությունը մասնագիտացված է

ծխախոտագործության ու խաղողագործության ուղղությամբ. զարգացած է նաև անասնաբուծությունը։

Ծխախոտի միջին բերքատվությունը գոտու կոլտնտեսություններում ավելի բարձր է, քան հանրապետության մյուս կոլտնտեսություններում։ Այսպես, եթե հանրապետության կոլտնտեսություններում 1964—1966 թվականներին ծխախոտի միջին բերքատվությունը հեկտարից տարեկան կազմել է 17,4 ցենտներ, ապա գոտու կոլտնտեսություններում՝ 22,6, իսկ Շամշադինի շրջանում՝ 30,4 ցենտներ։ Ծխախոտագործությունն առավել զարգացած է Շամշադինի և Իջևանի շրջաններում, այն կոլտնտեսությունների հիմնական ապրանքային կուլտուրան է։

Ծխախոտը ՀՍՍՀ հյուսիս-արևելյան գոտու կոլտնտեսությունների համախառն արտադրանքի արժեքի մեջ *(1964—1966 թթ. միջին տվյալներով)**

| Շրջաններ | Համախառն արտադրանքի արժեքը (ռուբլիներով) | | | Ծխախոտի տեսակարար կշիռը (տոկոսներով) | |
|---|---|---|---|---|---|
| | ընդամենը | բուսաբուծության | ծխախոտագործության | ընդամենը համախառն արտադրանքի արժեքի մեջ | բուսաբուծ. համախառն արտադրանքի արժեքի մեջ |
| Ալավերդի | 1333963 | 595652 | 165354 | 12,4 | 27,8 |
| Իջևան | 2355781 | 1389629 | 957202 | 40,6 | 68,9 |
| Նոյեմբերյան | 1535198 | 773728 | 282747 | 18,4 | 36,5 |
| Շամշադին | 8318130 | 6022539 | 3640728 | 43,8 | 60,5 |
| Ընդամենը գոտում | 13543072 | 8781549 | 5046031 | 37,3 | 57,5 |

Տվյալները ցույց են տալիս, որ գոտու կոլտնտեսությունների 1964—1966 թթ. համախառն արտադրանքի արժեքի մեջ ծխախոտագործությունը կազմել է 37,3 տոկոսը։ Ծխախոտագործության տեսակարար կշիռը հատկապես մեծ է Շամշադինի և Իջևանի շրջանների կոլտնտեսությունների համախառն արտադրանքի արժեքի մեջ. այն համապատասխանաբար կազմում է 43,8 և 40,6 տոկոս։ Գոտու մասշտաբով, ծխախոտագործությունը բուսաբուծության համախառն արտադրանքի արժեքի գերակշռող մասն է—57,5 տոկոս (Շամշադինի շրջանում 60,5, իսկ Իջևանում՝ 68,9 տոկոս)։

Հյուսիս-արևելյան գոտում երկրագործությունը հիմնականում անջրդի է։ Համեմատաբար ջրով ապահովված է Ալավերդու շրջանը։ Այս հանգամանքը չի կարող չանդրադառնալ մշակվող հիմնական կուլտուրաների ընտրության և բերքատվության մակարդակի վրա։ Գոտու գյուղատնտեսությանը (հատկապես բուսաբուծությանը) մեծ վնաս են հասցնում հաճախակի կրկնվող կարկտահարությունները։ Այսպես, 1964 թ. պետությունը ծխախոտի տարածությունների կարկտահարման դիմաց գոտու կոլտնտեսություններին վճարել է 454835 ռուբլի, այդ թվում՝ Շամշադինի շրջանին՝ 271623 ռուբլի, 1965-ին՝ համապատասխանաբար՝ 405739 և 252601 ռուբլի։ Այժմ բնական աղետը կանխելու նպատակով կարկտաբեր ամպերի դեմ պայքար է մղվում, որը զգալի արդյունք է տալիս։

Հայկական ՍՍՀ հյուսիս-արևելյան գոտու կոլտնտեսություններում դրամական միջոցների մեջ գերակշռում է բուսաբուծությունից ստացված դրամա-

* Կազմված է կոլտնտեսությունների տարեկան հաշվետվությունների հիման վրա։



կան մուտքը, որը գոտու մասշտաբով կազմում է 63,4 տոկոս։ Այն հատկապես մեծ է Շամշադինի շրջանի կոլտնտեսություններում՝ (70,8 տոկոս)։ Ծխախոտը 100 տոկոսով ապրանքային է և դրամական մուտքերի մեջ մտնում է ամբողջությամբ, այսինքն՝ համախառն բերքի արժեքով, իսկ մնացած կուլտուրաները միայն ապրանքային արտադրանքի արժեքով։ Բուսաբուծությունից ստացված դրամական միջոցները հիմնականում գոյանում են ծխախոտի վաճառքից։

Այսպիսով, ծխախոտը հյուսիս-արևելյան գոտու կոլտնտեսությունների հիմնական ապրանքային կուլտուրան է, որից ստացվում է կոլտնտեսությունների դրամական միջոցների գերակշռող մասը։

Գոտու կոլտնտեսություններում ծխախոտը ցանքատարածություններում գրավելով փոքր տեսակարար կշիռ, տալիս է տնտեսություններում արտադրվող համախառն արտադրանքի արժեքի և դրամական միջոցների գերակշռող մասը։ Այսպես, կոլտնտեսություններում ծխախոտի պլանտացիաները կազմելով ցանքատարածությունների միայն 10,7 տոկոսը, տալիս են կոլտնտեսությունների համախառն արտադրանքի արժեքի 27,3 և դրամական միջոցների 45,7 տոկոսը։ Ցանքատարածություններում ծխախոտի տեսակարար կշիռը համեմատաբար մեծ է Իջևանի և Շամշադինի շրջանների կոլտնտեսություններում, այն կազմում է համապատասխանաբար 15,3 և 11,9 տոկոս. բուսաբուծության համախառն արտադրանքի արժեքի և դրամական միջոցների մեջ ծխախոտը Իջևանի շրջանում 68,9 և 84,4 տոկոս է, իսկ Շամշադինում՝ 60,5 և 73,1 տոկոս։

Չնայած գոտում մշակվող գյուղատնտեսական կուլտուրաներից ամենաաշխատատարը ծխախոտն է, սակայն դրանից շատ եկամուտ է ստացվում։ Բավական է նշել, որ կոլտնտեսություններում (ամբողջությամբ վերցրած) 1965 թ. մեկ հեկտար ծխախոտի մշակության համար ծախսվել է 688 մարդ-օր, կարտոֆիլինը՝ ընդամենը 171, խաղողինը՝ 321 մարդ-օր և այլն։ Բայց 1964—1966 թթ. ծխախոտի յուրաքանչյուր հեկտարի հաշվով տարեկան միջին հաշվով ստացվել է 1067 ռուբլի զուտ եկամուտ, կարտոֆիլից՝ 523, պտղից՝ 142, խաղողից՝ 141 ռուբլի։ Ծխախոտից ստացված եկամուտն անհամեմատ ավելի շատ է այն տնտեսություններում, ուր բարձր էր դրա բերքատվությունն ու որակը և ընդհակառակը։ Այսպես, եթե Ալավերդու շրջանի կոլտնտեսություններում ծխախոտի միջին բերքատվությունը վերջին երեք տարիներում կազմել է 8,7 ցենտներ (տարեկան միջինը), որի հետևանքով արդյունքը աննշան է եղել և առանձին տնտեսությունները նույնիսկ վնասով են փակել տարին։ Իսկ Շամշադինի շրջանում, որտեղ ծխախոտի բերքատվությունը բարձր է եղել (հեկտարից 30,4 ցենտներ), մեկ հեկտարի հաշվով ստացվել է 1474 ռուբլի զուտ եկամուտ։ Այստեղից հետևություն, որ ամեն մի տնտեսություն պետք է ձգտի լավ մշակել պլանտացիաները, բարձրացնել մեքենայացման մակարդակը, ապահովել առատ բերքի ստացումը։

Ընթացիկ հնգամյակում զգալի չափով կավելանա գոտու կոլտնտեսություններում արտադրվող ծխախոտի հումքը։ Չնայած 1966—1970 թթ. ծխախոտի պլանտացիաների տարածությունները չեն ընդարձակվելու, բայց հումքի համախառն արտադրանքը, 1964 թ. 30,9 հազար ցենտների դիմաց, 1970 թ. կկազմի 38,2 հազար ցենտներ, հեկտարի միջին բերքատվությունը 23,8-ից կհասնի 26,3 ցենտների։

Բերքատվության բարձրացման գործոններից մեկը ռոգման ցանցի ըն-

դարձակումն է։ Հնգամյակի ընթացքում կավելանան ինչպես բոլոր կուլտու-
րաների այնպես էլ ծխախոտի պլանտացիաների ջրովի տարածությունները։
Այսպես, եթե 1964 թ. գոտում ծխախոտագործությանը հատկացված ոռոգելի
տարածությունը կազմել է 571 հեկտար կամ մշակվող ծխախոտի ամբողջ տա-
րածության 39,3 տոկոսը, ապա 1970-ին այն կհասնի 1226 հեկտարի (84
տոկոսը)։ Ոռոգվող տարածությունները մեծ չափով կավելանան Նոյեմբերյա-
նի և Շամշադինի շրջաններում։

Ծխախոտագործության եկամտաբերության բարձրացման կարևոր գոր-
ծոններից մեկը հումքի որակի բարձրացումն է։ Որակի վրա ազդում են կի-
րառվող ագրոտեխնիկան և, մասնավորապես, չորացման պայմանները։ Ցա-
վոք, վերջին տարիներս ինչպես հանրապետությունում, այնպես էլ հյուսիս-
արևելյան գոտում ընկել է ծխախոտի հումքի որակը, որը մեծ վնաս է պատ-
ճառում ծխախոտագործությամբ զբաղվող տնտեսություններին և ծխախոտ
վերամշակող արդյունաբերությանը։ Որակի վատացման հիմնական պատճառ-
ներից են՝ միակողմանի, բարձր դոզաներով ազոտային պարարտանյութերով
պարարտացումը (որը տերևների մեջ ավելացնելով սպիտակուցները, իջեց-
նում է հումքի որակը), կրակային և արևային չորանոցների զգալի պակասը
և մշակության մեքենայացման ցածր աստիճանը։ Այժմ գոտու կոլտնտեսու-
թյուններում եղած չորանոցները կազմում են պահանջվող չորանոցների 50
տոկոսը և այն էլ գտնվում են անմխիթար վիճակում։

Ծխախոտի պլանտացիաների ոռոգման, ճիշտ պարարտացման, չորա-
նոցների պակասի լրացման, գլխավոր աշխատատար պրոցեսների մեքենա-
յացման և աշխատանքի ճիշտ կազմակերպման ու վարձատրման շնորհիվ
հնարավորություն կստեղծվի էլ ավելի բարձրացնել նրա բերքատվությունն ու
եկամտաբերությունը, երկրին տալ շատ և բարձրորակ հումք։

Գոտու կոլտնտեսությունների դրամական մուտքերի մեջ (ծխախոտից
հետո) զգալի տեսակարար կշիռ ունեն խաղողի վաճառքից ստացած դրամա-
կան միջոցները։ Դրանք համեմատաբար մեծ են Նոյեմբերյանի և Շամշադի-
նի շրջանների կոլտնտեսություններում (9,5 և 6,4 տոկոս)։ Հետագայում
խաղողագործության զարգացմամբ կմեծանա նաև դրա վաճառքից ստացված
դրամական միջոցների տեսակարար կշիռը։ Իսկ հետագա մասնագիտացմամբ,
մեծ չափով կավելանա նաև պտղի և կարտոֆիլի բերքը, հետևաբար և դրան-
ցից ստացված դրամական մուտքը։

Սովետական կառավարությունը հսկայական միջոցներ է ներդնում հան-
րապետության հյուսիս-արևելյան գոտու գյուղատնտեսության զարգացման
նպատակով։ Հարյուրավոր հեկտարներով ընդարձակվել են այգիների տարա-
ծությունները, կառուցվել ջրանցքներ ու ջրհան կայաններ, մեքենայացվել են
արտադրական շատ պրոցեսներ։ Տնտեսությունների ղեկավարներն ու կու-
սակցական կազմակերպությունները այդ բազայի հիման վրա պետք է ավելի
լավ կազմակերպեն աշխատանքը և համառ պայքար ծավալեն ինչպես ծխա-
խոտի, այնպես էլ գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքատվության
բարձրացման և դրանից ստացվող զուտ եկամտի ավելացման համար։

ՄԱՐԳԱՐՅԱՆ Լ. Ա.

---

# ԱՍՊԻՐԱՆՏՆԵՐԻ ՊԱՏՐԱՍՏՄԱՆ ԳՈՐԾԻ ՎԻՃԱԿԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

(Մի քանի նկատառումներ)

Այժմ, երբ մեր երկրում դրվում է կոմունիզմի նյութատեխնիկական բա-
զայի ամուր հիմքը, գնալով ավելի է մեծանում գիտության դերը, առավել
ընդլայնվում նրա կիրառման ոլորտը։ Անշուշտ, սրանով է բացատրվում այն
մեծ ուշադրությունը, որ կուսակցությունն ու կառավարությունը ցուցա-
բերում են գիտական ու գիտա-մանկավարժական կադրերի պատրաստման
նկատմամբ։

Կոմունիստական հասարակարգի կառուցման ծրագիրը նախատեսում է
բարձրագույն ուսումնական հաստատությունների զարգացման նոր, աննախա-
դեպ մասշտաբներ։ Ծրագրվում է առաջիկա տարիներին ժողովրդական տնտե-
սության բոլոր ճյուղերն ապահովել բարձրագույն կրթություն ունեցող որակ-
յալ մասնագետներով։ Սակայն այս հարցի լուծումը նախ թելադրում է պա-
հանջի համեմատ ապահովել դասատուների պատրաստման բարձր մակար-
դակը։

Մինչդեռ բարձրագույն դպրոցներին կից ասպիրանտուրան, որն առաջին
հերթին կոչված է այդ նպատակին ծառայելու, տակավին չի բավարարում
հանրապետության պահանջմունքները։ Բազմաթիվ ասպիրանտներ, ուսում-
նառության շրջանն ավարտելուց հետո մեծ մասամբ սահմանված ժամկետին
չեն ներկայացնում հանձնարարված դիսերտացիան կամ ներկայացնում են
գիտական ցածր մակարդակով, կենսական նշանակություն չունեցող աշխա-
տանքներ։ Նույնպիսին է վիճակը ո՛չ միայն գիտա-մանկավարժական, այլև
գիտական կադրերի պատրաստման գործում։ Երիտասարդ ու տարեց գիտա-
կան կադրերի դիսերտացիոն աշխատություններում հաճախ անտեսվում են
ժողովրդական տնտեսության անմիջական շահերը։

ՀԿԿ Սպանդարյան շրջկոմի պլենումում (1962 թ. փետրվարի 13-ին), ուր
քննարկվում էր «Գիտական ու գիտա-մանկավարժական կադրերի պատրաստ-
ման վիճակը շրջանի բարձրագույն ուսումնական հաստատություններում ու
գիտահետազոտական ինստիտուտներում» հրապարակվեցին մի շարք փաստեր,
որոնք արտացոլում էին գիտական աշխատանքների նեղ, գործնականությու-
նից ու պրոբլեմայնությունից զուրկ բնույթը։ Գաղտնիք չէ, որ հաճախ գիտա-
հետազոտական աշխատանքների ոլորտն են թափանցել անընդունակ և խոս-
տումնալի հակումներից զուրկ մարդիկ, որոնք, բնականաբար, չեն կարող փո-
խարինել մեր վաստակաշատ գիտնականներին։

Թերություններ կան նաև հանրապետության մի շարք ասպիրանտու-
րաներում։ Գիտական որոշ ղեկավարներ ինչպես հարկն է չեն աշխատում
իրենց ասպիրանտների հետ, չեն օգնում նրանց դիսերտացիոն թեմաների
ընտրության և մշակման գործում։ Անգամ գիտնականներից ոմանք խուսա-
փում են ասպիրանտներին հաղորդել իրենց գիտելիքներն ու փորձը։ Իսկ եթե
դրան ավելացնենք, որ որոշ ինստիտուտների առանձին ամբիոններ խիստ
անբավարար են օգնում ասպիրանտների մասնագիտական ուսուցմանը, ապա
միանգամայն պարզ կդառնա, որ լուրջ թերություններ կան գիտական և գի-
տա-մանկավարժական կադրերի պատրաստման բնագավառում։ Եվ ահա վատ
աշխատանքի պտուղները. 1959—1966 թթ. հանրապետության բարձրագույն
ուսումնական հաստատությունների ասպիրանտուրաներից տարբեր պատ-
ճառներով հեռացվել են 125 մարդ։
Դիմենք վիճակագրական տվյալներին. ֆիզիկո-մաթեմատիկական գի-
Դիմենք վիճակագրական տվյալներին. ֆիզիկո-մաթեմատիկական գի-
տությունների գծով մեր բուհերում աշխատում էին գիտությունների 4 դոկ-
տոր, 53 թեկնածու, քիմիական գիտությունների՝ համապատասխանաբար՝
8 և 25, բիոլոգիական՝ 4 և 19, տեխնիկական՝ 2 և 42, պատմական՝ 6 և 73,
բանասիրական՝ 9 և 97։
Այժմ տեսնենք, թե վեցամյա ընդմիջումից հետո ինչ փոփոխություններ
կան հիշյալ մարզերում։ 1967 թ. բուհերում աշխատող ֆիզիկո-մաթեմատի-
կական գիտությունների դոկտորների թիվը հասել է 5-ի, թեկնածուներինը՝
94-ի, քիմիական գիտությունների՝ համապատասխանաբար 6 և 29, բիոլո-
գիական՝ 5 և 53, տեխնիկական՝ 9 և 143, պատմական՝ 11 և 83, բանասիրա-
կան՝ 11 և 14։ Բերված թվերը ցույց են տալիս, որ դանդաղ է աճում գիտա-
մանկավարժական, հատկապես, ճշգրիտ գիտությունների կադրերի թիվը։
Եթե 1967 թ. պատմական գիտությունների դոկտորները կազմում էին այդ
մարզում մասնագիտացող ուսանողների ընդհանուր թվի 1,1 տոկոսը, ապա
տեխնիկական գիտությունների դոկտորներն ընդամենը կազմում են 0,07 տո-
կոսը[1]։ Ուստի, անհրաժեշտ է պահպանել գիտա-մանկավարժական կադրերի
և ուսանողների թվի նորմալ համամասնությունը։ Առանց դասախոսական
կադրերի պատշաճ աճի, հնարավոր չէ ապահովել ուսանողների յուրաց-
ման գոհացուցիչ մակարդակը։
Գիտական և գիտա-մանկավարժական կադրերի պատրաստման դարբնոցն
ասպիրանտուրան է, որտեղ ակնառու է քանակական աճը. 1959 թվականին
Հայկական ՍՍՀ-ում ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների ասպիրան-
տուրա են ընդունվել 26 հոգի, իսկ 1966 թվականին՝ 127։ Տեխնիկական գի-
տությունների գծով 1959 թ. 60 ասպիրանտների դիմաց, 1966 թ. ընդունվել
են 218-ը։ Բայց ահա ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների գծով
ասպիրանտուրան ավարտած 16 ասպիրանտներից թեկնածուական դիսերտա-
ցիա են պաշտպանել ընդամենը 4, 1966 թ. 25-ից՝ 5, տեխնիկական գիտու-
թյունների գծով՝ 1959 թ. ավարտած 26 ասպիրանտներից՝ 2 և 1966 թ. 51-ից՝
7 հոգի։ Մինչդեռ ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթու-
թյան մինիստրի 1962 թ. № 284 հրամանում որոշակի ասված է, որ եռամյա
ուսուցման ընթացքում ասպիրանտը պարտավոր է ո՛չ միայն հանձնել թեկնա-
ծուական քննությունները, այլև պաշտպանել, կամ գոնե պաշտպանության
ներկայացնել թեկնածուական դիսերտացիան։

[1] Տվյալները վերցված են Կենտրոնական վիճակագրական վարչության արխիվներից։



Ասպիրանտների պատրաստումը Հայկ. ՍՍՀ-ում։

| Տարեթիվը | Ասպիրան-տուրայի ըն-դունելու-թյան պլանը | Ընդունվել են | Ավարտել են | Պաշտպանել են | Տարբեր պատճառնե-րով դուրս են մնացել |
|---|---|---|---|---|---|
| 1959 | 73 | 72 | 25 | — | 7 |
| 1960 | 145 | 76 | 14 | — | 11 |
| 1961 | 254 | 132 | 25 | — | 6 |
| 1962 | 191 | 179 | 42 | 4 | 8 |
| 1963 | 181 | 159 | 49 | 6 | 29 |
| 1964 | 183 | 179 | 93 | 10 | 19 |
| 1965 | 157 | 170 | 123 | 11 | 13 |
| 1966 | 176 | 161 | 173 | 37 | 32 |
| Ընդհանուրը | 1360 | 1128 | 544 | 68 | 125 |

Այս աղյուսակի վերջին երկու սյունակներն են, որ պետք է մտահոգեն
գործի ղեկավարներին։ Հենց այստեղ է, որ պետք է կենտրոնանա մեր ամեն-
օրյա ուշադրությունը։ Գիտա-մանկավարժական կադրերի պատրաստման
գործում եղած թերությունները վերացնելու համար ամենից առաջ գիտահե-
տազոտական աշխատանքների պետք է ներգրավել առավել շնորհալի երիտա-
սարդների, արտադրության մեջ աշխատող և գիտահետազոտական աշխա-
տանքի հակում ունեցող մասնագետների։ Բուհական ամբիոններին իրավունք
է վերապահվում երաշխավորելու ուսանողական տարիներին աչքի ընկած
շնորհալի երիտասարդների մուտքը գիտության աշխարհը։ Մեծ տեղ է հատ-
կացվում արտադրությունից չկտրված ասպիրանտական ուսուցմանը, վերջին-
ներիս համար ապահովելով անհրաժեշտ պայմաններ։
Մենք հակված չենք թերագնահատելու այն իրողությունը, որ վերջին
տարիներում հանրապետության գիտական և գիտա-մանկավարժական կադ-
րերի պատրաստումը զգալիորեն բարելավվել է. բուհերում ավելացել է գի-
տական աստիճան ունեցող դասախոսների ընդհանուր թիվը։ Եթե 1959 թ.
բարձրագույն ուսումնական հաստատություններում աշխատող 1295 դասա-
խոսներից գիտության դոկտորներ էին 81-ը, թեկնածուներ 611-ը, ապա 1967
թ. 2782 դասախոսներից գիտության դոկտորներ էին արդեն 133-ը և թեկնա-
ծուներ՝ 983-ը։ Թեև աճում է գիտության դոկտորների ու թեկնածուների թիվը,
բայց չպետք է անտեսել չափազանց հատկանշական մի հանգամանք—առա-
վել արագ է աճում ուսանողների թիվը։ Ի դեպ, յուրաքանչյուր տասը հազար
բնակչին ընկնող ուսանողների թվով Հայաստանն աշխարհում գրավում է եր-
րորդ տեղը, զիջելով միայն ԱՄՆ-ին և ՌՍՖՍՀ-ին։ Եվ ահա, եթե 1959 թվա-
կանին հանրապետությունում 1000 ուսանողին ընկնում էր 4,2 գիտության
դոկտոր և 32 թեկնածու, ապա 1967 թվականին, համապատասխանաբար՝
2,7 և 20,3 ։
Այս միակողմանի աճը պետք է անհանգստացնի գիտական և գիտա-
մանկավարժական կադրեր պատրաստող հաստատություններին։
Արտադրության կազմակերպման գործում գնալով մեծանում է գիտու-
թյան դերը։ Ընդհանուր դիսցիպլիններից սահմանազատվում են գիտության
նորանոր ճյուղեր և բնագավառներ (կիսահաղորդիչներ, ռադիոէլեկտրոնիկա,
իմպուլսային և հաշվիչ տեխնիկա, ռադիոֆիզիկա, գենետիկա, սննդային.

քիմիական ու ճնշման մեքենաներ ու սարքեր, պլաստմասսաներ և այլն, որոնց համար անհրաժեշտ են համապատասխան մասնագետներ։ Լավ է, երբ 1959 թ. հանրապետության բուհական ասպիրանտուրայում սովորում էին 96 մարդ, իսկ 1967 թ. դրանց թիվը հասավ 602-ի։ Այժմ Երևանի պետական համալսարանի ասպիրանտուրայում սովորում են արտադրությունից կտրված 173 և արտադրությունից չկտրված 45 ասպիրանտներ, ինչպես նաև 250 ինքնուրույն ուսումնասիրողներ, ստաժոր-հետազոտողներ և այլն։ Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտում սովորում են 161, Խ. Աբովյանի անվան պետական հայկական մանկավարժական ինստիտուտում՝ 66, գյուղատնտեսականում՝40, բժշկականում՝ 44 ասպիրանտներ և այլն։

Ցավոք, տարիներ շարունակ պարբերաբար թերակատարվել են բուհերում նախատեսված ասպիրանտների ընդունման պլանները։

Մեր հանրապետության անվանի շատ գիտնականներ ասպիրանտուրայի միջոցով գնահատելի աշխատանք են կատարում գիտա-մանկավարժական կադրերի պատրաստման ուղղությամբ։ Հիշյալ բնագավառներում մեծ երախտիք ունեն Երևանի պետական համալսարանի ականավոր գիտնականներ՝ Վ. Ռշտունին, Մ. Մկրյանը, Գ. Սևակը, Էդ. Աղայանը, Դ. Բաբայանը, Արշ. Գաբրիելյանը, Հ. Գաբրիելյանը, Ջ. Բաշինջաղյանը, Հ. Թումանյանը, Հր. Թամրազյանը, Աշ. Աբրահամյանը, Հր. Բատիկյանը, Գ. Ջահուկյանը, Էդ. Ջրբաշյանը և ուրիշներ։ Ասպիրանտական ուսուցումն այն հիմնական եղանակն է, որով համալսարանը տարիներ շարունակ բարձրորակ գիտա-մանկավարժական կադրեր է պատրաստել ո՛չ միայն գիտության, այլև գիտա-ուսումնական հիմնարկությունների ու հաստատությունների համար։ Ակադեմիկոս Ա. Շահինյանի ասպիրանտներից շատերն (Մ. Ջրբաշյան, Ս. Մերգելյան, Ա. Թալալյան և շատ ուրիշներ) այժմ ԳԱ անդամներ են, պրոֆեսորներ, դոկտորներ և գիտության թեկնածուներ։ 1968 թ. հունվարի 26-ին Երևանի պետական համալսարանի կուսակցական կոմիտեում արձանագրվեց, որ Երևանի պետական համալսարանի ասպիրանտուրան իր լավագույն տրադիցիաներով հաջողությամբ շարունակում է իր օգտակար գործունեությունը։ Ո՞րն է այստեղ նորը։ Առանձին ամբիոններ (ժողովրդական տնտեսության պլանավորման, քաղաքատնտեսության, հայոց լեզվի, մեխ-մաթի, ֆիզիկայի, կենսաբանության և այլն) ապագա ասպիրանտի հետ աշխատանքներն սկսում են տակավին ուսանողական տարիներից։

Որպես դրական երևույթ պետք է նշել, որ Երևանի Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի ասպիրանտուրայի գրեթե բոլոր շրջանավարտներն աշխատում են իրենց մասնագիտությամբ՝ ինստիտուտում կամ գիտական այլ հաստատություններում։ Այստեղ ռեկտորատը և կուսակցական կազմակերպությունը ամեն ինչ անում են հստակ կազմակերպելու ասպիրանտուրայի բաժնի աշխատանքները։ Գիտա-մանկավարժական կադրերի պատրաստման գործում աչքի են ընկնում գիտա-մանկավարժական աշխատանքի դրական փորձ ունեցող դասախոսներ՝ Ա. Ղարիբյանը, Ս. Հակոբյանը, Ա. Աբրահամյանը, Վ. Պարտիզունին, Ա. Բաբայանը, Մ. Մազմանյանը և ուրիշներ։ Ինստիտուտում անց են կացվում ասպիրանտական գիտական կոնֆերանսներ, հրապարակվում են ասպիրանտների այդ կոնֆերանսներում կարդացած ռեֆերատների ժողովածուները և այլն։

Վ. Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների մանկավարժական ինստիտուտի ասպիրանտուրան ստեղծվել է 1963 թվականին։ Ասպիրանտների



պատրաստման վիճակն այստեղ լավ է փիլիսոփայության և կուսպատմության ամբիոններում, ուր ժամանակին ընտրվում են ղեկավարները, հաստատվում դիսերտացիաների թեմաները։ Ինստիտուտում լավ հիմքերի վրա են դրված ասպիրանտների մանկավարժական պրակտիկայի, գիտական գործուղումների կազմակերպումը, ատեստացիայի անցկացումը։

Ասպիրանտուրայի միջոցով գիտական և գիտա-մանկավարժական կադրերի պատրաստման գործը բավարար վիճակում է՝ գյուղատնտեսական և բժշկական ինստիտուտներում։ Բայց և այնպես, առ այսօր հանրապետությունը կարիք ունի գիտության նոր դիսցիպլինների դասախոսների ու հետազոտողների, որոնք տակավին պատրաստվում են Միության այլ քաղաքներում։

Կուսակցությունն ու կառավարությունը անդուլ հոգում են գիտական և գիտա-մանկավարժական կադրերի պատրաստման մասին։ Վերջերս էր (1967 թ. նոյեմբերի 16-ին), որ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը որոշում կայացրին «Գիտական և գիտա-մանկավարժական կադրերի պատրաստման բարելավման մասին». քննարկելով հիշյալ գործի դրվածքը մեր երկրում, բացահայտվեցին թերությունները, սահմանվեցին դիրեկտիվներ՝ դրանց վերացման համար։ 1968 թ. փետրվարի 23-ին այդ ոգով որոշում ընդունեց ՀԿԿ Երևանի քաղաքային կոմիտեի բյուրոն՝ Երևանի բուհերի ասպիրանտուրաների վիճակի ու անելիքների վերաբերյալ։ Ցավալի է, որ Երևանի բուհերում 1966 թ. ասպիրանտական ընդունելության պլանը կատարվել է միայն 76 տոկոսով։ Եվ այստեղ պակաս դեր չունեն կազմակերպչական աշխատանքներում եղած թերությունները։ Բուհական որոշ կուսակցական կազմակերպություններ, ռեկտորատներ, ամբիոններ, դեկանատներ, պատշաճ աշխատանք չեն ծավալում երիտասարդ մասնագետներին ասպիրանտուրայում ընդգրկելու ուղղությամբ։ Այդ պատճառով էլ թույլանում է հետաքրքրությունը, կոնկուրսային մեկ տեղի համար շատ քիչ դիմումներ են ստացվում։

Ակնհայտ թերություններ կան նաև ասպիրանտուրայի ընդունելության պլանավորման գործում։ Ոչ միշտ են հաշվի առնվում իրական պահանջները, գիտական կադրերի պատրաստման գործը չի բխում կյանքից։ Օրինակ, տարիներ շարունակ Երևանի պետական համալսարանի որոշ ամբիոններում (հաշվապահական հաշվառում, արտասահմանյան լեզուներ, կենդանաբանություն և այլն) ասպիրանտներ չեն ընդունում, թեև դրանց անհրաժեշտությունը խիստ զգացվում է։ Մինչդեռ բույսերի ֆիզիոլոգիայի ամբիոնը, պահանջ չներկայացնելով հանդերձ, ստանում է ասպիրանտական տեղ։ Իսկ ասպիրանտուրա ընդունվելուց, ավարտելուց հետո՞... 1966 թ. շրջանավարտներից դիսերտացիա են պաշտպանել ընդամենը 16 հոգի, որը կազմում է պլանավորված թվի 11 տոկոսը միայն, պոլիտեխնիկական ինստիտուտում 1962 թ. շրջանավարտներից մինչև այժմ պաշտպանել է ընդամենը 34 տոկոսը և այլն։

Պակաս պահանջկոտության ու հսկողության հետևանքով ասպիրանտների մի մասը ժամանակին չի հանձնում թեկնածուական մինիմումները։ Շատ ասպիրանտներ թեկնածուական մինիմումներից, նույնիսկ մասնագիտությունից, ստանում են ցածր գնահատական։ Ցածր է առաջադիմությունը, մասնավորապես հումանիտար գիտությունների մարզում։ Գյուղատնտեսական ինստիտուտում 32 ասպիրանտներից փիլիսոփայությունից «բավարար» գնահատական են ստացել 10-ը, անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտում՝ 29-ից 11-ը։

Ասպիրանտների հաջող պատրաստման երաշխիքներից մեկը, մանավանդ ճշգրիտ գիտությունների բնագավառում, ուսումնա-փորձնական լավագույն բազայի առկայությունն է, մինչդեռ մեխանիկական սարքավորումները, լաբորատոր և այլ հարմարություններ չեն համապատասխանում ժամանակակից գիտական մակարդակին: Այդպիսի վիճակն ակնբախ է հատկապես պոլիտեխնիկական ինստիտուտի էլեկտրական մեքենաների և էլեկտրական ապարատների, նյութերի դիմադրության, ֆիզիկայի, ինչպես և անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտի միկրոբիոլոգիայի, մեխանիզացիայի, գենետիկայի, ֆարմակոլոգիայի և այլ ամբիոններում, որտեղ ասպիրանտները զուրկ են փորձեր կատարելու հնարավորությունից: Հասկանալի է, որ այս պայմաններում անհնար է գիտական արդյունավետ գործունեություն ակնկալել:

Հաճախ ասպիրանտները հնարավորություն չեն ունենում ժամանակին դիսերտացիա պաշտպանել միայն այն պատճառով, որ սահմանված քանակությամբ հրապարակված աշխատություններ չունեն. ասպիրանտները ամիսներ շարունակ շրջում են ամսագրերի խմբագրությունները և խնդրում տպագրել իրենց հոդվածները: Իսկ ամսագրերը, միշտ չէ, որ կարող են նրանց ընդառաջել:

Այդպիսի աննորմալ վիճակին վերջ տալու և ասպիրանտներին օգնելու նպատակով, մեր կարծիքով, անհրաժեշտ է հրատարակել մի առանձին, ասենք՝ «Երիտասարդ գիտական աշխատող» ամսագիր, ուր պարբերաբար պետք է տպագրել ասպիրանտների հաջողված ուսումնասիրությունները:

Գիտական կադրերի պատրաստման գործում կարևոր դեր ունեն նաև ուսանողական գիտական ընկերությունները: Դրանք այն առաջին օջախներն են, որտեղ գիտահետազոտական աշխատանքի առաջին քայլերն է անում ապագա գիտնականը, որոնումների դժվարին ճանապարհով ձեռք բերում գիտաշխատողի ունակություններ: Ահա թե ինչու շատ բան է կախված ուսանողական գիտական ընկերությունների գործունեության խելացի կազմակերպումից: Ականավոր գիտնականների ակտիվ մասնակցությունն այս գործին մեծ օգուտ կտա:

Վերը նշված թերությունների վերացման, դրական փորձի տարածման և հետագա զարգացման միջոցով միայն հնարավոր կլինի մեր դպրոցներն ու բարձրագույն ուսումնական հաստատություններն ապահովել որակյալ գիտական և գիտա-մանկավարժական կադրերով, ապահովել մեր գիտության ու առաջավոր տեխնիկայի հետագա զարգացումը:

ԲԵՅԲՈՒԹՅԱՆ ԱՍՊ. Ս.

---

## ՀԱՆՈՒՆ ԿՈՒՍՇԱՐՔԵՐԻ ԱՆԱՂԱՐՏՈՒԹՅԱՆ

Այժմ, կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում, կուսակցությունն ավելի է հետևում իր շարքերի միասնությանն ու անաղարտությանը և մեծ պահանջներ ներկայացնում իր անդամներին: Կուսակցության շարքերի անաղարտության նկատմամբ հոգատարությամբ են տոգորված ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները: Այդ համագումարը, ինչպես հայտնի է, ՍՄԿԿ կանոնադրության մեջ մտցրեց մի քանի փոփոխություններ, որոնք գլխավորապես ուղղված են կուսակցության անդամի կոչման բարձրացմանը, ներկուսակցական դեմոկրատիայի ընդլայնմանը, կուսակցական կազմակերպությունների նախաձեռնության և ակտիվության հետագա զարգացմանը, կոմունիստների պատասխանատվության բարձրացմանը՝ իրենց կազմակերպության և ամբողջ կուսակցության գործունեության համար:

ՍՄԿԿ կանոնադրությամբ սահմանված է նոր կարգ. կուսակցությունից հեռացնելու մասին սկզբնական կուսկազմակերպության որոշումը ուժի մեջ է մտնում կուսշրջկոմի, քաղկոմի հաստատելուց հետո. շրջկոմի, քաղկոմի որոշումը վերջնական է համարվում ճիշտ այնպես, ինչպես որ վերջնական է համարվում նրանց որոշումը կուսակցության մեջ ընդունելության վերաբերյալ: Դա, իհարկե, չի սահմանափակում կոմունիստների իրավունքները՝ առաջվա պես բողոքարկելու կուսակցության վերադաս օրգաններին՝ ընդհուպ մինչև ՍՄԿԿ Կենտկոմ:

Կոմունիստների դաստիարակության ուժեղացման և կուսակցական կարգապահության ամրապնդման նպատակով, ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ 1967 թ. սեպտեմբերի 1-ից ստեղծվեց որոշ շրջկոմների կուսհանձնաժողովների նախագահի հաստիքային պաշտոն:

Այդ միջոցառումն իր դրական արդյունքն է տալիս, որի մասին այժմ կարելի է ասել որոշ բան: Աշտարակի շրջկոմի կուսհանձնաժողովն անցած երկու տարում զգալի աշխատանք է կատարել կուսակցական կարգապահության ամրապնդման գործում կուսկազմակերպություններին գործնական օգնություն ցույց տալու ուղղությամբ: Մենք ելնում ենք այն հանրահայտ ճշմարտությունից, որ կուսակցության շարքերի մաքրությունն ու անաղարտությունը յուրաքանչյուր կազմակերպության հոգսերի հոգսն է, կուսակցական կյանքի օրենքը, որի ճիշտ կենսագործումով էլ պայմանավորվում է տվյալ կազմակերպության գործերի ընդհանուր վիճակը:

Ելնելով դրանից, շրջանի գրեթե բոլոր սկզբնական կուսկազմակերպությունները կոնկրետ աշխատանք են տանում կուսակցական կարգապահության

ամրապնդման, կուսակցության շարքերի անաղարտության ապահովման ուղղությամբ։ Կանոնադրական պարտականությունները չկատարող և այլ զանցանքներ թույլ տվող կոմունիստները ենթարկվում են կուսակցական պատասխանատվության, նրանց նկատմամբ կիրառվում է կանոնադրությամբ նախատեսված այս կամ այն տույժը։ Իսկ կուսակցությունից վտարելը՝ որպես խստագույն միջոց, կիրառվում է այն դեպքում, երբ կոմունիստն այլևս արժանի չէ մնալու կուսակցության մեջ։ Կոմունիստների անձնական գործը քննարկելիս նկատի է առնվում, որ կուսակցական տույժն ընդհանրապես դաստիարակչական միջոց է, մի բան, որը շատ անհրաժեշտ է պատժի չափը սահմանելու համար։

Փարպի գյուղի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության անդամներ Պ. Առաքելյանը և Ա. Զաքարյանը գրեթե սիստեմատիկաբար խախտում էին կուսակցական կարգապահությունը. ժամանակին չէին մուծում անդամավճար, անհարգելի պատճառով բացակայում էին ժողովներից, կանոնավոր չէին մասնակցում քաղուսուցման խմբակների պարապմունքներին և այլն։ Այդ ամենը բացասաբար էր անդրադառնում մի շարք երիտասարդ կոմունիստների դաստիարակության վրա. նրանք սկսել էին անդամավճարներ մուծել երկու ամիսը մեկ, ուշանալ ժողովներից, կամ բոլորովին չներկայանալ...

Այդպես հանդուրժել չէր կարելի։ Շուտով կուսշրջկոմը զբաղվեց Փարպիի կոլտնտեսային կուսկազմակերպության գործերով և մանրամասնորեն ստուգեց կարգապահության հարցը։ Ստուգման արդյունքները դրվեցին կոմունիստների ընդհանուր ժողովի քննարկմանը։ Միաձայն որոշվեց՝ Պ. Առաքելյանին և Ա. Զաքարյանին, որպես ծայրահեղ անկարգապահների, անել խիստ նկատողություն՝ հաշվառման քարտի մեջ գրանցմամբ։ Շրջկոմի բյուրոն հաստատեց այդ որոշումը։ Միջոցառումը դրական արդյունք տվեց. Պ. Առաքելյանը և Ա. Զաքարյանը խորապես գիտակցեցին իրենց սխալը և այժմ, արտադրության մեջ լավ աշխատելուն զուգընթաց, բարեխղճորեն են կատարում կուսկազմակերպության հանձնարարությունները, ջանալով արժանապատվությամբ կրել կոմունիստի բարձր կոչումը։

Հարկ կա նշել նաև, որ այժմ Փարպիի կոլտնտեսային կուսկազմակերպությունում ժողովները հրավիրվում են կանոնավոր, լավ են նախապատրաստվում և անցնում բարձր մակարդակով։ Այստեղ կոմունիստները բարեխղճորեն են վերաբերվում իրենց պարտականությունների կատարմանը, ժամանակին ներկայանում ժողովներին և քաղխմբակների պարապմունքներին, որոնք անցնում են կանոնավոր և գաղափարական բարձր մակարդակով։ Շատ կոմունիստներ իրենց անբասիր վարքով և ժրաջան աշխատանքով օրինակ են ծառայում բոլոր կոլտնտեսականներին։

Պատահում է, որ այս կամ այն կոմունիստը թույլ է տալիս լուրջ զանցանք և վարկաբեկում կուսակցության անդամի բարձր կոչումը։ Պարզ է, որ նման մարդն արժանի չէ մնալու կուսակցության շարքերում։ Կուսանդամ Հ. Ղազարյանը (Աշտարակի սովխոզ) առանց կուսկազմակերպության թույլտվության մեկնել էր հանրապետությունից դուրս և, ինչպես պարզվել էր հետագայում, այնտեղ զբաղվել գինու առևտրով։ Անձնական գործի քննարկման ժամանակ բոլոր կոմունիստները դատապարտեցին Հ. Ղազարյանի վատ արարքը և որոշեցին նրան վտարել ՍՄԿԿ շարքերից։ Դա շատ ճիշտ որոշում էր։

Բնավ էլ պարտադիր չէ ամեն զանցանքի համար կոմունիստին հեռացնել կուսակցությունից կամ խիստ տույժի ենթարկել, բայց պարտադիր է, որ-



պեսզի կանոնադրական պահանջների խախտման յուրաքանչյուր դեպք արժանանա սկզբնական կուսակցական կազմակերպության ուշադրությանը, որպեսզի կոմունիստը, լսելով իր ընկերների քննադատական խոսքը, գիտակցի սեփական սխալը։ Պարտադիր է, որպեսզի անձնական ամեն մի գործ քննարկվի օբյեկտիվորեն ու սկզբունքայնությամբ։ Դա հնարավորություն կտա ճիշտ որոշել տվյալ կոմունիստի բախտը։

Աշտարակի № 4 շինվարչության սկզբնական կուսակցական կազմակերպության անդամ Վ. Հովակիմյանը նույնպես առանց կազմակերպության թույլտվության 10 ամսով մեկնել էր հանրապետությունից և զբաղվել մասնավոր գործարքներով։ Հարցի քննարկման ժամանակ նա հանձն առավ և դատապարտեց սեփական սխալը։ Երևույթն աններելի էր, ժողովականների վրդովմունքը տեղին, բայց որտեղ էր այն երաշխիքը, որ այդքան կոպիտ խախտում թույլ տված մարդը կարող է ուղղվել և դառնալ կարգապահ կոմունիստ։ Այդպիսի երաշխիք չկար, ուստի Վ. Հովակիմյանի խնդրանքը մերժվեց և նա հեռացվեց կուսակցությունից։ Շրջկոմի բյուրոն հաստատեց կուսկազմակերպության ժողովի այդ որոշումը։

Բայց, ցավոք, շրջանի ոչ բոլոր կազմակերպություններում են սկզբունքային, անաչառ վերաբերմունք ցույց տալիս կուսակցական կարգապահության խախտողների նկատմամբ։ Անբավարար հոգատարությունը կուսակցության շարքերի մաքրության համար արտահայտվում է անկարգապահների նկատմամբ մի շարք կոմունիստների, իսկ երբեմն և առանձին կուսկազմակերպության կողմից ցուցաբերվող լիբերալ և, ընդհանրապես, ոչ լուրջ մոտեցման մեջ։ Հաճախ այս կամ այն կոմունիստին ներկայացվող մեղադրանքը մանրակրկիտ չի ստուգվում, կամ ստուգվում է հապճեպորեն. մեղադրվողից նախապես գրավոր բացատրություն չի վերցվում և ստացվում է այնպես, որ նա հետագայում հրաժարվում է իր սխալն ընդունելուց, իսկ բուն ժողովի ընթացքում հնարավոր չէ ապացուցել փաստերը։ Այդպիսի դեպքերում, երբեմն կազմակերպությունը հարկադրված ընդունում է մեղմ որոշում, իջեցնում պատժի չափը և այլն։

Անձնական գործերի քննարկման ժամանակ նման լիբերալ մոտեցումը բացասաբար է ազդում կուսակցական պահանջկոտության վրա, նսեմացնում կոմունիստի բարձր կոչումը, գցում կուսկազմակերպության և նրա որոշումների հեղինակությունը։

Լինում են նաև այնպիսի դեպքեր, երբ զանցանքի հանգամանքները խոր ուսումնասիրելուց և փաստերը հաստատելուց հետո էլ կուսկազմակերպությունը արժանի գնահատական չի տալիս կատարված հանցանքին, ընդունում է լիբերալ որոշում։ Իհարկե, կուսանդամ-թեկնածուների դաստիարակության հարցում նման լիբերալ վերաբերմունքի փաստերը մենք միշտ դատապարտում ենք, բայց չէ որ այստեղ, միաժամանակ, շոշափվում է սկզբնական կուսակցական կազմակերպության հեղինակությունը, որի մասին մենք բոլորս պետք է հոգանք։ Որքա՞ն կբարձրանա սկզբնական կուսկազմակերպությունների դաստիարակչական դերը, եթե նրանք նման հարցերը միշտ ճիշտ լուծեն։

Շրջանում կան նաև առանձին կազմակերպություններ, որոնք մոռացության մատնելով կուսակցության կազմի բարելավման, նրա շարքերի մաքրության պահպանման վերաբերյալ պահանջները, երբեմն կուսակցության մեջ են ընդունում քիչ արժանիքներ ունեցող կամ բոլորովին անարժան մարդկանց։

Կենցաղ-սպասարկման կոմբինատի աշխատակից Ժ. Թորոսյանը ՍՄԿԿ

անդամության թեկնածու եղած ժամանակամիջոցում իրեն չէր արդարացրել, կտրված էր կուսկազմակերպության կյանքից և, չնայած այս ամենին, սկզբնական կուսկազմակերպությունը նրան ընդունել էր ՍՄԿԿ անդամ և գործը ներկայացրել շրջկոմ։ Ծանոթանալով հարցին, շրջկոմի բյուրոն մերժեց Ժ. Թոռոսյանին ՍՄԿԿ անդամ ընդունելու վերաբերյալ կազմակերպության որոշումը։

Աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր պատշաճ բարձրության վրա է կոմունիստների դաստիարակության գործը, որտեղ շարքային կոմունիստների բախտով հետաքրքրվում և զբաղվում է ամբողջ կազմակերպությունը, այնտեղ տիրում է գիտակցական բարձր կարգապահություն։ Բայց այդպես չէ բոլոր սկզբնական կուսկազմակերպություններում։

Արագյուղի կոլտնտեսության սկզբնական կուսակցական կազմակերպության անդամ Ս. Ղուկասյանը 1961 թվականից ունի կուսակցական նկատողություն, որը գրանցված է հաշվառման քարտում։ Այդ նկատողությունը դեռ չհանած, Ս. Ղուկասյանը աշխատանքում (անասնաբուժական կետի վարիչի պաշտոնում) թույլ է տալիս պետական միջոցների շռայլում։ Հիմնարկից դուրս գրված գումարը փոխանակ ծախսելու իր տնօրինության տակ գտնվող ձիու համար կեր գնելու, նա ծախսել էր իր անձնական կարիքների համար, իսկ ձին կերակրել կոլտնտեսությունների կերով։ Դրա համար էլ նրա հարցը քննվում է ժողովրդական վերահսկողության շրջանային կոմիտեում։ Այդքանից հետո Ս. Ղուկասյանը դիմում է սկզբնական կուսկազմակերպությանը, խնդրելով հանել 1961 թվականին իր ստացած կուսակցական տույժը։ Կուսկազմակերպության քարտուղար Դ. Մնացականյանը փոխանակ կոմունիստին ասելու, որ դա հնարավոր չէ, որ նա հին սխալն ուղղելու փոխարեն թույլ է տվել նոր սխալ, երկմտորեն պատասխանում է. «Եթե ձեր տնտեսական ղեկավարից դրական բնութագիր բերեք՝ կարելի է»։

Մեզ թվում է, որ նման կեղծ ընկերասիրությունն ու խնամակալությունը աշխատանքի լենինյան ոճի հետ ընդհանուր ոչինչ չունեն, որ նման լիբերալ վերաբերմունքը հակասում է կուսակցական սկզբունքայնությանը և վնասում մարդկանց դաստիարակության կարևոր գործին։

Կոմունիստների քաղաքական-գաղափարական դաստիարակության հարցերով կոչված են զբաղվելու, ամենից առաջ, սկզբնական կուսկազմակերպությունների ղեկավարները՝ քարտուղարը, բյուրոն։ Ուստի նրանք իրենց պարտականությունների կատարմանը պետք է մոտենան ավելի սկզբունքային և անկեղծ դիրքերից։ Այնտեղ, որտեղ պահանջվում է, մարդկանց թերությունները պետք է ասել նրանց երեսին։

ՍՄԿԿ XXIII համագումարի բանաձևում ասված է. «Հզգաստությունը կուսակցական շարքերի մաքրության մասին, այն մասին, որ յուրաքանչյուր կոմունիստ արժանապատվությամբ կրի և արդարացնի լենինյան կուսակցության անդամի կոչումը, կուսակցության, բոլոր կուսակցական կազմակերպությունների կյանքի օրենքն է...»։ Այդ կարևոր պահանջի անշեղ կատարումը բոլոր կուսաշխատողների և յուրաքանչյուր կոմունիստի սրբազան պարտքն է։

ՄԵԼԻՔՅԱՆ Շ. Ս.,
ՀԿԿ Աշտարակի շրջկոմի կուսակցական
հանձնաժողովի նախագահ

# ՆԱ ՄԱՐՏՆՉԵԼ Է ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԱՄԱՐ

Հայրենականի այս հերոսի հետ առաջին անգամ հանդիպեցի անցյալ աշնանը, աշխատանքի վայրում. զինկոմիսարիատում ասել էին, որ պահեստի ավագ սերժանտ Խ. Հ. Մելիքսեթյանն աշխատում է ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի ֆիզիկայի ինստիտուտում։

Արդեն քառասունյոթ տարեկան է Խաչիկ Մելիքսեթյանը, մազերն սկսել են արծաթել, ճակատին կնճիռներ կան, բայց նրա հաստատուն քայլվածքը հիշեցնում է սովետական գվարդիայի երբեմնի սերժանտին, որը մարտի դաշտում կատարել է բազմաթիվ սխրանքներ։ Հայրենիքի ճակատագիրն էր ստիպել նրան մարտնչել։ Իրականում նա մեղմ բնավորությամբ, խաղաղ աշխատանքի մարդ է։

1946 թ. մայիսին վերադառնալով բանակից, Խաչիկը ձեռնամուխ եղավ իր սիրած արհեստին՝ հյուսնությանը։ Շուրջ տասնվեց տարի աշխատեց Երևանի զանազան շինարարական կազմակերպություններում, մասնակցեց հարազատ քաղաքի շինարարությանը։ 1962 թվականից նա աշխատում է ֆիզիկայի ինստիտուտի նորոգման խմբում՝ նորից հյուսն։ Այստեղ էլ Խաչիկին ճանաչում են որպես լավագույն վարպետ, համեստ մարդու։

Լավ աշխատանքի համար նա մեկ անգամ պարգևատրվել է ՀՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրով և երկու անգամ՝ հիմնարկության ադմինիստրացիայի, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների պատվոգրով, բազմիցս արժանացել է նյութական և բարոյական այլ խրախուսանքների։ Կարելի է, իհարկե, հանգամանորեն խոսել Խ. Մելիքսեթյանի աշխատանքի մասին, բայց այս անգամ մեր նպատակն է թերթել նրա կենսագրության՝ պատերազմական տարիների էջերը։

...1940 թ. սեպտեմբերին նորակոչիկ Խ. Հ. Մելիքսեթյանը հասավ լիտվական Մարիամպոլե (այժմ Կապսուկաս) քաղաքը և զինվորագրվեց 92-րդ հաուբիցային հրետանու գնդում։ Ապարանի շրջանի Սաչլու գյուղում ծնված և Երևանում մեծացած քսանամյա երիտասարդի կյանքում սկսվեց նոր շրջան։

Կարճ ժամանակում նա աճեց, դարձավ մարտական և քաղաքական ուսուցման գերազանցիկ։

Ութ-ինն ամիս հետո Խ. Մելիքսեթյանին մի խումբ համագնդեցիների հետ միասին Մարիամպոլից տեղափոխեցին Վիլկավիշկիս քաղաքը, որն ավելի էր մոտ ֆաշիստական Գերմանիայի կողմից օկուպացված Լեհաստանի սահմանին։ Այստեղ նա ծառայեց ամրացված շրջանի գնդացրային-հրետանային առանձին գումարտակում, հնարավորություն ունեցավ ուսումնասիրելու

«Մաքսիմ»-կան, դառնալ նաև գնդացրորդ։ Վիլկավիշկիս փոխադրվելուց մի քանի ամիս անց սկսեց մեծ Հայրենականը... Ամրացված շրջանի զորամասերի ռազմիկներն այդ նույն վայրում ծանր մարտեր մղեցին սովետական հողը ներխուժած ֆաշիստական հորդաների դեմ։

Մինչև ատամները զինված հիտլերականները պատերազմի առաջին օրը բազմաթիվ կատաղի փորձեր արին սովետական սահմանն իսկույն անցնելու, բայց հանդիպելով գնդացրորդ Խ. Մելիքսեթյանի, նրա մարտական ընկերներ Սմիրնովի, Սուդեցի, Ղևոնդ Ավետիսյանի, Խաչիկ Ավետիսյանի և Վահան Սարգսյանի (որն այժմ աշխատում է ռադիոկոմիտեում) և ուրիշների մահացու կրակին, մեխվեցին գետնին։ Ռազմիկների այդ փոքրիկ ջոկատը, անհավասար մարտերում մինչև կեսօր պահեց գրաված դիրքերը և, միայն ստացված նոր առաջադրանքի համաձայն, ետ քաշվեց ու շարժվեց Ալիտուս և Կովնաս քաղաքների ուղղությամբ։ Դա շարքային Խ. Մելիքսեթյանի առաջին մարտական քննությունն էր։

Խ. Մելիքսեթյանի ռազմաճակատային կյանքի տարեգրության մեջ արձանագրված են բազմաթիվ, մեկը-մյուսին գերազանցող մարտական էպիզոդներ և անձնական սխրագործություններ։ Նա ճաշակել է հարկադրական նահանջի դառնություններ ու պաշտպանական մարտերի ծանրությունը և, այնուհետև, հարձակողական մարտերի բոցերի միջով, արհամարհելով մահը, հասել հաղթանակի։

Ռազմաճակատային կյանքի ամենածանր ապրումները Խ. Մելիքսեթյանն ունեցել է 1941 թ. սեպտեմբերին, Ռժև քաղաքի մոտ, երբ նորից հրետանային գնդում աշխատում էր իր մասնագիտությամբ։ Դա այն ժամանակ էր, երբ հիտլերականները, արբած ֆյուրերի «կայծակնային» պատերազմի խելակորույս պլանով, մոլեգնաբար ձգտում էին դեպի Մոսկվա... Իսկ սովետական զորքերը պաշտպանական համառ մարտեր էին մղում, ծանր կորուստներ պատճառելով թշնամուն։ Հետախույզ-դիտորդ Խ. Մելիքսեթյանը հետևակի մարտակարգերի առջևի բարձունքից հեռադիտակով հետազոտում է հակառակորդի դիրքերը, հետևում նրա «վարքին» և նկատածի մասին հեռախոսավար-կապավորի միջոցով անհապաղ հաղորդում գնդի հրամանատարին։ Ինչ իմանային հիտլերականները, որ սովետական հրետանավորները դիպուկ արկեր էին ուղարկում դիմացի բարձունքի ծառին քողարկված Խ. Մելիքսեթյանի «պատվերներով»։

Շուտով հիտլերականները անցնելով գրոհի, գրավեցին բարձունքը, որտեղ պատսպարված էր հրետանային խիզախ հետախույզը... Եվ Խ. Մելիքսեթյանին ոչինչ չէր մնում անելու, քան ձեռքի նռնակները նետել ֆաշիստական ավտոմատավորների վրա։ Տասից ավելի հիտլերականներ սպանվեցին և ծանր վիրավորվեցին։ Մեկն, այնուամենայնիվ, ավտոմատային կրակով «սանրեց» ծառը և ծանր վիրավորեց Խ. Մելիքսեթյանին։ Եթե սովետական հետևակը այդ պահին չանցներ հակագրոհի, ետ չմղեր թշնամուն, գուցե հենց այդտեղ էլ խզվեր Խաչիկի կյանքի թելը։ Վիրավոր Խ. Մելիքսեթյանը փոխադրվեց Կալինինի հոսպիտալ, իսկ այնտեղից էլ՝ Սվերդլովսկ։ Ապաքինվելուց հետո նա որոշ ժամանակ եղավ 38-րդ հրետանու պահեստային գնդում, որը գտնվում էր Պերմ քաղաքից 30 կիլոմետր հեռավորության վրա։

...Պահեստային գնդից Խ. Մելիքսեթյանն ուղարկվեց Կենտրոնական ռազմաճակատ, 80-րդ հրետանային գունդ՝ որպես հրանոթի նշանառու։ Որոշ ժամանակ անց (զորամիավորումների վերակառուցման կապակցությամբ) նա



փոխադրվեց 138-րդ հրետանային կարմրադրոշ գունդը՝ դարձյալ հրանոթի նշանառուի պաշտոնով։

Այդ գնդի կազմում Խ. Մելիքսեթյանը երկար ժամանակ եղավ Ստալինգրադի ռազմաճակատում, կատարեց բազմաթիվ սխրանքներ և արժանացավ մարտական պարգևների։ Սերաֆիմովիչի բնակավայրի մոտ դիպուկ կրակով հակառակորդի 2 տանկը ոչնչացնելու և գրոհը կասեցնելու համար նա պարգևատրվեց «Արիության համար» մեդալով։ Դա առաջին մարտական պարգևն էր։ Որոշ ժամանակ անց, ռազմաճակատի գրեթե նույն տեղամասում հրետանավոր Խ. Մելիքսեթյանը իր հրետանային անձնակազմի հետ կատարեց նոր սխրանք. ոչնչացրեց ֆաշիստական 2 տանկ և 2 ինքնագնաց հրանոթ և դրանով կարողացավ ետ մղել թշնամու կատաղի գրոհը։ Այս անգամ Խ. Մելիքսեթյանի կուրծքը զարդարեց «Փառքի 3-րդ աստիճանի շքանշանը»։

1942 թ. նոյեմբերի վերջին օրերն են։ 138 հրետանային գունդը գործում է Կոզաչի Կուրգանի շրջանում։ Այստեղ հրանոթի նշանառու Խ. Մելիքսեթյանը դիմում է տալիս կուսակցության անդամ ընդունվելու։ Մարտկոցի կոմունիստների ժողովը և, ապա, գնդի կուսբյուրոն նրան միաձայն ընդունում են ՍՄԿԿ անդամ։ Իսկ երկու օր անց Կալաչում զորամիավորման քաղբաժնի պետը Խ. Մելիքսեթյանին հանձնում է կուստոմսը, սեղմում նրա ձեռքը և մարտական նոր հաջողություններ ցանկանում։

Սովետական բանակի կողմից ֆաշիստական զորքերի Ստալինգրադյան խոշոր խմբավորման շրջապատումն ավարտելուց հետո, թշնամին էլ ավելի կատաղեց։ Հիտլերյան հրամանատարությունը տանկային նոր զորամասեր էր նետում ռազմաճակատի այս հատվածը, որպեսզի, ինչ գնով էլ լինի, ճեղքի սովետական զորքերի պաշտպանական գիծը և օգնության հասնեն թակարդի մեջ ընկած ֆելդմարշալ Պաուլյուսի բանակին։

Բայց, ինչպես ցույց տվեց գործերի ընթացքը, Հիտլերի այդ ավանտյուրայից ևս բան դուրս չեկավ։ Սովետական բանակն անցավ վճռական հարձակման, ձեռնամուխ եղավ թշնամական զորքերի ոչնչացմանն ու գերմանը։ Խ. Հ. Մելիքսեթյանը հրանոթի հաշվարկի հետ Կալաչ և Կազաչի կուրգան բնակակետերի շրջանում մղվող մարտերի ժամանակ թնդանոթի մահաբեր կրակով ետ մղեց թշնամու հակագրոհները, ոչնչացրեց 3 տանկ, ավելի քան 15 ավտոմեքենա, 200 զինվոր և սպա։ Այդ մեծ սխրագործության համար Խ. Մելիքսեթյանը պարգևատրվեց «Փառքի 2-րդ աստիճանի» շքանշանով։

Ստալինգրադյան ճակատամարտը պսակվեց սովետական բանակի պատմական հաղթանակով, որը արմատական շրջադարձ եղավ պատերազմի ընթացքում։

Վոլգայի ափին տեղի ունեցած մեծ ճակատամարտից հետո 138-րդ գվարդիական կարմրադրոշ հրետանային գունդը Օրյոլ—Բելգորոդ ուղղությունում գործող սովետական զորքերի կազմում էր։ Ռազմաճակատի այս հատվածում Խ. Մելիքսեթյանը մասնակցեց Սիրցևո և Դրագունսկոյե գյուղերի շրջակայքում ծավալված մարտերին և կրկին իրեն դրսևորեց որպես խիզախ և անվեհեր ռազմիկ։

1943 թ. հուլիսն էր։ Ռազմաճակատի Օրյոլ—Բելգորոդի ուղղությունում գերմանա-ֆաշիստական հրամանատարությունը կենտրոնացրել է մեծ քանակությամբ զրահատանկային զորքեր։ Թշնամին պատրաստվում է տանկային հզոր բռունցքով տատանել սովետական զորքերին, ետ շպրտել նրանց և, ապա, անցնել հարձակման։

Կոահելով հակառակորդի մտադրությունը, սովետական հրամանատարությունն ամեն ինչ անում էր հակառակորդի պլանների ձախողման, սովետական ռազմիկներին նոր, վճռական ճակատամարտերի նախապատրաստելու համար:

Զորամասերի ողջ անձնակազմի նոր ճակատամարտերի նախապատրաստմանն էր նվիրված 67-րդ հրետանային դիվիզիայի կուսակցական ակտիվի ժողովը: 138-րդ հրետանային գնդի կոմունիստներից այդ ժողովին մասնակցում էին մարտկոցի կուսկազմակերպիչ Իվան Պրոստյակովը, ավագ սերժանտ խաչիկ Մելիքսեթյանը և ուրիշներ:

Ակտիվի ժողովն ընթացավ գործարար մթնոլորտում: Հռետորները խոսում էին բացառիկ ոգևորությամբ, կարճ ու կոնկրետ:

Մութն արդեն ընկել էր, երբ ժողովն ավարտվեց: «Ապահովել մարտական հրամանի ճշգրիտ կատարումը: Ոչ մի քայլ ետ. թշնամին հարձակվելու դեպքում ակտիվ հակագրոհով ձախողել այն... կոչ անել բոլոր կոմունիստներին սրբությամբ կատարել իրենց կուսակցական պարտականությունը, ինչպես միշտ, առաջիկայում ևս լինել թշնամու դեմ մարտնչողների ավանգարդում, բոցավառ խոսքով և անձնական օրինակով զորամիավորման մարտիկներին ոգեշնչել նոր սխրագործությունների»...—ասված էր կուսակտիվի ժողովի բանաձևում:

Վերադառնալով ենթազորամաս, խ. Մելիքսեթյանը պարզ ու հասկանալի լեզվով մարտիկներին պատմեց կուսակտիվի ժողովի մասին, նրանց հաղորդեց ժողովի որոշման մարտական ոգին:

Դիվիզիայի կուսակտիվի ժողովի հետևյալ օրը Սիրցո և Դրագունսկոյե գյուղերի մոտ դիրքավորված ստորաբաժանումում կազմակերպվեց հրանոթի կոմունիստական հատուկ անձնակազմ, որը կրակային դիրք ընտրեց հետևակային ենթազորամասի դիրքերի առջևում՝ «չեզոք գոտում»: Այդ անձնակազմի մեջ էր նաև կոմունիստ խ. Մելիքսեթյանը: Հաջորդ լուսաբացին ահռելի դղրդյունով դեպի սովետական ռազմիկների դիրքերն էին սողում չորս տասնյակից ավելի ֆաշիստական տանկեր...: Բորբոքվում է ծանր մարտը, որից հետո ավագ սերժանտի անձնական գործում գրանցվում է. 1943 թ. հունիսին Բելգորոդի մղված երեքօրյա մարտերում հրանոթի նշանառու խ. Հ. Մելիքսեթյանը ետ մղելով հակառակորդի գրոհները, ոչնչացրել է նրա 7 «Վագր» տանկը, մեկ 105 միլիմետրանոց հրետանային մարտկոցը, մեկ ականանետային մարտկոցը, 6 տանկային գնդացիրը, 10 ավտոմեքենա և 300 զինվոր ու սպա...:

Այդ սխրագործության համար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը խ. Մելիքսեթյանին պարգևատրեց Լենինի շքանշանով:

Կուրսկ-Բելգորոդ ուղղությունում գերմանա-ֆաշիստական զորքերի ջախջախումից հետո սկսվեց Բելոռուսիայի ազատագրումը: խ. Մելիքսեթյանը 138-րդ հրետանային գնդի կազմում մասնակցեց Վիտեբսկ, իսկ այնուհետև Լատվիայի և Լիտվայի շատ քաղաքների ազատագրման համար մղված մարտերին: Այժմ էլ Լիտվայի դպրոցականները նամակներ են գրում իրենց ազատագրման համար մարտնչած զինվորին, հիանում նրա քաջությամբ:

Պատերազմի տարիներին դիվիզիայի, բանակի և առաջին Մերձբալթյան ռազմաճակատի թերթերը հաճախ են գրել հակատանկային հրանոթի նշանառու խ. Մելիքսեթյանի սխրագործությունների մասին: Նրա մասին իր 1967 թվականի փետրվարի 24-ի համարում պատմել է նաև Լիտվայի ԼԿԵՄ Կենտկոմի օրգան «Կոմսոմոլսկայա պրավդա» թերթը:

Սովետական Լիտվայի տերիտորիայում մղված և մյուս մարտերի ժամանակ գվարդիայի ավագ սերժանտ խ. Հ. Մելիքսեթյանն իր թնդանոթով ոչնչացրել է 14 հիտլերյան տանկ և ինքնագնաց հրանոթ: Այստեղ է, որ նրա կուրծքը զարդարվեց «Հայրենական պատերազմի 2-րդ աստիճանի», «Փառքի 1-ին աստիճանի» շքանշաններով և նա այդպիսով դարձավ այդ շքանշանի երեք աստիճանի լրիվ կավալերը:



...1945 թ. հունիսի 24: Մոսկվան ցնծության մեջ է: Ամենուրեք խոսում են ռադիոբարձրախոսները: Ողջ երկիրը սրտի թրթիռով ունկնդրում է մայրաքաղաքին: Կարմիր հրապարակում հաղթանակի շքերթ է, սովետական փառավոր զորքերի հանդիսավոր ստուգատես: Լենինի դամբարանի առջևով գեղեցիկ շարասյուներով անցնում են սովետական ռազմաճակատների համահավաք գնդերը, Մոսկվայի կայազորի զորամասերը, նրանք, որոնք ամենից ավելի են աչքի ընկել ֆաշիստական Գերմանիայի դեմ մղված պատերազմում, հազարավոր կիլոմետրեր անցել մարտերով, ազատագրել Վարշավան, Պրագան, Բուդապեշտը, Բուխարեստը և այլ քաղաքներ, ամուր գրավել Քյոնիգսբերգը, Բեռլինը ու հաղթանակի դրոշը պարզել Ռայխստագի վրա: Առաջին Մերձբալթյան համահավաք գնդի կազմում Վ. Ի. Լենինի դամբարանի առջևով հաստատուն քայլերով անցնում է նաև հայորդի ավագ սերժանտ խաչիկ Մելիքսեթյանը, որի կրծքին փայլում են 5 մարտական շքանշան, բազմաթիվ մեդալներ, իսկ այն զորամիավորումը, որի դրոշի տակ նա խիզախաբար մարտնչել է պատերազմի տարիներին, արժանացել է գվարդիականի կոչման, կարմիր դրոշի շքանշանի և բազմաթիվ անգամ փառաբանվել Սովետական Զինված Ուժերի Գերագույն գլխավոր հրամանատարի հրամաններում:

Հետպատերազմյան տարիներին խաչիկ Համայակովիչ Մելիքսեթյանը ռազմաճակատից վերադարձած միլիոնավոր ռազմիկների պես ստեղծել է տուն ու տեղ, ապահով կյանք, կազմել լավ ընտանիք: Նրա կինը՝ Արշալույս Արտեմովնան աշխատում է հանրապետության կապի մինիստրությունում: Նրանք երկուսով էլ աշխատում են ջանասիրությամբ և սիրով դաստիարակում իրենց զավակներին: Նրանց աղջիկը՝ Աիդան արդեն պետհամալսարանի քիմիական ֆակուլտետի երկրորդ կուրսի ուսանողուհի է, իսկ տղան՝ Ալբերտը, սովորում է Գրիբոեդովի անվան դպրոցի 9-րդ դասարանում:

Գվարդիայի պահեստի սերժանտ խ. Մելիքսեթյանն այժմ շատ գոհ է, որ կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը հետևողականորեն վարելով խաղաղասիրական արտաքին քաղաքականություն, ապահովում են իրենց երջանիկ կյանքը և, միաժամանակ, մեծ ուշադրություն նվիրում Հայրենիքի պաշտպանության ամրապնդման հարցերին:

ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե.

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ՈՒ՞Ր Է ԸՆԹԱՆՈՒՄ ԲՈՆՆԸ

### ՊԱՊՅԱՆ Ս. Կ.

1945 թվականի մայիսին, երբ Եվրոպայում դադարեցին մարդկության
պատմության մեջ ամենասարսափելի պատերազմի հրետանային համազար-
կերը, և անհետացավ վառոդի ծուխը, միլիոնավոր մարդիկ հանգիստ շունչ
քաշեցին։ Թվում էր, թե այդ օրերը պետք է մարդկության գարնան սկիզբ
դառնային, ազգաբարերին հավիտյան խաղաղություն և ընդմիշտ վերջ դնեին
համընդհանուր կործանիչ պատերազմի արհավիրքներին։ Միլիոնավոր մար-
դիկ հավատացած էին, որ ամեն ինչ կարվի կայուն խաղաղության ապահով-
ման համար։ Եվրոպայի բազմաչարչար ժողովուրդները իրավացիորեն գտ-
նում էին, որ պայմաններ են ստեղծվել մայրցամաքի անվտանգության
պրոբլեմը վերջնականապես լուծելու համար։ Նրանք հուսով էին, որ Գեր-
մանիայում, որի տերիտորիայից վերջին հիսնամյակում երկու անգամ բռնկե-
ցին համաշխարհային կործանիչ պատերազմները, արմատախիլ կարվեն մի-
լիտարիզմն ու նացիզմը, որ նա կգնա, վերջապես, նոր ուղիով՝ խաղաղ ու
նրջանիկ ապագայի ուղիով։ Սակայն, այդ ուղու վրա կարողացավ կանգնել
գերմանական ժողովրդի միայն մեկ հատվածը՝ գերմանական աշխատավոր-
ների առաջին սոցիալիստական պետության՝ Գերմանական Դեմոկրատական
Հանրապետության բնակչությունը։ Այդ հանրապետությունն այժմ խաղա-
ղության ամրոց է Եվրոպայի կենտրոնում։

Ինչ վերաբերում է Արևմտյան Գերմանիային, ապա այնտեղ վերականգ-
նըված է միլիտարիստական ռեժիմը։ Հակառակ արևմտագերմանական
բնակչության ազգային շահերի, Գերմանիայի ֆեդերատիվ Հանրապետու-
թյունը նորից գտնվում է այն ուժերի ոստայնում, որոնք, չնայած պատմու-
թյան դաժան դասերին, իրենց քաղաքականությունն են հռչակել ագրեսիան
ու ռևանշը, նորից սպառնում են հարևան երկրների խաղաղ կյանքին։
«Արևմտյան Գերմանիան,— ընդգծվեց ՍՄԿԿ XXIII համագումարին տված
Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— ավելի ու ավելի մեծ չափով է դառ-
նում պատերազմական վտանգի օջախ, ուր եռում են ռևանշիստական կըր-
քերը»։

Պատմության փորձը սովորեցնում է, որ Եվրոպայի մայր ցամաքի ժո-
ղովուրդների խաղաղ համագործակցությունը մարդկության ընդհանուր խա-
ղաղության և առաջադիմության կարևոր պայմանն է։

Սակայն իմպերիալիստական տերությունների մեղքով իրադարձու-
թյունների զարգացումը Եվրոպայում չգնաց խաղաղության և անվտանգու-
թյան ուղիով։ Ղեկավարվելով իրենց արտաքին քաղաքականության մեջ հա-
կակոմունիզմի դոկտրինայով, իմպերիալիստական տերությունները և առաջին
հերթին, ԱՄՆ-ը սկսեցին վարել Սովետական Միության և եվրոպական սո-
ցիալիստական մյուս պետությունների նկատմամբ ագրեսիվ կուրս։ «Ուժի
դիրքերից» քաղաքականության օգնությամբ նրանք ցանկանում էին սահ-
մանափակել սոցիալիզմի ազդեցությունը և այդ երկրների ժողովուրդներին
շեղել իրենց ընտրած ուղուց։ Հենց իմպերիալիստական տերությունների
քաղաքականությունը հասցրեց Եվրոպայի պառակտմանը երկու ռազմա-քա-



ղաքական հակադիր դաշինքների։ Այդ քաղաքականությունը ներկայումս
նպաստում է լարվածության սրմանը։ Ներկա պայմաններում զինված կոն-
ֆլիկտը Եվրոպայում կհասցներ անհամեմատ ավելի ծանր կորուստների և
զոհերի, քան թե դա տեղի է ունեցել անցյալում։

Եվրոպայում լարվածության սրմանը նպաստում է Վաշինգտոնի ագրե-
սիվ կուրսը, որն ավելի է հենվում Արևմտյան Գերմանիայի միլիտարիստա-
կան և ռևանշիստական ուժերի վրա։ ԳՖՀ-ի տերիտորիայում գտնվում է մոտ
մեկ քառորդ միլիոն ամերիկյան զինվոր ու սպա։ ԱՄՆ-ը այստեղ ունի 14
բանակային և 9 ավիացիոն բազա, զինվորական բազմաթիվ պահեստներ,
ուսումնական կենտրոններ, պոլիգոններ։ Արտասահմանյան մամուլը հա-
ղորդում է, որ Պենտագոնը Արևմտյան Գերմանիայում տեղաբաշխել է Եվրո-
պայում ունեցած իր 7 հազար միջուկային զենքերի մեծ մասը, ստեղծել է
բազմաթիվ հրթիռարձակման կետեր, որոնք ուղղված են սոցիալիստական
երկրների քաղաքների վրա։

Եվրոպայի անվտանգության հիմնական հարցը գերմանական պրոբլեմն
է։ Խաղաղությունը Եվրոպայի մայրցամաքում կայուն չի լինի քանի ժո-
ղովուրդները համոզված չեն, որ գերմանական հողից նորից պատերազմ չի
բռնկի։ Դրա համար պետք է լիովին մեկուսացվեն ԳՖՀ-ի տերիտորիայում
տեղ գտած և ծավալվող ռեակցիոն ու ռազմամոլ ուժերը, որոնք սրանից
երկու տասնամյակ առաջ Գերմանիային կանգնեցրին պառակտման ուղու վրա։

***

Երկրորդ համաշխարհային պատերազմի կարևորագույն հետևանքներից
մեկն այն եղավ, որ Գերմանիայի արևելյան մասում տեղի ունեցան արմա-
տական վերափոխումներ։ Գործարանները, ֆաբրիկաները, հանքերը, երկաթ-
ուղիները դարձան ժողովրդի սեփականությունը։ Հանձին ԳԴՀ-ի՝ պատմու-
թյան մեջ առաջին անգամ ստեղծվեց իսկական խաղաղասեր և դեմոկրատա-
կան գերմանական պետություն։ Այն դարձավ գերմանական ազգի առաջա-
դիմական ու հայրենասիրական ուժերի ամուր պատվար, միասնական, ան-
կախ, խաղաղասեր, դեմոկրատական Գերմանիայի ստեղծման համար
նրանց մղած պայքարի դրոշակակիրը։ Գերմանական Դեմոկրատական Հան-
րապետության ստեղծումը շրջադարձային կետ հանդիսացավ Եվրոպայի
պատմության մեջ։ Այն բացառիկ նշանակություն ունեցավ ո՛չ միայն գեր-
մանական ժողովրդի ճակատագրի, այլև եվրոպական մյուս պետություն-
ների կենսական շահերի համար. պետություններ, որոնք բազմիցս ենթարկ-
վել են գերմանական միլիտարիզմի ագրեսիային։

Գերմանական հողում, որտեղ թափվել է Կարլ Լիբկնեխտի, Ռոզա Լյուք-
սեմբուրգի, Էռնստ Թելմանի և բանվոր դասակարգի գործի հազարավոր այլ
անձնվեր մարտիկների արյունը, աճել են սոցիալիզմի ծիլերը։

Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը զբաղեցնում է
ամբողջ Գերմանիայի տերիտորիայի մեկ երրորդը։ Նա երիտասարդ պետու-
թյուն է, որի ստեղծումից անցել է 18 տարի։ Սակայն, պատմական այս
կարճ ժամկետում նրա աշխատավորները միավորված՝ Դեմոկրատական
Գերմանիայի ազգային ճակատում, բանվոր դասակարգի ավանգարդ՝ Գեր-
մանիայի սոցիալիստական միասնական կուսակցության (ԳՍՄԿ) ղեկավա-
րությամբ մեծ հաջողություններ են ձեռք բերել սոցիալիստական շինարարու-
թյան ասպարեզում։ ԳԴՀ-ն վերածվել է արդյունաբերական և գյուղատնտե-
սական զարգացած երկրի, որն արագ քայլերով ընթանում է սոցիալիզմի
ուղիով։ Արդյունաբերական արտադրանքի ծավալը 1967 թվականին, նա-
խորդ տարվա համեմատությամբ, աճեց 7,4 տոկոսով, իսկ աշխատանքի
արտադրողականությունը բարձրացավ 9 տոկոսով։

Մոտ ապագայում ավելի փայլուն հեռանկարներ են բացվում հանրա-
պետության առջև։ Յոթնամյակի վերջում (1964—1970 թթ.) նախատեսվում
է կապիտալ ներդրումների տարեկան ընդհանուր ծավալը հասցնել 28 մի-
լիարդ մարկի՝ 1963 թվականի 16,8 միլիարդ մարկի փոխարեն։ Նույն ժա-

Ընտրողներին գրավելու նպատակով նեոֆաշիստները, իրենց նախորդների օրինակով լայնորեն օգտագործում են սոցիալական դեմագոգիա: Ծրագիրը բանվորներին խոստանում է «երաշխավորված բանվորական տեղ», գյուղացիներին՝ «շահավետ վարկեր», միջին խավին՝ «հարկային բեռի կրճատում»: Միաժամանակ, ծրագիրն անհրաժեշտ է համարում «խոշոր ձեռնարկությունների հետագա կենտրոնացումը»:

Նեոնացիստների ծրագրային փաստաթղթերի մեջ բացահայտ պահանջվում է վերստեղծել «գերմանական գլխավոր շտաբը», հզոր ռազմարդյունաբերական մեքենան, վերականգնել հիտլերյան բռնադատողների ու մարդասպանների «պատիվը», «նոր սերունդը» դաստիարակել գերմանական միլիտարիզմի ոգով:

Հանուն զավթողական նպատակների իրագործման, նեոնացիստները կոչ են անում էլ ավելի մեծացնել ֆեդերատիվ հանրապետության սպառազինությունները, բունդեսվերը զինել միջուկային զենքով և արագացնել ռազմական պատրաստությունները: Նեոնացիստները փորձում են Հիտլերյան Գերմանիայի փոխարեն ուրիշ պետությունների վրա բարդել երկրորդ համաշխարհային պատերազմի սանձազերծման պատասխանատվությունը, արդարացնել պատերազմի հիտլերյան հանցագործներին, որոնց խղճի վրա ծանրացած են խորտակված միլիոնավոր մարդկային կյանքեր:

Ինչպես նշվեց ՍՍՀՄ արտգործմինիստրությունում սովետական և օտարերկրյա ժուռնալիստների համար վերջերս տեղի ունեցած պրես-կոնֆերանսում, նեոնացիստական կուսակցությունը վերածվում է մի կենտրոնի, որի շուրջը խմբավորվում են տանուլ տված, պատերազմի համար ռևանշ երազող ֆաշիստական գաղափարախոսության մոլի կողմնակիցները: Նեոնացիստների ծրագիրը նացիոնալ-սոցիալիստական կուսակցությունից փոխ է առել թե՛ նրա սոցիալական դեմագոգիան, թե՛ նրա ռևանշիստական ոգին, և թե՛ ռասիզմը: Նացիոնալ-դեմոկրատական կուսակցությունն իր պահանջների առանցքն է դարձրել եվրոպական սահմանների վերաձևումը և ուրիշ տերիտորիաների զավթումը:

Այս ագրեսիվ ռևանշիստական պահանջները կարելի է գնահատել լոկ որպես Եվրոպայի ժողովուրդներին ուղղված մարտահրավեր: Սակայն նրանք հակահարված չեն ստանում ԳՖՀ-ի կառավարությունից: Արտասահմանյան մամուլում ավելի ու ավելի հաճախ են տեղեկություններ թափանցում, որ արևմտագերմանական մոնոպոլիստների միջոցներով նորից են լցվում նեոնացիստների գանձարկղները:

Արևմտյան Գերմանիայում իրադարձությունների այսպիսի զարգացումը պատահականություն չէ: Ոչ թե ինչ-որ պատահական հանգամանքներ, այլ Բոննի կառավարող շրջանների արտաքին ու ներքին ամբողջ քաղաքականությունն է միշտ նպաստել և շարունակում է նպաստել նեոնացիզմի աճին ու ակտիվացմանը: ԳՖՀ-ում ռևանշիստական ու միլիտարիստական ձգտումների աճին մեծ չափով նպաստում է նաև Վաշինգտոնի քաղաքականությունը: ՆԱՏՕ-ի ագրեսիվ բլոկը օգտագործելով իրենց զավթողական քաղաքականության համար, ԱՄՆ-ը ամեն կերպ աջակցում է, որպեսզի բունդեսվերը դառնա ՆԱՏՕ-ի հարվածային ուժը:

Չնայած, այսպես կոչված «նոր արևելյան քաղաքականության» հռչակմանը, Բոննը գործնականում չի ջանում նորմալացնել փոխհարաբերությունները Եվրոպայի սոցիալիստական պետությունների հետ, չի ցանկանում ստեղծել լավ հարաբերություններ ամբողջ մայրցամաքի ժողովուրդների հետ: ԳՖՀ-ի կառավարությունը մտադիր է այսուհետև ևս բացահայտ ու քողարկված աջակցություն ցույց տալ նեոնացիստական, միլիտարիստական և ռևանշիստական շրջաններին. դա հաստատվում է նաև այն վերաբերմունքով, որ Բոննը ցույց տվեց սովետական կառավարության 1967 թվականի դեկտեմբերի 8-ի հայտարարությանը: Դատապարտման ոչ մի խոսք չգտնելով նացիոնալ-դեմոկրատական կուսակցության և նրա նեոֆաշիստական ծրագրի հասցեին, Բոննում փորձեցին սովետական կառավարության հայտարարությունը պատկերել որպես «միջամտություն ԳՖՀ-ի ներքին գործերին»:



Սովետական Միությունը, որպես Պոտսդամի համաձայնագրի մասնակից, չի կարող մատների արանքով նայել այն ամենին, ինչ տեղի է ունենում Արևմտյան Գերմանիայում, չի կարող ներքին կարգի երևույթ համարել միլիտարիստական ու նեոնացիստական կազմակերպությունների գործունեությունը ԳՖՀ-ում: ԳՖՀ-ի կառավարությունն ամբողջ աշխարհի ժողովուրդների առջև պատասխանատվություն է կրում իր տերիտորիայում ռևանշիստական և նեոֆաշիստական գործունեություն թույլ տալու, Պոտսդամի համաձայնագրի պահանջները չկատարելու համար: ԳՖՀ-ի կառավարությանը ոչ ոք չի ազատել այդ միջազգային պարտավորություններից: «Ներքին գործերին միջամտելու վերաբերյալ» կեղծ պնդումների ետևում թաքնված է ԳՖՀ-ի ձգտումը՝ խուսափել հիշյալ պարտավորությունների կատարումից և պաշտպանության տակ առնել նացիոնալ-դեմոկրատական կուսակցությանը:

Նեոնացիզմի ոտնձգություններին տագնապով ու մտահոգությամբ են հետևում ոչ միայն ԳՖՀ-ի ողջամիտ ուժերը, այլև Անգլիայի, Ֆրանսիայի, ԳԴՀ-ի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Դանիայի, Բելգիայի, Իտալիայի և շատ այլ երկրների հասարակայնությունը: Եվ դա հասկանալի է, որովհետև նեոնացիզմը հավասար չափով սպառնալիք է բերում ինչպես Արևմտյան Գերմանիայի, այնպես էլ մյուս պետությունների ժողովուրդներին, սպառնում է Եվրոպայի մայրցամաքի խաղաղությանն ու անվտանգությանը: Այս պայմաններում, յուրաքանչյուր կառավարությունից ակտիվ ու եռանդուն ջանքեր են պահանջվում՝ թույլ չտալու այնպիսի զարգացում, որը կարող է Եվրոպայի ժողովուրդներին ներքաշել պատերազմական նոր աղետի մեջ: Մեծ պատասխանատվություն է ընկնում Պոտսդամի համաձայնագրի մասնակիցների վրա (ԱՄՆ, Անգլիա, ՍՍՀՄ և Ֆրանսիա), որոնք պարտավորություն են ստանձնել ապահովել, որ Գերմանիան երբեք չսպառնա հարևաններին ու միջազգային խաղաղությանը: Սակայն, ինչպես փաստերն են ցույց տալիս, Վաշինգտոնը և Լոնդոնն ամեն կերպ փորձում են խույս տալ այդ պարտավորությունների կատարումից: ԱՄՆ-ը և Անգլիան կանգնած են նրանց դիրքերում, ովքեր ԳՖՀ-ում խրախուսում են ռևանշիստական ուժերին: Անկարելի է ժխտել, որ իրադարձությունների զարգացումը Արևմտյան Գերմանիայում լուրջ վտանգ է ներկայացնում Եվրոպայի խաղաղության և ընդհանուր անվտանգության համար:

Ազգային-դեմոկրատական կուսակցության պարագլուխները վարում են ծայրահեղ ռեակցիոն գիծ թե՛ ներքին և թե՛ արտաքին քաղաքականության հարցերում: Նրանք «միանգամայն անբավարար» են համարում Բոննի պարագլուխների առանց այն էլ անհեռատես, վտանգավոր կուրսը: Նրանք պահանջում են արագացնել բունդեսվերը միջուկային զենքով զինելու գործը: Բայց իզուր են ազգային-դեմոկրատները և նրանց ֆյուրեր Ադոլֆ ֆոն Տադդենը (բազմաթիվ մեկնաբաններ գտնում են, որ պատահական չէ, որ այդ ավանտյուրիստի անունը համընկնում է Հիտլերի անվան հետ) դժգոհում Քիզինգերի կառավարության ջանքերից, որոնք ուղղված են Արևմտյան Գերմանիային մասսայական ոչնչացման զենք տալուն: Բոննը կաշվից դուրս է գալիս, որ որքան կարելի է արագ ձեռք գցի միջուկային զենք: Այդ նպատակով ներկայումս ԳՖՀ-ի տերիտորիայում շահագործման են հանձնվել և կառուցվում են 23 ատոմային ռեակտորներ: Արտասահմանյան հեղինակավոր աղբյուրների տվյալներով, ԳՖՀ-ի այժմ գործող, այսպես կոչված, «գիտական ռեակտորների» մշակած ատոմային հումքով կարելի է տարեկան արտադրել 15 ատոմային ռումբ: Ատոմային հումքի արտադրության հետագա աճը հնարավոր կդարձնի 1970 թվականից տարեկան ստեղծելու 175—180 ռումբ: ԱՄՆ-ի և Արևմտյան Գերմանիայի միջև Վաշինգտոնում վերջերս կնքված համաձայնագրով ԳՖՀ-ն հնարավորություն է ստանում զարգացնելու տիեզերական տեխնիկան և սեփական հրթիռաշինությունը:

Ինչպես նշված է սովետական կառավարության 1967 թվականի դեկտեմբերի 8-ի հայտարարությունում՝ ԳՖՀ-ում ամենառեակցիոն շովինիստական ուժերի սանձարձակությունները անսպասելի կամ տարերային բան չեն: Դա Բոննի պետական պաշտոնական քաղաքականության ուղղակի արգասիքն է:

Այն տարիներ շարունակ տարվում է Եվրոպայում գոյություն ունեցող սահմանները չճանաչելու, միջուկային զենքին տիրանալու պահանջներին, բոլոր գերմանացիների անունից հանդես գալու հավակնությամբ։

Բոննի ռեակցիոն կառավարող շրջանները, դաս չքաղելով պատմությունից և չարաշահելով գերմանական ժողովրդի ազգային զգացմունքները, երկիրը նորից հրում են ինքնասպան ավանտյուրաների հունով, հայտարարելով, թե, իբր, երկրի միավորման միակ միջոցը պատերազմն է։ Այդ բանում իրենց սև գործն են կատարում նաև Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական կուսակցության աջ պարագլուխներից շատերը, որոնք վարում են ֆինանսական օլիգարխիայի հետ սերտ համագործակցության հակաբանվորական կուրս։ 1966 թվականի դեկտեմբերից սոցիալ-դեմոկրատների պարագլուխները, քրիստոնեական դեմոկրատների հետ միասին, ստեղծեցին ԳՖՀ-ի կոալիցիոն կառավարություն։

Գերմանական Դեմոկրատական Հանրապետության, սոցիալիստական բոլոր երկրների դեմ պատերազմի հրձիգների ագրեսիվ գործունեության մեջ հատուկ տեղ է գրավում Արևմտյան Բեռլինը։ Չնայած Արևմտյան Բեռլինը գտնվում է ԳԴՀ-ի տերիտորիայում, այնտեղ ապօրինի ստեղծվել են ԳՖՀ-ի կառավարական բազմաթիվ օրգաններ, անց են կացվում բունդեստագի՝ Բոննի պառլամենտի սեսիաներ, այնտեղ սիստեմատիկաբար լինում են արևմտագերմանական կառավարության անդամները։ Վաշինգտոնի և Լոնդոնի թողտվության ու քաջալերման հետևանքով Արևմտյան Բեռլինը վերածվել է «սառը պատերազմի» օջախի, Եվրոպայի վառոդի պահեստի։ Հաշվի չառնելով, որ Արևմտյան Բեռլինը գտնվում է ԳԴՀ-ի կենտրոնում և նրա մասն է, Բոննը նրա վրա տարածում է ԳՖՀ-ի գործող օրենքները, ընդհուպ մինչև զինվորական ծառայության մասին օրենքը։ Այսպես, Արևմտյան Բեռլինում հավաքագրված զինվորները կազմում են Բոննի բոլոր զինված ուժերի ավելի քան 10 տոկոսը։ Արևմտյան Բեռլինը դարձել է պրովոկացիաների և քայքայիչ գործողությունների վտանգավոր օջախ, որը լուրջ սպառնալիք է ստեղծում խաղաղության համար։

Քիչ չեն Արևմուտքի ռեակցիոն գործիչների ուղղակի և ցինիկ ասույթները «ճակատային քաղաքին» հատկացված դերի շուրջ։ Այսպես, Արևմտյան Բեռլինի առաջին բուրգոմիստր Էռնստ Ռեյտերը ասում էր. «Մենք արևելյան գոտում գործում էինք որպես ռումբ, և մենք կարող ենք նրա վրա ճնշումն ուժեղացնել այնպիսի մասշտաբներով, որ քչերը կարող են այժմ այդ բանը պատկերացնել»։ «Բեռլինը կարծես դռան բռնակ լինի, որը քաշելով կարելի է բացել դեպի Արևելք տանող դարպասները», գրել է արևմտագերմանական «Նոյես ցայտունգ» թերթը։ «Տելեգրաֆ» թերթն ընդգծում է, որ «Բեռլինը Արևմուտքի համար ամենաէժան ատոմային ռումբն է»։ Վերջերս, 1968 թվականի մարտի 4—10-ը, կազմակերպելով, այսպես կոչված «Բեռլինյան շաբաթը», Բոննը իրագործեց իր հերթական պրովոկացիան ԳԴՀ-ի դեմ։ Արևմտյան Բեռլինում տեղի ունեցավ ԳՖՀ-ի պառլամենտի (բունդեստագի) նստաշրջանը, որի աշխատանքին մասնակցեց ԳՖՀ-ի կառավարության ողջ կազմը՝ կանցլեր Քիզինգերի գլխավորությամբ։



Մեր օրերում կոմունիստները, մարքսիստական-լենինյան կուսակցությունները գտնվում պատերազմական սպառնալիքի դեմ մղվող պայքարի մարտիկների առաջին շարքում։ Նրանք հանդես են գալիս հանուն սառը պատերազմի վերացման, Եվրոպայի անվտանգության հուսալի սիստեմի ստեղծման։ Խաղաղության շարժման առաջամարտիկների ջոկատներից մեկը ընդհատակում գործող Գերմանիայի կոմունիստական կուսակցությունն է։ Խաղաղության և անվտանգության ակտիվ պայքար ծավալեցին Եվրոպայի սոցիալիստական երկրները, որոնք հսկայական ուժ են ամբողջ մայրցամաքում։ Եվրոպայի սոցիալիստական պետությունները գրավում են մայրցամաքի տերիտորիայի 65 տոկոսը, իսկ բնակչությունը կազմում է Եվրոպայի բնակչության կեսը։ Այդ երկրների տեսակարար կշիռը Եվրոպայի արդի էկոնոմիկայի մեջ անընդհատ աճում է։

ՍՄԿԿ XXIII համագումարը նշեց, որ Եվրոպայում ամրապնդվում է միջազգային ագրեսիայի ողնաշարը կազմող՝ ամերիկյան և արևմտագերմանական իմպերիալիզմի չարանենգ դաշինքը։ Իմպերիալիստական այդ երկու գիշատիչները ձգտում են սրել լարվածությունը Եվրոպայում։ Նրանց ագրեսիվ մտադրությունները, վերջին հաշվով, ուղղված են Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների դեմ։

Սպիտակ տունն ամեն կերպ պաշտպանում է Բոննի արտաքին քաղաքականության հիմնական դրույթները, որոնք անփոփոխ են մնում հռենոսյան բոլոր միմյանց հաջորդող կառավարողների համար։ Բոննի կառավարությունը միակն է Եվրոպայում, որն առաջ է քաշում տերիտորիալ հավակնությունների լայն ծրագիր և չի ուզում ճանաչել պետական սահմանների անձեռնմխելիությունը։ Ադենաուերը-Էրհարդը-Քիզինգերը, նրանց համախոհները չեն հրաժարվում Մյունխենի թալանչիական պայմանագրից, առարկում են լարվածության մեղմացմանը, պայքարում խաղաղասիրական նախաձեռնությունների դեմ։

Սովետական Միության, սոցիալիստական մյուս երկրների քաղաքականությունն ելնում է այն բանից, որ անհրաժեշտ է հաստատել համաեվրոպական համագործակցություն, ստեղծել անվտանգության կայուն սիստեմ, ընդունել հետպատերազմյան սահմանների անխախտելիությունը, երկու գերմանական պետությունների գոյության փաստը։ Սրանք են այն երաշխիքները, որոնք կապահովեն խաղաղությունը Եվրոպայում։

*ՄԱՄՈՒԼԻ ՕՐՎԱ ԱՌԹԻՎ*

# ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԸ

*1917 թ. օգոստոս. երկրում վերացել էր երկիշխանությունը, այն անցել էր բուրժուազիայի ձեռքը. հակահեղափոխության լագերը համալրվել էր մենշևիկներով և էսեռներով։ Անհրաժեշտ էր ձախողել հակահեղափոխության պլանները, պատրաստվել զինված ապստամբության, վերցնել սոցիալիստական հեղափոխության կուրս։*

*Բոլշևիկյան կուսակցության առաջադրած այս խնդիրների լուծման համար անհրաժեշտ էր ոչ միայն Պետրոգրադում և կենտրոնական այլ քաղաքներում, այլև ծայրագավառներում էլ ունենալ օգնականներ, հենվել նրանց վրա և նրանց միջոցով մասսաներին ոտքի հանել հանուն սոցիալիստական հեղափոխության հաղթանակի։*

*Բոլշևիկների կուսակցության այդպիսի օգնականներից մեկը «Նեցուկ» թերթն էր՝ ՌՍԴԲԿ Շուշիի կազմակերպության օրգանը, որի առաջին համարը լույս տեսավ 1917 թ. օգոստոսի 18-ին։*

*Հենց անդրանիկ առաջնորդողում «Նեցուկ»-ը հակիրճ բնորոշում է իր գլխավոր խնդիրը։ «Ուրբաթ, 18-ին օգոստոսի» վերնագրի տակ կարդում ենք. «Ասպարեզ է իջնում մեր թերթը պաշտպանելու բանվորության և սեփականազուրկ գյուղացիության շահերը, դասակարգային գիտակցության հրավիրելու ժողովրդական ճնշված խավերին»։*

*«Նեցուկ»-ի խոսքը գործ էր. նա ընթացավ բոլշևիկյան ուղիով (որի խմբագիրն էր Աշոտ Հովհաննիսյանը). նրա շուրջը համախմբված էին այնպիսի երևելի մարդիկ, ինչպիսիք էին Հակոբ Հովհաննիսյանը, Հակոբ Կամարին (Բեջանյանը), Սարգիս Դանիելյանը, Ալեքսանդր Ռուբենին (Ծատուրյանը) և ուրիշներ։*

*Առաջին իսկ համարից թերթը պրոպագանդում է լենինյան գաղափարները, կուսակցության լոզունգները հաղորդում աշխատավոր զանգվածներին, բարձրացնում նրանց հեղափոխական ոգին ու մարտունակությունը։ Թերթի 5-րդ համարում հրապարակվել է Վ. Ի. Լենինի «Լոզունգների մասին» նշանավոր հոդվածը, որն ուղեցույց դարձավ բոլշևիկների գործունեության համար։*

*«Նեցուկ»-ը նշում է, որ Ղարաբաղում էլ պետք է նոր թափով պայքար տարվի հակահեղափոխական տարրերի, ամեն գույնի նացիոնալիստների ու նրանց հովանավորների, բոլոր նրանց դեմ, ովքեր ոտնահարում են աշխատավորների շահերը։ Այս տեսակետից բնորոշ են թերթի երկրորդ համարի՝ «Ղարաբաղի գործադիր կոմիտեն» և «Շուշիի բանվորական ներկայացուցիչների խորհրդի վերակազմության խնդիրը» հոդվածները։*



*Առաջինում քննադատության սուր սլաքը ուղղված է «ժամանակավոր կառավարության Ղարաբաղի գործադիր կոմիտեի դեմ», որը ոչ միայն ոչինչ չէր արել աշխատավորների համար, այլ, ընդհակառակը, «քաջալերել էր հակահեղափոխական, մութ ու գիշատիչ տարրերին՝ ամեն տեղ կազմալուծելու իշխանությունն ու պարենավորումը։ ...Միայն դեմոկրատական մասսաների կազմակերպված քայլերը,— շարունակում է Շուշիի բոլշևիկների օրգանը,— կարող են փրկել մեր երկիրը հակահեղափոխական կազմակերպությունների ազդեցությունից և հենակետ լինել հեղափոխական կենտրոնների վճռական պայքարին»։*

*Ճիշտ բնութագրելով հեղափոխական պայքարը, «Նեցուկ»-ը բացեիբաց հայտարարում է, որ ժամանակը կենսական պահանջ է դրել նաև Շուշիի հեղափոխական-դեմոկրատական ուժերի առջև։ «Ինչպես Ռուսաստանի բոլոր վայրերում,— գրում է թերթը,— այնպես և մեզանում (Շուշիում—Ս. Ա.) հեղափոխական ուժերի հավաքումը, նրանց կենտրոնացումը պայքարող դեմոկրատիայի պատասխանատու մարմինների մեջ, վայրկյանի հրամայական պահանջ է»[1]։ Ուրեմն պետք է ավելի ուժեղացնել աշխատավորների շրջանում տարվող հեղափոխական աշխատանքը, նրանց պարզաբանել նորաստեղծ խորհուրդների անելիքները, դերն ու նշանակությունը։*

*Թերթը դնում է Շուշիի բանվորական ներկայացուցիչների խորհրդի վերակազմության հարցը և նշում դրան հասնելու ռեալ ուղիները։ «Միայն հեղափոխական խորհուրդներն են,— շեշտում է «Նեցուկ»-ը,— որ կենտրոնացնելով իրենց մեջ պայքարող դեմոկրատիայի կազմակերպված կամքը, կարող են դիմադրել ռեակցիայի տեսանելի ու աներևույթ ուժերին, զորացնել հեղափոխության թափը, արմատականացնել նրա ընթացքը։ Կապ պահպանելով դեմոկրատիայի կենտրոնական օրգանների հետ, Շուշիում կազմակերպվող Բ. Զ. և Գ. խորհուրդները կոչված են ոչ միայն կռվելու գավառի բոլոր հակահեղափոխական երևույթների դեմ, այլև կենտրոն դառնալով իսկական հեղափոխական և դեմոկրատական իշխանության, իրենց շուրջը հավաքելու այն բոլոր հասարակական տարրերին, որոնք վճռական պայքար պետք է մղեն տիրող դասակարգերի դեմ՝ ընդլայնելու և խորացնելու հեղափոխության սոցիալական և քաղաքական բովանդակությունը»[2]։*

*Այլ կերպ ասած, «Նեցուկ»-ն աշխատավորներին կոչ է անում սովետներից ետ կանչել էսեռա-մենշևիկյան դեպուտատներին և աջակցել բոլշևիկներին, ապահովել նրանց լիակատար հաղթանակը սովետներում։*

*«Նեցուկ»-ը հարցը դնում է ուղղակի. Ղարաբաղում ևս կիրառել բոլշևիկյան կուսակցության կենտրոնական կոմիտեի՝ «Ամբողջ իշխանությունը սովետներին» օրվա լոզունգը։ Այս միաժամանակ նշանակում էր մարտականորեն պատրաստվել բուրժուական կառավարության տապալման և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար։*

*Երկրորդ և հաջորդ համարներում զետեղված «Ռուսական հեղափոխությունը և պրոլետարիատի դիկտատուրան» հոդվածում միանգամայն ճիշտ*

---

[1] «Նեցուկ», 2, 1917 թ. օգոստոսի 24։

[2] «Նեցուկ», 6, 1917 թ. սեպտեմբերի 21։

կերպով հիմնավորվում է հեղափոխության հաղթանակի, բանվորների, գյու-
վորների ու գյուղացիների ամուր դաշինքի անհրաժեշտությունը։

Թերթը սուր ծաղրում է Կերենսկուն, որի «կառավարությունը հենվում է
բուրժուազիայի և քաղբենիության քաղաքական կոալիցիայի վրա» և զբաղ-
ված է միայն ժողովրդին կեղծ խոստումներ տալով։

Լրագրային տարբեր ժանրի նյութերի միջոցով, մերկացնելով կոռնիլովշչի-
նան, «Նեցուկ»-ը շեշտում է, որ Կոռնիլովը սոցիալիստական հեղափոխության
կատաղի թշնամին է և նրա խռովության ջախջախումը մեծապես նպաստեց
աշխատավորության ազատագրման պայքարի ծավալմանը։

Տարբեր առիթներով թերթն իր խոսքն ասում է նաև պատերազմի ու խա-
ղաղության մասին։ «Պատերազմը» վերնագրով հոդվածում որոշակի գրված
է. «Պատերազմը քայքայում է ժողովրդին. Նա ոսկու աղբյուր է աշխարհակեր
կապիտալի համար... Նա պրոլետարիատի և չքավոր գյուղացիության թշնա-
մին է»[1]։ Հոդվածում բացահայտվում է իմպերիալիստական պատերազմի ողջ
նպատակը և նշվում նրա հրահրողների դավաճանական գործելակերպը։

Խոսելով համաշխարհային իմպերիալիստական պատերազմի մասին,
թերթը ընթերցողներին բացատրում է, որ այն առաջացել է մի կողմից մոնո-
պոլիստների զավթողական պլանների իրագործման, մյուս կողմից՝ հեղափո-
խական շարժումը ճնշելու նպատակով։

Թերթի տեսադաշտից դուրս չի մնում նաև դաշնակցականների գործու-
նեության մերկացումը։ «Ազգային խորհրդակցությունը» հոդվածում մինչև
արմատները բացահայտվում է Մոսկվայի մի տխրահռչակ խորհրդակցության
էությունը, որի օրինակով էլ դաշնակցականները ձգտում էին համախորհրդ-
դակցություն (համագումար) հրավիրել և լուծել հայոց հարցը։ Հակաբոլշևիկ-
յան այս տարրերի կեղծ խոստումներն ու ստահոդ ելույթները հետապնդում
էին մի նպատակ. հայ աշխատավորների ուշադրությունը շեղել հեղափոխա-
կան ուղուց և նրանց մղել անդունդը. «Հեղափոխական սոցիալ-դեմոկրա-
տիան չի կարող ժամավաճառ լինել մի խորհրդակցության մեջ,— գրում է
«Նեցուկ»-ը,— որի նպատակն է ի մի խմբել անպատասխանատու տարրերին
և հանուն հայ ժողովրդի՝ «համաձայնություն» կնքել ինչ-ինչ մութ ու պղտոր
խնդիրների շուրջը... մեր ընկերները պետք է բոյկոտի ենթարկեն Ազգային
համախորհրդակցությունը և մերկացնեն հայ բանվորության առաջ ազգային
այդ կատակերգության հակաժողովրդական բովանդակությունը»[2]։

Մի այլ հոդվածում («Դաշնակցության քաղաքականությունը») մերկաց-
վում է դաշնակցության տպագիր օրգանների փարիսեցիությունը, մասնավո-
րապես շեշտը դնելով «Հորիզոն»-ի (Թիֆլիս), «Հառաջ»-ի և «Արև»-ի (Բաքու)
վրա։ «Նեցուկ»-ը միաժամանակ քննադատում էր նաև 1917 թ. մայիսից Շու-
շիում լույս տեսնող դաշնակցական «Ապառաժ» թերթը։

Ո՞րն էր «Ապառաժ»-ի հիմնական նպատակը, հարցնում է բոլշևիկյան
պարբերականը և պատասխանում. վարաբանել բոլշևիկներին, և, ընդհակա-
ռակը, փառաբանել հիմնադիր ժողովը, մի հաստատություն, որը փաստորեն
ոչ մի հարց չէր լուծում և զբաղված էր միայն խորհրդակցություններ հրավի-
րելով ու խոստումներ տալով։

---

1 «Նեցուկ», 5, 1917 թ. սեպտեմբերի 21։

2 «Նեցուկ», 7, 1917 թ. սեպտեմբերի 28։



«Նեցուկ»-ի էջերում զգալի տեղ է գրավում կուսակցական և բանվորա-
կան կյանքի, օրվա քաղաքական երևույթների տեսական առանձին կարևորու-
թյուն ներկայացնող հարցերի լուսաբանումը։

Թերթը հմտորեն վեր է հանում բանվորների ծանր վիճակի պատճառնե-
րը և անվարան պաշտպանում նրանց շահերը։ «Բանվորական շարժումը» վեր-
նագրով ինֆորմացիայում թղթակիցը հաղորդում է, որ անհամեմատ վատա-
ցել է Քարին Տակ գյուղի մետաքսագործարանի բանվորների վիճակը. օրական
աշխատելով ավելի քան 12 ժամ, նրանք ստանում են միայն կոպեկներ։ Եվ
իբրև բանվորների համարձակ ելույթի պատասխան, գործարանատերը նրանց
զրկել է աշխատելու հնարավորությունից։ «Նեցուկ»-ը բողոքում է այդ բանի
դեմ և գործարանատիրոջից պահանջում՝ բացել գործարանը, օրական 12 ժամ-
վա փոխարեն բանվորներին աշխատեցնել 8 ժամից ոչ ավելի։

Թերթի էջերում զգալի տեղ են բռնում տեսական հոդվածները։ «Ո՞ւմ է
ձեռնտու հողի «սոցիալիզացիան» և ո՞ւմ է շահավետ բոլոր հողերի նացիոնա-
լիզացիան» հոդվածը, որ լույս է տեսել 6-րդ համարում, մատչելի կերպով
տալիս է մի շարք հարցերի պատասխանը և նշում, որ վերացնելով հողի
մասնավոր սեփականությունն ու այն բաժանելով աշխատավորներին, նրանք
կունենան լավորակ հողամասեր, որոնցից կստանան առատ բերք։ Դրա հետ
միասին թերթը բացատրում է, թե այդ ճշմարտության դեմ ինչպիսի ոռնոց են
բարձրացնում հակաբոլշևիկյան տարրերը։

Մարքսիզմ-լենինիզմի դիրքերից են գրված պրոլետարական դիկտատու-
րայի, բանվորների և գյուղացիների դաշինքի, դասակարգային պայքարի և
այլ հարցերի մասին նյութերը։

Առանձին հետաքրքրություն է ներկայացնում թերթի ութերորդ համարը[1]
(1917 թ. հոկտեմբերի 20), որը նախորդից 22 օր հետո լույս տեսավ։ Այդ
համարը հետապնդում է որոշակի նպատակ. սկսվել էին Շուշիի քաղաքային
դումայի ընտրությունները և «Նեցուկ»-ը պետք է բացեիբաց ասեր իր խոսքը,
բնութագրեր բոլշևիկներին և նրանց հակառակորդներին, պարզ բացատրեր,
թե հետին ինչ պլաններ ունեն մենշևիկները, էսեռները, դաշնակցականները և
մյուս հակահեղափոխական տարրերը։

Ընտրությունների կամպանիան սուր բնույթ է ստանում և հրապարակվում
են ընտրական մի քանի ցուցակներ։ Թերթն առաջին էջի վրա խոշոր տառերով
գրում է, որ Շուշիի աշխատավորները պետք է ձայն տան երկրորդ ցուցակի
օգտին, որի մեջ մտնում են միայն բանվորական գործին նվիրված մարդիկ։

Իր խոսքն ուղղելով բանվորներին, զինվորներին և բոլոր չքավոր գյուղա-
ցիներին, «Նեցուկ»-ը նշում է, թե ինչ հայացքներ ունեն սոցիալ-դեմոկրատ
ինտերնացիոնալիստները և որն է նրանց պայքարի նպատակը։ «Սոցիալ-դե-
մոկրատ ինտերնացիոնալիստները,— կարդում ենք թերթում,— դեմ են ժողո-
վրդական միջոցներով մղվող թալանչիական, միլիոնավոր մարդկանց ոչնչաց-
նող պատերազմին, կռվում են բուրժուաների աներևակայելի ավազակային
օգուտների և պատերազմի առաջացրած սպեկուլյանտների անկուշտ ախոր-
ժակների դեմ, պահանջում են, որ կառավարությունը բաղկացած չլինի կա-
պիտալիստներից և կալվածատերերից, որոնք հանգցնում են հեղափոխական

---

1 Մինչև վերջերս անհայտ էր այդ համարի գոյությունը. այն սիրով մեզ տրամադրեց
ընկ. Աշոտ Հովհաննիսյանը։ «Երեկոյան Երևան» թերթի 1965 թ. հունվարի 7-ի համարում մենք
հանդես եկանք «Հայ բոլշևիկյան օրգանի նորահայտ համար» հաղորդումով։

խարույկը»: Այնուհետև թերթը հրապարակում է «Մեր մունիցիպալ պլատֆորմը» ծավալուն հոդվածը, որտեղ նկարագրում է ստեղծված իրավիճակը և դեղատոմս առաջարկում ծանր դրությունից դուրս գալու համար:

Առաջնահերթ համարելով «քաղաքային ինքնավարության լրիվ դեմոկրատիզացիան», գործունեության մեջ լայն իրավունքներ ունենալը, պարենավորման ճգնաժամի լիկվիդացիան և այլն, հոդվածագիրը շեշտում է նաև ժողովուրդների բարեկամության ամրապնդման, տարբեր ազգի բանվորների և գյուղացիների ամուր դաշինքի ստեղծման անհրաժեշտությունը: «Հեղափոխական սոցիալ-դեմոկրատիան,— ազդարարում է թերթը,— ինչպես դասակարգային և ինտերնացիոնալիստական կուսակցությունն մունիցիպալ քաղաքականության շրջանում ևս պետք է եռանդուն կերպով պայքար մղի ամեն մի շովինիզմի ու նացիոնալիզմի (ընդգծումը թերթինն է—Ս. Ա.) դեմ, որ ձգտում է բաժան-բաժան անել տարբեր ազգության պատկանող բանվորներին. նա,— հեղափոխական սոցիալ-դեմոկրատիան,— միշտ և հանապազ կոչ կանի բոլոր ազգերի պրոլետարներին և կիսապրոլետարներին ի մի խմբված սոցիալիզմի կարմիր դրոշի տակ, կռիվ մղել կապիտալիզմի դեմ:

Նրա նշանաբանն է՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»:

Բարձր գաղափարայնությամբ են տոգորված նաև «Մենշևիկ պահպանողականները ու սոցիալիստ-հեղափոխականները», «Մեր հակառակորդները և մենք», «Քաղաքային ընտրությունները» և մյուս հոդվածները:

Թեև շատ կարճ տևեց «Նեցուկ»-ի կյանքը, բայց հրապարակախոսական ճկուն միջոցներով, տարբեր խորագրերի («Կուսակցական կյանք», «Պրոֆեսիոնալ կյանք», «Արտասահման», «Լրատու», «Գավառ» և այլն) տակ լուսաբանվել են ոչ միայն գավառի, այլև ամբողջ երկրի կարևոր իրադարձությունները, «Հեռագրական ոճ»-ով պատասխան տրվել աշխատավորներին հուզող հարցերին և նրանց մոբիլիզացրել՝ վերահաս վճռական պայքարի համար:

«Նեցուկ»-ը պատվով կատարեց իր միսիան: Նրա աշխատանքը բարձր գնահատեցին ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի օրգան «Բանվորի կռիվը» և Բաքվի կոմիտեի օրգան «Բակինսկի ռաբոչի»-ն: «...Գալով թերթին, նրա բովանդակության ու ուղղությանը,— գրեց «Բանվորի կռիվը»,— պետք է գովենք մեր ընկերների եռանդն ու կորովը, որ ասպարեզ գալով, բաց ճակատով անմիջական կռիվ են սկսել «դաշնակցության» դեմ:

... Ցանկանում ենք հարատևություն և հաջողություն «Նեցուկին»: Կենտրոնի գործիչները շատ մեծ կարիք ունեն նման «նեցուկների», եթե միայն վերջինները ունենան դիմացկունություն և, որ գլխավորն է, նյութական միջոց:

Ողջույն «Նեցուկ»-ին[1]:

ԱՎԱԳՅԱՆ Ս. Դ.

1 «Բանվորի կռիվը», 2, 1917 թ. սեպտեմբերի 10:



# ՄԵՐ ՄԱՄՈՒԼԸ ԵՎ ՍՓՅՈՒՌՔԱՀԱՅՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ

Հայ ժողովուրդը պատմության անողոք ճակատագրի բերումով (հատկապես առաջին համաշխարհային պատերազմից հետո) սփռվեց հողագնդով մեկ, բայց նրա գերակշռող մասը, առաջադեմ ուժերի գլխավորությամբ ու ջանքերով չկորցրեց ազգային վերածնության հույսը, որը նոր ուժով դրսևորվեց Հայրենական մեծ պատերազմի՝ Սովետական Միության ժողովուրդների հոգևոր ու ֆիզիկական ուժերի փորձության ծանր օրերին: ՍՍՀՄ ժողովուրդների անձնուրաց աշխատանքը թիկունքում, Կարմիր բանակի հերոսական պայքարը ռազմաճակատներում՝ լայն արձագանք ու պաշտպանություն գտան սփյուռքի մեր հարյուր հազարավոր հայրենակիցների շրջանում և դա հասկանալի է: Ֆաշիզմի դեմ մղվող պայքարում դեմոկրատական ուժերի համախմբման նպատակով Սովետական Միության կոմունիստական կուսակցության վարած քաղաքական կուրսը համընկնում էր ողջ հայ ժողովրդի շահերին:

Սփյուռքահայության՝ թշնամու ջախջախմանը նպաստող պայքարում մեծ դեր խաղաց Հայաստանի կուսակցական մամուլը, առաջին հերթին՝ «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերը: 1941 թվականի ամռանը Սովետական Հայաստանի հասարակայնության ներկայացուցիչները ֆաշիզմի դեմ միասնական պայքարի կոչով դիմեցին աշխարհասփյուռ հայությանը: Այդ դիմումը ոտքի հանեց ողջ հայ ժողովրդին: Հանուն Սովետական Միության պաշտպանության ծավալված հայրենասիրական շարժումը պատերազմի օրերին լայն արձագանք գտավ Ֆրանսիայի, ԱՄՆ-ի և Մերձավոր Արևելքի հայ գաղութներում: Այդ շարժմանը մասնակցեցին նաև սփյուռքահայ դեմոկրատական կուսակցությունները:

Սփյուռքի առաջադիմական կուսակցություններն ու կազմակերպությունները, հիմնականում իրենց թերթերի միջոցով, հայ գաղութներին պարբերաբար ծանոթացնում էին Սովետական Միության հաջողություններին, պատմում Կարմիր բանակի հերոսագործությունները, տարփողելով նրա ազատագրական մեծ միսիան:

Համայն հայության հայրենիքին՝ Սովետական Հայաստանին, նրա անկախությանն ու կուլտուրային անմիջականորեն սպառնացող նոր վտանգը համախմբեց աշխարհասփյուռ հայերին, որոնց հիշողությունից դեռ չէին ջնջվել առաջին համաշխարհային պատերազմի մղձավանջային հուշերը: Հայաստանի ինտելիգենցիայի՝ սփյուռքահայությանն ուղղած կոչը նպաստեց սփյուռքահայության առաջադիմական ուժերի առավել համախմբմանը: Նրանց կապերը մայր հայրենիքի հետ սկսեցին դառնալ ավելի ամուր:

Հարկ է նշել, որ պատերազմի օրերին Էջմիածինն ավելի աշխուժացրեց իր հայահավաք գործունեությունը, որին արձագանքեցին սփյուռքի հայրենասեր զանգվածները:

Պատերազմի տարիներին հայկական գաղթօջախներում ստեղծվեցին մի շարք անլեգալ ու կիսալեգալ, հաճախ՝ լեգալ հայրենասիրական կազմակերպություններ: Այսպես, օրինակ՝ Հայոց Ազգային խորհուրդը ԱՄՆ-ում, ՍՍՀՄ բարեկամների ընկերություններն Իրանում, Լիբանանում, Սիրիայում, Եգիպտոսում և այլուր, Սովետական Հայաստանի բարեկամների ընկերությունները Լիբանանում, Կիպրոսում, Հայկական ազգային ճակատը Ֆրանսիայում, Սովետական Հայաստանի պաշտպանության Լիգան Հայֆոնում, Պաղեստինում, Հայրենասերների միության հայկական սեկցիան Ռումինիայում: Հայերի հայրենական ճակատի կոմիտեն Բուլղարիայում, ուսուցչական և երիտասարդ գրասերների միությունները Հալեպում ու Բեյրութում և այլն: Սովետական Միության պաշտպանության համար սփյուռքահայությանը միավորելու գործում պակաս ավանդ չունեն նաև սփյուռքահայ լեգալ ու անլեգալ թերթերը, հատկապես «Վերածնունդը»՝ Թեհրանում և «Հակաֆաշիստական թերթը»՝ Թավրիզում:

Երբ Սովետական Հայաստանի աշխատավորները թիկունքում կատարած

դեմ մահու և կենաց պայքար մղող մեր ժողովուրդներին: «Յուրաքանչյուր հայ,— գրում է այդ օրերին Մեշխեդի հայկական գաղութի ներկայացուցիչը,— որտեղ էլ որ գտնվի, մի բան հաստատ գիտե, որ Սովետական հզոր միության ազատության ու անկախության պայքարում որոշվում է իր՝ հայ ժողովրդի բախտը...» («Коммунист» 13 օգոստոսի, 1944 թ.):

Մեշխեդի հայկական գաղութը միայն 1944 թ. Սովետական Միության պատերազմից տուժած երեխաներին նվիրեց 81750, իսկ Ատրպատականի հայերը՝ 500000 ռեալ: Ինչպես ժամանակավորապես Իրանում տեղակայված Սովետական զորքերի միջոցով, այնպես էլ այլ ուղիներով հայերեն գրականությունն ու թերթերը հասնում էին այդ երկրի ամենահեռավոր անկյունները: «Ձեր նամակներից ու գրքերից մենք իմանում ենք, թե ինչպիսի առաջընթաց է կատարել Սովետական Միության կազմի մեջ մտնող Հայաստանը... գերմանացիներին չի հաջողվի ավերել այն...»— Թավրիզի հայության անունից 1942 թ. գրում է տեղի Հայոց կուլտուրական միության վարչությունը («Սովետական Հայաստան», 13 հուլիսի, 1945): Պատերազմի ընթացքում Սովետական Միությանը և Հայաստանին սփյուռքահայության օգնությունը նյութականից զատ, ունեցավ և բարոյական մեծ նշանակություն, որը նպաստեց սփյուռքահայության և Սովետական Հայաստանի առավել մերձեցմանը: Միաժամանակ սփյուռքահայերի՝ Սովետական Միության օգտին կատարած աշխատանքը նպաստեց ուրիշ ժողովուրդների՝ մեր երկրի կողմը հակվելու գործին:

Սովետական Միությունը պարտք չմնաց սփյուռքահայությանը: Դրա լավագույն վկայությունն են պատերազմից հետո մինչև օրս կազմակերպվող ներգաղթերը:

Մեր երկրի բազմազգ ժողովուրդներից մեկը՝ հայ ժողովուրդը, ո՛չ միայն ինքը հերոսաբար մասնակցեց ֆաշիզմի դեմ մղվող պայքարին, այլև իր օրինակով ոգևորեց սփյուռքահայ բազմահազար մասսաներին: Վերջիններս կանգնեցին հակահիտլերյան կոալիցիայի դիրքերում, իրենց ավանդը ներդնելով Գերմանիայի ու նրա դաշնակիցների ջախջախման գործում: Սփյուռքահայության համախմբման և ֆաշիզմի դեմ նրանց պայքարի կազմակերպման ուղղությամբ անգնահատելի դեր խաղաց Սովետական Հայաստանի բովանդակ մամուլը:

ՀՈՎՍԵՓՅԱՆ Ա. Ա.

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՊԱՏՎԱՎՈՐ ԽՆԴԻՐԸ

Բոլշևիկյան մամուլը ծնվել ու զարգացել է կուսակցական շինարարության և պրակտիկ աշխատանքի հարցերի լուսաբանմամբ: Այն իր ամբողջ գոյության ընթացքում հանդիսացել է կուսակցության ամենասուր զենքը և անգնահատելի ծառայություն մատուցել լենինյան գաղափարների պրոպագանդման ու իրականացման ասպարեզում:

Մեր մամուլը առավել բեղմնավոր աշխատանք է կատարում այժմ՝ կոմունիստական ծավալուն շինարարության ժամանակաշրջանում, երբ սովետական ժողովուրդը իր հարազատ կուսակցության ղեկավարությամբ նորանոր հաղթանակներ է ձեռք բերում բոլոր բնագավառներում:

Կենսագործելով ՍՄԿԿ XXIII համագումարի պատմական որոշումները, շարունակելով սովետական մամուլի բազմամյա տրադիցիաները, մեր «Կոմունիզմի դրոշով» շրջանային թերթը (հատկապես վերջին ժամանակներս) նույնպես լուրջ ուշադրություն է նվիրում կուսակցական կյանքի հարցերի լուսաբանմանը:

Շրջանի կուսակցական կազմակերպություններն աճեցրել են արտադրության առաջավորների և հմուտ տնտեսավարների մի ամբողջ սերունդ, որն ազնիվ աշխատանքով արժանացել է համաժողովրդական փառքի: Մենք պրոպագանդում ենք այդ սերնդին պատկանող մարդկանց փորձը և դրա հիման վրա դաստիարակում երիտասարդությանը: Օրինակ, թերթը



նպատակային հատուկ էջեր է նվիրել կոմունիստներ Մ. Առաքելյանի (Ալագյազ սովխոզի հովիվ, սոցիալիստական աշխատանքի հերոս), Ս. Խանոյանի (Արագածի այգեգործական սովխոզի դիրեկտոր, Լենինի շքանշանակիր), Մ. Մարտիրոսյանի (Աշնակի կոլտնտեսության ծխախոտագործ, Կարմիր դրոշի շքանշանակիր) և շրջանի մյուս անվանի կոմունիստների կյանքին ու աշխատանքային գործունեությանը: 1966 թվականին շրջանի արտադրության գրեթե հարյուր առաջավորներ պարգևատրվել են կառավարական շքանշաններով և մեդալներով: Դրանց թվում կոմունիստները մեծ տոկոս են կազմում: Այնպես որ «Մեր շքանշանակիրները և մեդալակիրները» խորագրի տակ տպագրված բազմաթիվ ակնարկների, հոդվածների և թղթակցությունների զգալի մասը փաստորեն նույնպես նվիրված է կոմունիստների ավանգարդային դերի լուսաբանմանը:

Շահում ենք, երբ թերթում դրական ու բացասական օրինակները բերում ենք նույն կազմակերպությունից: Մենք այդպես վարվեցինք Մաստարայի սովխոզի սկզբնական կուսկազմակերպության հետ: «Նույն իրավունքով ու պարտքով, տարբեր սկզբունքով ու վերաբերմունքով» ընդհանուր խորագրի տակ տպագրվեց «Կոմունիստի նման, կոմունիստաբար» և «Պաշտոնի ու շահի թելադրանքով» հոդվածները: Առաջինում խոսվում է կոմունիստներ Շավարշ Փիլիպոսյանի, Վարսենիկ Պապոյանի, Նյուրա Զոփիկյանի, Սաշա Հարությունյանի մասին: Սրանք Մաստարայի այն կոմունիստներից են, որոնք բարձր են պահում կուսակցության անդամի կոչումը, աշխատանքում արդարացնում իրենց ավանգարդային դերը: Այսպես. ...Կոմունիստ Վարսիկը ֆերմայում սոսկ թռչնապահ չէ,— ասված է հոդվածում,—որն իր գործը լավ անի ու դրանով պարտավորությունը կատարած համարի: Նրա միտքը գործում է այն ուղղությամբ, թե ինչ միջոցներով սովխոզում պետք է հաղթահարել թռչնաբուծության ետ մնալը, ինչպես անել, որ վնասով տարին փակող այդ ճյուղը դառնա շահութաբեր: Շարքային կոմունիստը իր մտորումների մասին իրազեկ է դարձնում կուսկազմակերպությանն ու սովխոզի դիրեկցիային: Նրանք ուշադրությամբ են վերաբերվում Վարսիկի հայտնած կարծիքին և համոզվում, որ հավերի քանակը մի քանի անգամ ավելացնելով կարելի է ֆերման դարձնել շահութաբեր: Եվ իրոք, այդ ճանապարհով թռչնաբուծությունը դարձավ շահութաբեր և ավելի շատ օգուտ տվեց, քան սովխոզի արտադրության օգուտով աշխատող որևէ ճյուղ:

Վարսիկի և մյուսների նման Համբարձում Կնյազյանն ու Անդրանիկ Պետրոսյանն էլ Մաստարայի սովխոզի կուսկազմակերպության անդամներն են: Բայց... սրանց մոտեցումը ուրիշ էր:

Համբարձումը տարիներ շարունակ եղել է դաշտավարական բրիգադավար: Կուսակցական ժողովներում բազմիցս խոսվել է նրա ղեկավարած բրիգադում տեղ գտած թերությունների մասին: Ամեն անգամ Համբարձումը ընդունել է քննադատությունը և խոստացել՝ «սրանից հետո լավ կաշխատեմ»: Շատ «սրանից հետո»-ներ են անցնում, բայց վիճակը մնում է նույնը: Կուսկազմակերպությունը այս անգամ արդեն Կնյազյանի հարցը առանձին կարգով է քննության առնում: Նրա «որ ժամանակ տաք, կվերացնեմ թերությունները» խոսքին այլևս հավատացողներ չգտնվեցին: Նա ազատվեց աշխատանքից:

Թվում էր, թե Կնյազյանը կոմունիստին վայել շիտակությամբ և սկզբունքայնությամբ կգնահատեր կուսկազմակերպության միանգամայն արդարացի որոշումը ու շարքային աշխատանք կկատարեր սովխոզում: Սակայն ոչ: Նրա ինքնասիրությունը խիստ վիրավորված էր:

— Հարմար պաշտոն կտաք, կաշխատեմ, չէ, ինձ սովխոզում շարքային աշխատանք կատարելիս չեք տեսնի:

— Եվ իրոք,— ավելացնում է հոդվածագիրը,— Կնյազյանը մնաց անդրդվելի, երես դարձրեց սովխոզից: Ասում են նա հիմա արդեն պաշտոն է «ճարել» սովխոզում վարած պաշտոնից էլ բարձր աշխատավարձով»: Բայց դա ինչ կապ ունի կուսանդամի վարքի հետ:

Անդրանիկ Պետրոսյանին քիչ են հետաքրքրում հանրային տնտեսության շահերը: Նա նույնպես անձնական շահը ամեն ինչից վեր է դասում: Երբ սովխոզի ղեկավարները դիմում են նրան, որ բերքահավաք է, աշխատող ձեռքերի խիստ կարիք կա, պետք է գաս սովխոզում աշխատելու, նա անվրդով պատասխանում է.

— Սովխոզում աշխատելը ինձ ձեռնտու չէ...

Նման կոմունիստների վերաբերյալ թերթի քննադատական ելույթները սիրով ընդունեցին Մաստարայում: Չնայած դառնությամբ, այն ընդունեցին նաև Կնյազյանն ու Պետրոսյանը: Խմբագրությանն ուղղված պատասխանում կուսկազմակերպության քարտուղար Կ. Հակոբյանը գրել էր. «Նրանք ուղղում են թույլ տված սխալը»:

Մեր տեսադաշտում ենք պահում կուսակցական-կազմակերպական աշխատանքի հարցերը: Մեր թերթի անցյալ տարվա օգոստոսյան համարներից մեկում տպագրել էինք Աշնակի կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղար Ռ. Ղուկասյանի՝ «Գլխավորը, վճռողը որոշումների կատարումն է» հոդվածը: Քարտուղարը պատմում է, որ վերջին երկու-երեք տարում կուսկազմակերպությունն ավելի խոր ներգործու-

թյուն է ունենում կոլտնտեսության էկոնոմիկայի վրա: Նա այդ վերագրում է այն բանին, որ կապմակերպությունը ժամանակին է քննում տնտեսության կարևոր հարցերը, ընդունում է մտածված որոշումներ և, ամենակարևորը, հետևվում դրանց կատարմանը: Նշենք հոդվածում բերված օրինակներից մեկը: Կոլտնտեսության ոչխարաբուծների ցուցանիշներն այն չէին, ինչ սպասվում էր: Կուսկազմակերպության բյուրոն խորացավ գործի մեջ: Պարզվեց, որ ֆերման կարիք ունի բանիմաց հովիվների, ապահովված չէ ջրով, գոմերը քիչ են ու անբարեկարգ, ցեղի բարելավումը ինքնահոսի է թողնված: Հարցը քննության առնվեց ժողովում: Ընդունված որոշման մեջ մատնանշվեցին ռեալ միջոցներ՝ թերությունների վերացման և դժվարությունների հաղթահարման համար:

Ժողովին հաջորդեց գործը: Ամենից առաջ ֆերման համալրվեց անասնապահության գիտակ, այդ գործը սիրող կոլտնտեսականներով: Գյուղից ֆերմա անցկացվեց ջրմուղ, վերանորոգվեցին գոմերը, կառուցվեցին նորերը, ձեռք բերվեցին ցեղական խոյեր: Կատարվեց ժողովի որոշումը և ֆերմայում վիճակը աստիճանաբար սկսեց լավանալ:

Որոշումը կատարվեց, որովհետև իրենք՝ ոյոշողները, առաջին հերթին հարգեցին իրենց որոշումը ու եռանդուն ջանքեր ներդրեցին դրա կատարման համար: Կազմակերպությունը կարողացավ հաղթահարել առաջներում եղած՝ «Մենք որոշող ենք, ուրիշները՝ կատարող» սխալ մտածելակերպը: «Մենք ենք որոշել, մենք էլ պետք է կատարման օրինակ տանք»՝ ահա Աշնակի կոմունիստների աշխատանքի այսօրվա նշանաբանը:

«Մի խոսքով, կուսկազմակերպության որոշումներին գործարար բնույթ տալը և կուսակցականների ուժերը այդ որոշումների կենսագործմանը նպատակամղելն այն հզոր միջոցն է, որով լուծվում են կոլտնտեսության և գյուղի առջև ծառացած խնդիրները»,— ասում է կուսկազմակերպության քարտուղարը:

Պատկերը տրամագծորեն հակառակն է Գետափ երկաթուղային կայարանի կուսկազմակերպությունում: Այստեղ ընդունվում են ձևական որոշումներ, որոնք ժողովից հետո մոռացության են մատնվում: Այդ մասին է պատմվում «Անորոշ, անկատար որոշումներ» հոդվածում: Հոդվածագիրը նշում է, որ կազմակերպությունը նույն տարում երեք անգամ քննել է արհմիության կազմակերպչի զեկուցումը՝ «կատարած աշխատանքների մասին»: Ամեն անգամ նշել է. «Կազմակերպիչը ոչ մի աշխատանք չի կատարում»: Իսկ թե ինչ պետք է աներ կազմակերպիչը և ինչո՞վ նրան պետք է օգներ կուսկազմակերպությունը, որոշման մեջ չի երևում: Թերթը քարտուղարին խորհուրդ է տալիս հրաժարվել կուսակցական այնքան կարևոր հանձնարարությունը ձևականորեն կատարելու անթույլատրելի վարմունքից:

Կադրերի աշխատանքը ճիշտ գնահատելու սկզբունքն այն ուղեցույցն է, որի անշեղ պահպանմամբ կուսկազմակերպությունը հնարավորություն ունի անակնկալներից հեռու պահելու տնտեսության ղեկավարներին:

Դրան է նվիրված Քարակերտի սովխոզի կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովի մասին թերթի անցյալ տարվա նոյեմբերի 2-ի համարում տպագրված «Միակ ճիշտ գնահատականը» հոդվածը: Հեղինակը վկայակոչելով հաշվետվության մեջ բերված փաստերը, ամբողջ ուշադրությունը բևեռում է կադրերի ճիշտ գնահատման, նրանց դաստիարակման, աճեցման և առաջքաշման հրատապ հարցերի վրա և, ապա մեջբերում Վ. Ի. Լենինի հայտնի ցուցումը: ՍՏՈՒԳԵԼ ՄԱՐԴԿԱՆՑ ԵՎ ՍՏՈՒԳԵԼ ԳՈՐԾԻ ՓԱՍՏԱԿԱՆ ԿԱՏԱՐՈՒՄԸ՝ այս է, դարձյալ այս է, միայն այս է այժմ ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը:

Կոնկրետ փաստերով ցույց տալով բրիգադավարների և մյուս աշխատողների արժանիքներն ու թերությունները, թերթն իր այդ ելույթով կուսկազմակերպությանը հուշում է ճշտորեն կատարել լենինյան ցուցումը՝ կադրերի աշխատանքը գնահատել նրանց գործունեության փաստական արդյունքներով:

Թերթի «Կուսակցական կյանք» բաժնի մշտական հեղինակներ են կուսկազմակերպությունների քարտուղարները, պրոպագանդիստները, ագիտատորները և շարքային կոմունիստները: Նրանք իրենց հետաքրքրական հոդվածներով, թղթակցություններով ու նամակներով ոչ միայն օգնում են թերթի գաղափարական բովանդակության բարձրացմանը, կուսակցական աշխատանքի դրական փորձի ընդհանրացմանն ու տարածմանը, այլև քննադատում թերություններն ու բացերը, հուշում դրանց վերացման ուղիները:

Պատմելով կուսակցական կյանքի լուսաբանման մասին, հավակնություն չունենք տպավորություն ստեղծելու, որ իբր այդ կարևոր հարցում մենք թերություններ չունենք: Ամենից առաջ պետք է խոստովանել, որ լինում են շաբաթներ, երբ թերթի համարները լույս են տեսնում առանց «Կուսակցական կյանք» բաժնի: Կուսակցական կյանքը մենք առավել կամ պակաս չափով կանոնավոր ենք լուսաբանում միայն կուսօրգանների հաշվետվությունների և ընտրությունների ամիսներին: Երկրորդ, թերթը թերությունների մասին գրում է քիչ և մակերեսային: Մինչդեռ թերությունների խոր վերլուծությունը և օբյեկտիվ քննադատությունը



պակաս ուսանելի չեն, քան կուսակցական աշխատանքի դրական փորձի մասին գրածները:

Սխալ կլիներ չնշել նաև խմբագրության աշխատողների թերացումը: Կուսակցական բաժինը, եթե կարելի է այսպես ասել, յուրաքանչյուր պարբերականի դժվարին արտադրամասն է, դժվարին, բայց պատվաբեր ու պատասխանատու: Ամեն գրիչ ունեցող չէ, որ կարողանում է հանդես գալ այդ թեմայով: Կուսակցական թեմաներով հոդված գրելը (նաև մշակելը) ժուռնալիստից և հեղինակից պահանջում է տեսական որոշակի պատրաստականություն, կրքոտ գաղափարայնություն, կուսակցական շինարարության հարցերի խոր իմացում, և տվյալ կազմակերպության վիճակին իրազեկություն: Թերևս դրանով է բացատրվում այն հանգամանքը, որ մեր խմբագրության որոշ աշխատողներ հաճախ դժվարանում են հանդես գալ կուսակցական թեմաներով:

Այդ բանը գիտակցում են իրենք՝ լրագրողները, իսկ դժվարությունների գիտակցումը նրանց հաղթահարման լավագույն երաշխիքն է:

ՂԱԶԱՐՅԱՆ Ղ. Պ.

*Թալինի շրջանի «Կոմունիզմի դրոշով» թերթի խմբագիր*

# ՀՈՒԶՈՂ ԹԵՄԱ

Երբ Բռնակոթում դաշնակ պարագլուխները գյուղացիներին հավաքում են «մշակելու» և իրենց հայ ազգի շահերի իսկական արտահայտիչներ ներկայացնելու համար, ամբոխն աղեկոծվում է. «Մենք սարու ռուս ենք ուզում», «Մեր բարեկամը ռուսն է...»: Երբ 1921 թվականի ձմռանը դաշնակները փորձում են դատաստան տեսնել Ախլաթյանի կուսբջջի քարտուղար Հակոբ Տանինի հետ, նա հանգրվանում է հարևան ադրբեջանական Կպլշաֆագ գյուղի բնակիչ քիրվա Թեմուր Հասանովի բնակարանում, ուր երկու ամիս մնում է՝ ոնց հարազատ հարկի տակ:

Վաղուց ի վեր ծնունդ առած հայ և ադրբեջանական ժողովուրդների բարեկամության այս դրվագի մասին պատմել է շրջանային թերթը: Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար մղվող պայքարում, սովետական իշխանության տարիներին համատեղ աշխատանքում այդ բարեկամությունը խորացավ, ծիլեր արձակեց և դարձավ շրջանի աշխատավորության բոլոր հաջողությունների հիմնական պայմաններից մեկը:

«Որոտան» թերթը բարեկամությունն արտացոլող հետաքրքրական նյութեր է հրապարակում հայերի, ադրբեջանցիների, ռուսների, ուկրաինացիների և այլ ազգերի ներկայացուցիչների ջերմ փոխհարաբերությունների մասին:

Մեծ հոկտեմբերի հոբելյանական տարին մի տեսակ ամփոփիչ տարի էր նաև ժողովուրդների բարեկամության ասպարեզում ձեռք բերած նվաճումների համար: Թերթն այդ նպատակով հրապարակել է ակնարկներ, պատմվածքներ, հոդվածներ և այլ նյութեր, որոնց միջոցով դրսևորել է սովետական տարբեր ազգությունների ներկայացուցիչների համատեղ աշխատանքի պայքարը և փոխադարձ օգնությունը: Այդ առումով ուշագրավ է Բաբկեն Խուդավերդյանի «Փորձություններով անցած բարեկամություն» ուսումնասիրությունը, որում հետաքրքրական փաստեր ու օրինակներ են բերվում 1918—1921 թվականների հայերի ու ադրբեջանցիների սերտ կապերի մասին:

Հոդվածագիրը պատմում է, որ 1918 թվականի ամռանը, օսմանյան արյունոտ յաթաղանից փախած մի խումբ արևմտահայեր, Սոֆուլուի ձորում հարձակման են ենթարկվում մի քանի մուսավաթականների կողմից: Մի հայ կին սարսափից բարուրով երեխային թողնում է Հաչաչայ գետի ափին ու փախչում: «Ախլաթյանցիների մանկանը գտնելու համար դիմում են հարևանների օգնությանը,— գրում է հեղինակը,— Կպլշաֆագցի ավագները համագյուղացի Իմամալի Ալիևին... շտապ ուղարկում են դեպքի վայրը: Նա գտնում է երեխային, բերում Ախլաթյան ու տալիս մորը»:

Կամ նույն հոդվածից մի այլ օրինակ. «Բռնակոթ գյուղացի Սարգիս Աղայան, Մուրխուզ գյուղի սարում ավանակի համետի մեջ նկատում է կուչ եկած 5—6 տարեկան մի ադրբեջանուհու... Բերում է գյուղ: Ամբողջ 1920 թվականի ձմռանը երեխային պահում են, իսկ գարնանը... ուղարկում Երևանի որբանոցը»:

Այս և տպագրված բազմաթիվ այլ նյութերով ի հայտ է բերվել շրջանի հայ և ադրբեջանցի աշխատավորների անշահախնդիր բարեկամությունը սոցիալիստական հեղափոխության նախօրյակին, նրանց համատեղ պայքարը նոր կարգերի հաստատման ու ամրապնդման, սոցիալիզմի կառուցման համար:

Սակայն, այդուհանդերձ, թերթը կարիք չի ունեցել տուրք տալու միայն պատմական անց-

յալին, եղած գնացածին: Սիսիանի կյանքն այնքան հարուստ է ժողովուրդների բարեկամության վառ դրվագներով, որ ամենուրեք, ամեն պահ կարելի է հիանալի օրինակներ բերել:

Ամենից առաջ, դա ընդգծելի է աշխատանքային ճակատում: Հայն ու ռուսը, ուկրաինացին ու ադրբեջանցին են իրար թև ու թիկունք վանգնում, Որոտանի կիրճում լույսեր են վառում, սանձում գետի փրփրաբաշ ջրերը, փորում տասնյակ կիլոմետր թունելներ... Նրանք Դաստակերտի հանքահորերից թանկարժեք մետաղ են կորզում, կոլտնտեսություններում ու սովխոզներում գերակատարում արտադրական պլանները:

«Մեր ավանը ծնվել է ամայի տեղում... Նոր են նաև մեր ավանի մարդիկ,— թերթի անցյալ տարվա հունվարի 18-ի համարում պատմում է Շամբի ավանային սովետի նախագահ Սուրեն Սահակյանը,— 560-ն են նրանք՝ 15 ազգությունների ներկայացուցիչներ: Եթե ասենք, որ ավանն իր մեջ ամփոփում է մեր բոլոր եղբայրական հանրապետությունների ներկայացուցիչներին, սխալված չենք լինի:

Դա մեկ հպարտության զգացմունք է պատճառում: Չէ՞ որ բարեկամության դաշինքով է, որ կառուցվում են Տաթևի, Շամբի հիդրոկայանները, որ քարտեզի վրա ծնունդ է առել մեր ավանը»:

Այո, նրանց ձեռքերով է: Այդ մասին այնքան ջերմությամբ է խոսում նաև «Թունելում» ակնարկը: Տաթևգէսցիները № 1 թունելում խոռացել են 4650 մետր: Այդ ճանապարհին ինտերնացիոնալ կոլեկտիվը անթիվ դժվարություններ է հաղթահարել, անակնկալների հանդիպել (փլուզումներ, ստորգետնյա հոսք և այլն): Նրանց մեջ է Բելոռուսիայից եկած Աննա Գալկովսկայան: «Աննան է,— գլխով է անում շինարարության պետը,— հինգ տղամարդու գործ է անում», իսկ Աննան այդ շոյանքից այնքան է շիկնել որ նույնիսկ նկատելի է թունելի աղոտ լույսի մեջ»:

Այստեղ է նա ռուս Ֆեոդոր Ախլուստինը և ուրիշներ: «Իսկ Ֆրանգյուլ Սամսոնյանը տեղացի է: Հողի աշխատավոր է: Երբ շինարարները Շամբում «վրան կարկեցին», Ֆրանգյուլը որոշեց միանալ նրանց: Եկավ, նրանց հետ մի հուժկու կոլեկտիվի մեջ ձուլվեց...»:

Շամբգէսի շինարարների կոլեկտիվն էլ է ցեմենտվել տարբեր ազգություններից: Օլեգ Կրիխտան Ուկրաինայից է: Այստեղ են նաև Անատոլի Օսիպենկոն, Սուրեն Թևոսյանը, Նիկոլայ Վելիգուրան, Կարլ Վունդերը, Մուսա Բաբաշևը: Նրանք են սկսել Որոտանի ամենախոշոր կառույցի շինարարությունը և նրան տվել «Բարեկամության հիդրոկայան» անունը,— պատմում է «Այստեղից է սկսվել» ռեպորտաժը:

Շաքին և Վաղուդին ինտերնացիոնալ գյուղեր են, որտեղ հնուց ի վեր համատեղ ապրում, աշխատում են հայերն ու ադրբեջանցիները, փոխադարձաբար ուրախանում հաջողությունների համար: Հասկանալի է, որ թերթը առավել ուշադրություն պետք է դարձներ այդ բանի վրա: Եվ, իսկապես: Իրար հետ քանի՞-քանի տարի է սարերի հովիվ են Վաղուդիի կոլտնտեսության անդամներ Բախտան Գալստյանն ու Բասան Բուդաղովը: Նրանք մոտ ընկերներ են, աշխատում են հարազատ եղբայրների նման: Նրանք միաժամանակ մրցակիցներ են: Մրցությունը նրանց միշտ հիանալի արդյունքի է հասցնում: Եվ ահա, անցյալ տարի, Հայաստանի Գերագույն սովետի ընտրությունների ժամանակ Բախտանը, իր ընկերների հետ դեպուտատության թեկնածու է առաջադրում Հասանին:

Թերթը նաև այն մասին է պատմում, որ «Մի աշխարհ է Մոհլաթ Ալիևի վրանը... Ընդամենը երեք տարի է, ինչ Մոհլաթը իր եղբոր՝ Իսկանդարի հետ հովվություն է անում Սիսիանի սովխոզում... Նույնն են սարերը, ամեն ինչ նույնն է, միայն հովվի ընկերներն են նոր՝ Հովհաննես Ղազարյանը, Սարգիս Հովակիմյանը... Ու նրանք իրար հասկանում են կես բերան կրույցից, ձայնից (7 հունիսի 1967 թ.):

Ասենք իրենք՝ շրջանում բնակվող տարբեր ազգությունների ներկայացուցիչներն էլ են թերթում հանդես գալիս և վկայում անքակտ բարեկամության մասին: «Մեր ընտանիքի մասին չէ, որ ուզում եմ պատմել,— գրում է Նինա Կրիխտան,— այլ մեր շենքի, մեր մուտքի բնակիչների, որոնք թեև տարբեր տեղերից են, այլ լեզուներով են խոսում, սակայն կարծես մի ընտանիքի անդամներ լինեն: Մեր ընտանիքը համեմատաբար վերջերս է եկել ավան: Բայց Շամբի բնակիչները այնպիսի հոգատարությամբ շրջապատեցին, որ բոլորովին չենք զգում, թե հեռվից ենք եկել... Ուկրաինացի Վիկտոր Զադնեպրյաննի, ռուս Նիկոլայ Դոբրովոլսկի, հայ Խաչիկ Բարսեղյան... Ահա մեր մուտքի մարդիկ... Մենք սրտով ու հոգով իրար հետ ենք...» (8 հունվարի 1967 թ.):

Իսկ սիսիանցիները ինչպիսի՜ հուզմունքով ընթերցեցին «Այնտեղ հանգչում է լեռնցին» ակնարկը, որը պատմում է ռոստովյան հողում ընկած իրենց հայրենակից Պողոս Կարապետյանի ու նրա հետ ընկածների հիշատակին կանգնեցված եղբայրական հուշարձանի, այդ կապակցությամբ Ապանասկինոյի պիոներների գրած հոգեցունց նամակի մասին:

Շրջանի հայ և ադրբեջանցի աշխատավորների սերտ համագործակցությունն իր վառ արտահայտությունն է գտել նաև սոցիալիստական մրցության մեջ, որը սիստեմատիկաբար լուսաբանվում է թերթի էջերում: Որպես տրադիցիա, հայկական գյուղի կոլտնտեսությունը կամ սովխոզը մրցում է ադրբեջանականի հետ: Այսպես, Նորավանի սովխոզը մրցում է Սոֆլուի հետ, Լծենի կոլտնտեսությունը՝ Ուռուտի, Դարբասը՝ Վաղուդիի և այլն: Մրցակիցները հաճախակի այցելում են իրար, ուսումնասիրում իրերի վիճակը, ընդօրինակում առաջավոր փորձը, հարկ եղած դեպքում արժեքավոր, գործին օգնող դիտողություններ անում, իրար օգնում սերմացուով, պահեստամասերով և անհրաժեշտ այլ նյութերով:

Վաղեմի մրցակիցներ են Նախիջևանի ինքնավար հանրապետության՝ Նախիջևանի և Սիսիանի շրջանները: Երկու հարևանների ներկայացուցիչները տարվա ընթացքում մի քանի անգամ այցելում են իրար, ուսումնասիրում մրցության ընթացքը, բարեկամական հանդիպումներ ունենում կոլտնտեսությունների ու սովխոզների, մյուս բնագավառների մարդկանց հետ, հարկ եղած դեպքում, մասնավորապես բերքահավաքի ժամանակ, իրար օգնում կոմբայնային ագրեգատներով:

Անցյալ տարվա ապրիլին թերթը հրապարակել է մրցակիցների պայմանագիրը, դրան հաջորդել են մրցության ընթացքն արտացոլող բազմաթիվ նյութերը:

Բարեկամության վառ տոնի վերածվեց նախիջևանցիների փոխադարձ այցը Սիսիան՝ անցած տարվա ամռանը: «Որոտանը» իր հուլիսի 13-ի համարը նվիրեց այդ կարևոր իրադարձությանը: Բարեկամություն,— այսպես է սկսվում թերթի առաջնորդող հոդվածը,— մի հատիկ բառ է, բայց ինչքան խորիմաստ ու բովանդակալից: Այն մեր առաջընթացի երգն է, այն մեր երկրի լիության աղբյուրն է, մի փորձված ուղի՝ ապագայի կերտման ճանապարհին: Տարիներ են եկել ու անցել: Նախիջևանի ինքնավար հանրապետության և Սիսիանի շրջանի աշխատավորների բարեկամությունը, մրցության կերպարանք ստացած, հաստաբուն կաղնու նման հզոր արմատներ է գցել ու կանաչ ճյուղեր արձակել...»:

«Շարկ Կափսի» թերթի բաժնի վարիչ Տ. Կուրբանովը, թղթակիցներ Ա. Ախունդովը, Զ. Մահմեդովը, Ի. Նաղիևը, Թոշակառու Հ. Մովսիսյանը թերթում պատմում են Նախիջևանի շրջանի տնտեսությունների, մարդկանց ձեռք բերած հաջողությունների մասին:

Խոսում են նաև բազմաթիվ լուսանկարները:

Հուլիսի 21-ի համարում արդեն ընդարձակ ինֆորմացիա է տպագրվել մրցակիցների հանդիպումների, ինչպես նաև բարեկամության հանդիսավոր երեկոյի մասին, որին ներկա էին նաև Գորիսի և Հրազդանի շրջանների աշխատավորների ներկայացուցիչները:

Թերթը նյութեր է հրապարակել Սիսիանի և Նախիջևանի Շխմահմուդլու սովխոզների մրցության, շրջկենտրոնում վերջերս ստեղծված բարեկամության համալսարանի գործունեության մասին:

Երրորդ տարին է, ինչ «Որոտանը» շարունակում է «Մեր միութենական հանրապետությունները» խորագրի տակ նյութերի հրապարակումը: Խմբագրության ստեղծագործական կոլեկտիվը դրանով իր առջև խնդիր է դրել՝ շրջանի աշխատավորությանը ծանոթացնելու եղբայրական հանրապետությունների տնտեսական, կուլտուրական շինարարությանը, արվեստին, գիտությանը, ցույց տալու նրանց միասնությունը, սերտ կապերը հայ ժողովրդի հետ և այլն: Նման ամբողջական համարներ են նվիրվել Ռուսաստանի ֆեդերացիային, Ղազախստանին, Վրաստանին:

Թերթի անցյալ տարվա հունվարի 8-ի ամբողջ համարը նվիրել ենք Լիտվային: Առաջին էջը սկսում է Գեղամ Սարյանի՝ «Բաժակ եղբայրության» բանաստեղծությամբ: «Հանրապետության անցյալը, ներկան և ապագան» հոդվածով հանդես է եկել հանրապետության Մինիստրների սովետի նախագահի տեղակալ ընկ. Կ. Կայրիսը: Նյութեր են հրապարակված նաև հանրապետության կուլտուրայի, արվեստի և այլ բնագավառների մասին:

«Արևի, «սպիտակ ոսկու» երկիր»,— այս խորագիրն է կրում Տաջիկստանին նվիրված համարը (28 ապրիլի, 1967 թ.):

Եղբայրական Ադրբեջանի կյանքն արտացոլող համարը սկսվում է հանրապետության գերբով և սովետական ժողովուրդների բարեկամությունը խորհրդանշող 26 կոմիսարների հուշարձանով, որը խոյանում է Բաքվի նույնանուն պուրակում:

Այսպես է կատարում «Որոտան» թերթը պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների լենինյան բարեկամության գաղափարների պրոպագանդման իր պարտականությունը:

Չգերագնահատելով արդեն կատարվածը, մենք առաջիկայում ևս մեր աշխատանքներում մեծ տեղ կհատկացնենք ժողովուրդների բարեկամության թեմայի լուսաբանմանը՝ կապված Վ. Ի. Լենինի ծննդյան 100 ամյակի և Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյակի հետ:

ԳԱՍՊԱՐՅԱՆ Բ. Ա.

*Սիսիանի «Որոտան» շրջանային թերթի խմբագիր*

# ԳԼԽԱՎՈՐԸ՝ ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆ Է

Ժամանակն անցնում է ու չես նկատում, թե ինչպես բառ-առ-բառ հյուսված տողերը արդեն թերթի հաստափոր կոմպլեկտ են կազմում: Ու հիմա կրկին թերթում ենք այն: Ամեն մի տող, ամեն մի հոդված իր ստեղծման պատմությունն ունի: Եվ դա պատմություն է այսօրվա կյանքի, մարդու, նրա գործերի մասին:

... Գյուղում կոմերիտական ժողով է: Ֆերմային հարկավոր են անասնապահներ: Կոմերիտական Ռապմիկ Մելքոնյանը առաջինն է խնդրում իրեն ուղարկել ֆերմա՝ շարքային աշխատանքի, որպես հորթապահ: Մոտավորապես այս է փոքրիկ ակնարկի («Կոել է լույս» «Արագած», № 25) համառոտ բովանդակությունը, բայց ոչ գլխավոր թեման: Թեման կոլտնտեսային աշխատավորի ընտանիքի առօրյան է, որն իր պատմությունն ունի: Ինչպես բոլոր ծերերը, նրա պապն էլ չիբուխ է ունեցել: Ծխել է դառնորեն համբերանքի չիբուխը և խոժոռել առանց այն էլ ակոսված դեմքը... «Ընտանիքի յուրաքանչյուր անդամ, սկսած ծեր պապից, վերջացրած դպրոցը նոր ավարտած Ռապմիկով, կյանքի իրենց ուղին են անցել, կրել միջավայրի ու ընտանիքի ազդեցությունը, հասկացել աշխատանքի գինը, զգացել նրա քաղցրությունը: Եվ ակնարկում աշխատավոր մարդու կերպարի լուսաբանումը, նրա կազմավորումը ակտիվորեն ուղեկցվում է հարցի սոցիալական կողմի հետ:

Սարալանջը լեռնային գյուղ է: Այստեղ մարդիկ իրենց հիմնական եկամուտը ստանում են կոլտնտեսությունից: Իսկ կոլտնտեսությունը հարուստ է: Ամեն մի աշխօրին տասը կիլոգրամ հաց է տվել: «Մելքոնյանների ընտանիքը անցած տարի այնքան հաց ստացավ,—կարդում ենք ակնարկում,— որ ամբարը փոքր եղավ այն տեղավորել: Դրան ավելացավ նաև յուղ 200 *կգ*, պանիր՝ 120 *կգ*, դրամ 1320 ռուբլի...»: Նոր հասարակարգի մարդու բնավորության գծերի ձևավորումը, նրա գործունեությունը և վերաբերմունքը աշխատանքին, նյութական և հոգևոր պահանջմունքները, թուլությունները և սխալները՝ ահա Արագածի» առօրյա կենտրոնական թեման:

Կուսակցության նոր ծրագրում սպառիչ կերպով շարադրված է կոմունիստական հասարակարգ կառուցողի բարոյական կոդեքսը, որի գլխավոր նշանաբանն է՝ մարդը մարդուն բարեկամ է, ընկեր, եղբայր: Նոր սերնդի մոտ մարդկային այդ լավագույն գծերի դաստիարակությունը մամուլին ներկայացվող կարևորագույն պահանջն է: Փնտրել, գտնել լավագույնը, գեղեցիկը, նոր մարդուն հատկանշականը, որն իր օրինակով ավելի կենդանի է— ահա թերթի աշխատողների առջև դրված կարևոր խնդիրներից մեկը:

«Նրանց բարեկամությունը» (№ 6),— այսպես է կոչվում Գր. Ղափանցյանի անվան դըպրոցի 7-րդ դասարանի աշակերտների բարեկամական կապերի մասին գրված ակնարկը: Պիոներուհի Յուղաբերը և յակուտուհի Կալիսֆեն երկու տարի է նամակագրական կապերի մեջ են: Ընկերուհու գրած նամակներից Յակուտիայի մասին Յուղաբերը շատ բան է իմանում: Դըպրոցական պարապմունքները նոր էին սկսել, երբ Յուղաբերը ստացավ հեռավոր ընկերուհու հերթական նամակը... Երբ ընթերցեց նամակը, տխրության մի ամպ իջավ նրա դեմքին: Կալիսֆեն հիվանդ էր: Բժիշկները խորհուրդ էին տվել միրգ շատ օգտագործել: Այլևս մտածելու հարկ չկար: Ջոկատի խորհրդի նիստում որոշվեց Աշտարակի արևահամ մրգերով լի մի ծանրոց ուղարկել Յակուտիա...»: Կալիսֆեն հերթական նամակներից մեկում խորին շնորհակալություն էր հայտնում իր հայ բարեկամներին և հաղորդում, որ ինքը կազդուրվել է և արդեն դպրոց է հաճախում:

«Կյանքի ճամփաներով», (№ 4), «Քո սրտի ուշածի պես, մայրիկ» (№ 13) ակնարկները պատմում են դպրոցը մեկ տարի առաջ ավարտած պատանիների ու աղջիկների կյանքի ուղիների մասին: Նրանցից «...Մեկից գալիս է ընդարձակ տարածությունների շունչը, մյուսի աչքերում զգացվում է գրքերի աշխարհի մեղմ ծփանքը, իսկ երրորդը՝ սովետական բանակի շարքերում արթուն հսկում է մեր անդորրը»:

Նոր մարդու դաստիարակության ուղղությամբ գյուղում հսկայական է մտավորականության դերը: Վերտառությունը հենց այդպես էլ կոչվում է՝ «Մտավորականը գյուղում»: Ագարակի դպրոցի դիրեկտոր, գյուղի «Գիտելիք» ընկերության նախագահ, կոլտնտեսության կուսկազմակերպության պրոպագանդիստ Գուրգեն Հովսեփյանի նախաձեռնությունների և անհանգիստ բնավորության մասին մոտավոր պատկերացում տալու համար հարկ կլինի թերևս լրիվ վերապատմել «Պարտքի զգացումով» մեծածավալ ակնարկը (№ 108): Գյուղում չկա մի լավ գործ, որին «նա չմասնակցի»: Իսկ ակնարկն ավարտում է. «Օրդե (Հովսեփյան) տատիկի ասածով Գուրգենը ամեն ինչի կհասնի: Համագյուղացիների սրտերի ուզածի պես կազմակերպեց հավաքարարուհի, բոլորի կողմից հարգված կնոջ մեծարման երեկոն: Առաջարկեց, որ այդպիսի պատվի արժանացնեն նաև հովիվ Պողոս Պողոսյանին, կոլտնտեսական Հակոբ Գրիգորյանին... կկազմակերպի, գլուխ կբերի, ինչպես դպրոցի երկրորդ հարկի շինարարությունը: «...Մարդն ինքն իրեն նպատակ չէ, նա ապրում է ուրիշների մեջ, ուրիշների համար»: Վ. Գ. Բելինսկու այս խոսքերը պարտքի խոր զգացումով է ընդգծել Գուրգեն Հովսեփյանը իր օրագրում»:

Գյուղի մարդկանց, առանձնապես երիտասարդ սերնդի դաստիարակության ուղղությամբ մտավորականության կատարած լավ գործերի մասին են պատմում նաև «Լիաբուռ սերմնացանը» (№ 77), «Մանկավարժը, պրոպագանդիստը» (№ 142) ակնարկները և ուրիշ շատ նյութեր:

Անցած տարին սովետական ժողովրդի համար հոբելյանական էր: Եվ թերթը «Նրանք պայքարել են սովետական իշխանության համար», «Անցյալի էջերից», «Մեր անվանի հայրենակիցները» վերտառությունների տակ պարբերաբար նյութեր է տպագրել՝ նվիրված սոցիալիզմի կառուցման առաջին հիմնաքարերը դնող, մեր կեսդարյա կյանքը կերտող մարդկանց պայքարի ուղուն, նրանց կերպարի արտացոլմանը: Այդ նյութերը, որոնց մեծ մասը ջերմ գրված ակնարկներ են, իրենց պատմական իրողությամբ և ներգործության ուժով նոր սերնդին շատ բան են հաղորդում:

Գյուղի երիտասարդության ֆիզիկական դաստիարակության հարցը թերթի կենտրոնական թեմաներից է: Գրեթե բոլոր համարներում կարելի է հանդիպել սպորտային լուրերի, հոդվածների, թղթակցությունների: Բայց թերթը չի սահմանափակվել սոսկ հարցերի առաջադրմամբ և փաստերի արձանագրումով: Փարպի գյուղը, որի ըմբիշների համբավը վաղուց է դուրս եկել հանրապետության սահմաններից և ուր այժմ կան բազմաթիվ չեմպիոններ, սպորտի վաստակավոր կոչում ունեցողներ, իր սպորտսմեններով շատ անգամ է գյուղական երիտասարդության համամիութենական մրցումներում բարձր պահել մեր հանրապետության պատիվը: Բնորոշ է այն, որ երիտասարդ սպորտսմենները միաժամանակ արտադրության առաջավորներ են և շարունակ այնտեղ են, ուր գործերը ծանր են, ուր նրանց կարիքն է զգացվում:

Սպորտային այդ համերաշխ կազմակերպության աշխատանքի մասին թերթը մի քանի անգամ պատմել է ընթերցողներին, պայքարել նրանց փորձը տարածելու նաև մյուս գյուղերում: Ու դա թերթին հաջողվել է: Այժմ Ոսկեվազ, Կարբի, Եղվարդ գյուղերում սպորտային սեկցիաներ են գործում, որոնք լրիվ ընդգրկել են երիտասարդությանը: Ու հիմա գյուղական երիտասարդության համար մեծ իդեալ է հանդիսանում «բազում ծափեր կորզած, հաղթանակների հաճույքն ըմբոշխնած» միշտ համեստ, «Ոսկե մեդալի ասպետը»՝ փարպեցի Նազար Ալբարյանը («Արագած» № 93), որը գյուղ բերեց ՍՍՀՄ ժողովուրդների *IV* սպարտակիադայի ոսկե մեդալը և ներկայումս նախապատրաստվում է երկրի հավաքականի կազմում մասնակցելու աշխարհի օլիմպիական խաղերին:

Թերթը միաժամանակ սուր քննադատություն է ծավալում մեր հասարակությանը խորթ բարքերի դեմ, մերկացնում առանձին մարդկանց, երիտասարդության շրջանում նկատվող իրավախախտումները, անվայել արարքները. դրանց են նվիրված «Անհաշտ պայքար մղել հակահասարակական երևույթների դեմ» (№ 101), «Աշակերտները վրդովված են» (№ 130), «Պատանին հանցագործ չպետք է դառնա» (№ 151), «Հանդիպում... գինու և կոնյակի հետ» (№ 75) հոդվածներն ու թղթակցությունները: Արտաշավան գյուղի նախկին բնակիչ Արմենակ Կարապետյանը, որն արդեն երեսունն անց երիտասարդ է և պորտաբույծ կյանք վարելու համար մի անգամ դատվել է, երբեք հանրօգուտ աշխատանքով չի կբաղվել.— ասվում է «Տեղամասի պետը» ֆելիետոնում (№ 18, 1968 թ.): Ու չես կարող զզվանք չզգալ, ծանոթանալով այդ տիպի խարդախ գործողություններին, որը մի տեղ «տեղամասի պետ է», «մի տեղ՝ ասածու հյուր» ու «ազաբ տղա». նա աջ ու ձախ խաբում է մարդկանց, որի համար կրկին կանգնեց դատարանի առաջ:

Գրել մարդկանց ու նրանց գործերի մասին, լավի, գեղեցկի օրինակով դաստիարակել մյուսներին, միաժամանակ դատապարտել այն ամենը, ինչը խորթ է և խանգարում է մեր առաջընթացին: Ահա թերթի կոչումը, նրա խնդիրն այսօր և վաղը:

*ՆԻԿՈՂՈՍՅԱՆ Կ. Ա.*

*Աշտարակի շրջանի «Արագած» թերթի խմբագիր*

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ

## ՃՇԳՐՏՄԱՆ ԿԱՐՈՏ ՓԱՍՏԵՐ

«Բանբեր Հայաստանի արխիվների» ամսագրի 1963 թվականի № 1-ում տպագրվել է Ա. Գևորգյանի Զանգեզուրի բոլշևիկները սովետական կարգերի հաստատման համար մղված պայքարում (1917—1921) խորագրով հոդվածը, որի թերությունների ու սխալների մասին 1964 թ. № 3-ում հանդես է եկել Ա. Բ. Լալայանը՝ Զխեղաթյուրել պատմական դեպքերը վերնագրով հոդվածով։ Այն հրապարակվել է Զանգեզուրի և Ղարաբաղի կուսկազմակերպության ընդհատակայինների և 1920—1921 թթ. քաղաքացիական կռիվների մասնակից մի շարք կոմունիստների հետ քննարկելուց հետո։

Սակայն մեզ խիստ զայրացրեց Ա. Գևորգյանի Ո՞վ է խեղաթյուրում պատմական դեպքերը վերնագրով պատասխան հոդվածի հրապարակումը նույն ամսագրի 1965 թվականի № 3-ում։ Ավելին, «Բանբերի» խմբագրությունն առանց ստուգելու Ա. Գևորգյանի փաստարկումների ու վկայակոչումների ճշմարտացիությունը, հոդվածի վերջում ծանոթության կարգով հայտարարեց. «Խմբագրությունը համոզիչ է գտնում ընկ. Ա. Գևորգյանի փաստարկումները և բանավեճը համարում է ավարտված»։

Մենք՝ ընդհատակյա կուսակցական աշխատանքի և քաղաքացիական կռիվների մասնակիցներս, համաձայն չլինելով դրա հետ, ցանկանում ենք մեր խոսքն ասել՝ մեզ լավ հայտնի իրադարձությունների մասին։

Ա. Գևորգյանը գրում է, որ 1920 թ. հունիսին XI Կարմիր բանակի XXXII դիվիզիայի զինկոմ Կարլ Ռատնեկի գլխավորությամբ Ղարաբաղից Զանգեզուր հետախուզության ուղարկված հեծյալ ջոկատը Տեղ գյուղից վերադառնալիս դաշնակցականների կողմից ոչնչացվել է[1], մինչդեռ ողջ ջոկատը Տեղ գյուղի կոմունիստներ Հ. Հակոբյանի, Լ. Ափունցի և Հ. Բարխուդարյանի ուղեկցությամբ հաջող վերադարձել է իր զորամասը։

Ա. Գևորգյանը չեղած բաներ է վերագրում Շուշի քաղաքի կոմունիստական կազմակերպության օրգան «Ննցուկ» թերթին և նրա խմբագրությանը, սխալներ թույլ տալիս Գորիս քաղաքի և նրա կադրային զումարտակին կից կոմբջիջների ստեղծման հարցերում, ոչ ճիշտ տեղեկություններ հաղորդում կոմունիստներ Ա. Ղարագյոզյանի, Ա. Տեր-Ղազարյանի և Ս. Օհանջանյանի մասին, առասպելներ պատմում չեղած «Կարմիր Զանգեզուր» ընդհատակյա թերթի մասին։

Ինչպես 1963 թ. հոդվածում, այնպես էլ 1965 թ. գրած առարկություններում Ա. Գևորգյանը հայտնում է այն կարծիքը, որ իբր Ռուսաստանի կոմունիստական կուսակցության՝ Զանգեզուրի ընդհատակյա կազմակերպական կոմիտեն ստեղծվել է Գորիսում, 1919 թ. գարնան սկզբներին, իսկ կենտրոնական (գավառային) կոմիտեն՝ 1920 թ. մայիսի 5-ին։ Այդ ապացուցելու համար նա վկայակոչում է Կ. Ղազարյանի և Մ. Ներսիսյանի կազմած Առաջին մասսայական հեղափոխական շարժումները Հայաստանում գրքի 342-րդ էջը, Ծ. Աղայանի Հոկտեմբերյան ռեվոլյուցիան և հայ ժողովրդի ազատագրումը աշխատության 258-րդ էջը և Ս. Սողոմոնյանի Քաղաքացիական կռիվները Զանգեզուրում 1920—1921 թթ. աշխատության 23-րդ էջը։

Վկայակոչված աղբյուրներն ապացուցում են, որ կոմունիստական կուսակցության Զանգեզուրի Կենտկոմը գոյություն է ունեցել 1920 թվականի մայիսի 5-ի խորհրդակցությունից առաջ։

1963 թ. հոդվածում Ա. Գևորգյանն իրավամբ նշում է կոմունիստական կուսակցության Զանգեզուրի Կենտրոնական կոմիտեի 1920 թ. փետրվարի 15-ի ընդլայնված նիստի խոշոր նշանակությունը Զանգեզուրի գավառի հեղափոխական պայքարի կազմակերպման գործում. սակայն, եթե Ա. Գևորգյանն այլ աղբյուրների փոխարեն օգտագործեր Զանգեզուրի Կենտկոմի այդ նիստի արձանագրությունը[1], որի մեջ է կազմակերպական հարցերի մասին կենտկոմի նախագահ Երեմիա Բակունցի զեկուցման տեքստը, ապա իր համար պարզ կլիներ, որ գոյություն ունեցող Կենտրոնական կոմիտեն ստեղծվել է ոչ թե 1920 թ. մայիսի 5-ին, այլ 1919 թ. սկզբներին և կոչվել է ՌՍԴԲԿ(բ) Զանգեզուրի կազմակերպության Կենտրոնական կոմիտե։ 1920 թ. մայիսի 5-ին կենտկոմի կազմը լրացվում է երկու հոգով (Հ. Խ. Սիլանյան ու Բ. Հ. Հարությունյան) և Երեմիա Բակունցի փոխարեն կենտկոմի նախագահ է ընտրվում Հ. Կամարին։

Ա. Գևորգյանը ճիշտ չէ նաև Զանգեզուրի գավառում կոմունիստական կուսակցության շրջկոմներ ստեղծելու հարցում։ Խնձորեսկում, ինչպես և ընդհանրապես Զանգեզուրի գավառում ընդհատակյա կուսշրջկոմներ չեն եղել։ Այնտեղ առաջին անգամ այդպիսիք ստեղծվել են 1920 թ. հոկտեմբերի 5-ին, շրջանային կուսակցական կոնֆերանսներում[2], երբ գավառում արդեն հաստատվել էին սովետական կարգեր, և ոչ թե 1920 թ. ամռանը, ինչպես ջանում է ապացուցել Ա. Գևորգյանը։

Ա. Գևորգյանը գրում է, որ Խնձորեսկի կազմակերպության օժանդակությամբ 1919 թ. գարնանը կոմբջիջներ են ստեղծվել Տեղ, Ալիղուլիշեն, Կոռնիձոր, Ղարաքիլիսա, Ախլաթյան, Անգեղակոթ, Աղքենդ և այլ գյուղերում[3]։ Իր կարծիքը հիմնավորելու համար նա վկայակոչում է Հ. Ս. Կարապետյանի Մայիսյան ապստամբությունը Հայաստանում 1920 թվականին աշխատության 247—248 էջերը և մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի արխիվի մի վավերագիր։ Մինչդեռ Հ. Կարապետյանի աշխատության նշված էջերում ոչ մի խոսք չի ասված Խնձորեսկի կազմակերպության օժանդակությամբ որևէ գյուղում կոմբջիջ ստեղծելու մասին. ցույց է տրված, թե ինչպիսի հեղինակություն ուներ Խնձորեսկի կազմակերպությունը գավառի կենտկոմում։ Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի արխիվի վավերագրից Ա. Գևորգյանի մեջբերած քաղվածքում ասված է. «Խնձորեսկի պարտիական ժողովը 1919 թվականի ապրիլին ընդունում է որոշում՝ բոլոր կոմունիստներին ուղարկել շրջանի գյուղերը՝ օգնելու տեղերում ստեղծելու պարտիական բջիջներ։ Ըստ այդ որոշման Կոռնիձոր է ուղարկվում Անդրիաս Ապրիյանը, Ալիղուլիշեն՝ Հարություն Թաթարյանը, Տեղ՝ Ավագ Ջանունցը, Քարահունջ՝ Հայկ Սիլանյանը, Գորիս գյուղ՝ Աբել Ղավալյանը»[4] (ընդգծումը մերն է)։ Այս քաղվածքը չի հաստատում Ա. Գևորգյանի այն կարծիքը, թե Խնձորեսկի կազմակերպության օգնությամբ կոմբջիջներ են ստեղծվել Սիսիանի շրջանի Ղարաքիլիսա, Անգեղակոթ, Ախլաթյան և Աղքենդ գյուղերում։ Այդ և քաղվածքում պարտիական բառի գործածումը ցույց են տալիս, որ Ա. Գևորգյանի վկայակոչած վավերագիրը, որքան էլ այն նրա համար հեղինակավոր լինի, պատմական փաստաթուղթ չէ։

Բանն այն է, որ 1919 թ. գարնանն սկսվել էր դաշնակցության պառլամենտի նախընտրական կամպանիան։ 1919 թ. ապրիլի 26-ին Խնձորեսկի կոմբջիջն իր ժողովում քննարկել է այդ կամպանիայի դեմ պայքարելու հարցը։ Զանգեզուրի Կենտկոմի անդամ Ք. Մկրտչյանի զեկուցումից հետո ժողովը որոշում է կազմակերպության անդամներ Ա. Ապրիյանին ուղարկել Կոռնիձոր, Հ. Թաթարյանին՝ Ալիղուլիշեն, Հ. Սիլանյանին՝ Քարահունջ, Ավագ (Ղազար) Ջանունցին՝ Տեղ գյուղերը, իմանալու աշխատավոր գյուղացիության տրամադրությունը դաշնակցության նախընտրական կամպանիայի հանդեպ, և, եթե դրա դեմ պայքարելու տրամադրություն կա, կոմունիստների ու համակրողների հետ պայմանավորվելու դաշնակցականների ընտրական ժողովները ձախողելու մասին[5]։ Այնուհետև Խնձորեսկի կազմակերպությունը, մայիսի 5-ին լսելով Ա. Ղավալյանի հաղորդումը տրված հանձնարարության կատարման վերաբերյալ (ապրիլի 26-ի ժողովում նրան հանձնարարված էր կապ պահպանել Գորիսի հետ), որոշում է բոլոր միջոցներով բոյկոտի ենթարկել Ազգային խորհրդի՝ Խնձորեսկում գումարվելիք նախընտրական ժողովները[6]։

Տեղ, Ալիղուլիշեն, Գորիս և Քարահունջ գյուղերում կոմբջիջների ստեղծումն սկսվում է 1919 թ. հոկտեմբեր-նոյեմբեր ամիսներին, սակայն դրանք կազմակերպչորեն ձևավորվում ու ճանաչում են գտնում 1920 թ. փետրվարին։ Անգեղակոթում կոմբջիջն ստեղծվում է 1919 թ. նոյեմբերին, Ղարաքիլիսայում, Ախլաթյանում և Աղքենդում՝ 1920 թ. փետրվարից հետո։

Այդպիսով Զանգեզուրի գավառի Կոռնիձոր, Տեղ, Ալիղուլիշեն, Գորիս, Քարահունջ, Ղարաքիլիսա, Անգեղակոթ, Ախլաթյան և Աղքենդ գյուղերում կոմբջիջներ ստեղծվել են ոչ թե 1919 թ. գարնանը, ինչպես կարծում է Ա. Գևորգյանը, այլ 1919 թ. նոյեմբեր—1920 թ. հուլիսի ժամանակաշրջանում և դրանց ստեղծման գործին

---

1 «Բանբեր», 1963 թ., № 1, էջ 219։



1 Մեր ձեռքի տակ է այդ արձանագրության պատճենը. իսկականը՝ Զանգեզուրի ընդհատակյա Կենտկոմի անդամ Ն. Արղումանյանի արխիվում է։

2 ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 8, ց. 1, գ. 1։

3 «Բանբեր», 1963 թ., № 1, էջ 210, 1915 թ., № 3, էջ 197։

4 «Բանբեր», 1965 թ., № 3, էջ 198։

5 ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 34, գ., 15, թ. 18։

6 Նույն տեղը, էջ 19։

խնձորեսկի կոմբջիջը չի մասնակցել։

Ա. Գևորգյանը համոզված է, որ Զանգեզուրի ընդհատակյա պայմաններում կոմունիստական կուսակցության շարքերը նոր անդամներ ներգրավելու համար խնձորեսկի կոմբջիջը լայն աշխատանք է ծավալել նաև «ճարևան գյուղերի բնակչության մեջ» 1 (ընդգծումը մերն է)։ «Հարևան գյուղեր» ասելով Ա. Գևորգյանը, ինչպես երևում է, հասկանում է ոչ թե խնձորեսկի մերձակա Մաղանջուղը, Կյորուն և Քարաշենը, այլ 45—60 կիլոմետրի վրա գտնվող Սիսիանի շրջանի գյուղերը։ Ավելին, Ա. Գևորգյանի հոդվածներում ոչ մի խոսք չի ասված խնձորեսկին մերձակա այդ գյուղերի մասին։

Անվիճելի է, որ խնձորեսկի կուսակցական կազմակերպությունն ու նրա ակտիվը 1919—1920 թթ. ընդհատակում ծավալուն աշխատանք են տարել խնձորեսկի աշխատավոր գյուղացիության շրջանում բոլշևիկյան գաղափարների տարածման և դաշնակցության դեմ պայքարելու ուղղությամբ։ Այդ մասին գրելիս պետք է ղեկավարվել ոչ թե մտացածին «փաստերով», այլ պատմական վավերագրերով։

Ա. Գևորգյանի մոտ խեղաթյուրումներ կան նաև խնձորեսկի 1920 թ. Մայիսյան ապստամբության հարցերում։ Այդ ապստամբությանը մասնակցողի հավակնություն ունեցողների հուշերը, հրապարակում եղած մի շարք աշխատություններում՝ տեղ գտած պատմական դեպքերի աղճատված մեկնաբանությունները նա ընդունում է որպես պատմական անհերքելի աղբյուր և տալիս հակասություններով լի իր դատողությունները։

Խնձորեսկի 1920 թ. Մայիսյան ապստամբության ռազմա-հեղափոխական կոմիտեն ընտրվել է մայիսի 27-ի լույս 28-ի գիշերը խնձորեսկի կուսկազմակերպության ժողովում, որտեղ առաջին անգամ քննության է առնվել զինված ապստամբության հարցը։ Հետևապես մայիսի 28-ի գիշերն ընտրված ռազմա-հեղափոխական կոմիտեն չէր կարող մայիսի 25-ին իր նիստում քննարկել ապստամբության հարցը, ինչպես կարծում է Ա. Գևորգյանը2։ Այդ ժողովում ընտրված ռազմա-հեղափոխական կոմիտեի կազմում էին Հ. Սիլանյանը (նախագահ, և ոչ Հ. Կամարին), Ա. Ղավալյանը (տեղակալ), Հ. Թաթարյանը (քարտուղար) և անդամներ՝ Ա. Մայսուրյանը, Գ. Սայիլյանը, Ի. Էկտիբարյանը և Բ. Ղարագյոզյանը։

Իմանալով ապստամբության հարցում խնձորեսկի կազմակերպության ակտիվի դիրքի և այդ ուղղությամբ արվող քայլերի մասին, խնձորեսկի կազմակերպությանն ուղարկած մայիսի 27-ի նամակում Հ. Կամարին գրում է. «Ինձ հասած լուրերից արդեն երևում է, որ Դուք վճռական գործի եք անցել: Ես, նախատեսելով ամեն ինչ, ցանկանում էի, որ այդպես չլիներ. նախ իմանայինք թշնամու մտադրությունը և նրա արվելիք քայլերը, հետո միայն վճռեինք, թե ինչպես և երբ կռիվ հայտարարեինք հակառակորդին:

Քանի որ ամեն ինչ արված է և ես կատարված փաստի առաջ եմ կանգնած, թող սկսածը շարունակվի, բայց միայն պետք է մարդիկ ուղարկել իմանալու հակառակորդի շարժման մասին, նրանց պետք է խիստ կերպով հետևել» (Ընդգծումները մերն են)3։

Ա. Գևորգյանը հանելով «Ես, նախատեսելով ամեն ինչ, ցանկանում էի, որ այդպես չլիներ» նախադասությունը, Հ. Կամարու նամակի այդ մասը ձևափոխել է հետևյալ կերպ. «Ինձ հասած լուրերից արդեն երևում է, որ դուք վճռական գործի եք անցել։ Նախ Իմացեք թշնամու մտադրությունը և նրա արվելիք քայլերը, հետո միայն վճռեցեք, թե ինչպես և երբ կռիվ հայտարարենք հակառակորդներին, քանի որ ամեն ինչ արված է և ես եղած փաստի առաջ եմ կանգնած։ Թող շարունակվի, բայց միայն պետք է մարդիկ ուղարկել իմանալու հակառակորդի շարժման մասին, նրանց պետք է խիստ կերպով հետևել»4։

Ա. Գևորգյանը այդպես է վարվել Հ. Կամարու նամակի բովանդակությանն իր գրածին համապատասխանեցնելու մտադրությամբ։ Այդպիսի միտումնավոր հապավումը անթույլատրելի է սովետական պատմաբանին։

Հ. Կամարու նամակից իսկ երևում է, որ Զանգեզուրի Կենտկոմը չի մասնակցել խնձորեսկի 1920 թ. մայիսյան ապստամբության նախապատրաստմանը. այդ մասին նա իմացել է միայն իրեն հասած լուրերից։ Ավելին, այդ նամակը ցույց է տալիս, որ ապստամբության նախօրյակին Զանգեզուրի Կենտկոմը խնձորեսկ գյուղում կոմբջիջների ներկայացուցիչների ոչ մի խորհրդակցություն չի հրավիրել և, հետևապես, Կենտկոմի նախագահ Հ. Կամարին չէր կարող չեղած խորհրդակցությունում հանդես գալ, ապստամբության պատրաստվելու առաջադրանք տալ և ապստամբությունը գլխավորող ռազմա-հեղափոխական կոմիտեի նախագահ ընտրվել։ Իրեն հասած լուրերից հետո Զանգեզուրի Կենտկոմը, Հ. Կամարու գլխավորությամբ, չի մնացել կողմնակի դիտողի դերում, այլ հետևողական ցուցումներով ուղղություն է տվել գավառի կուսկազմակերպությունների գործունեությանը, ճիշտ հունի մեջ դրել նրանց մղած պայքարը։

1 «Բանբեր», 1963 թ., № 1, էջ 210։

2 «Բանբեր», 1963 թ., № 1, էջ 215, 1965 թ. № 3, էջ 198։

3 ՄԼԻ Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 25, գ. 1, թ. 1։

4 «Բանբեր», 1963 թ., № 1, էջ 217։



Խնձորեսկի մոտ 110—120 ապստամբներն, անշուշտ, ի վիճակի չէին մարդկային ուժով ու զենքով անհամեմատ զորեղ թշնամու հանդեպ ակտիվ գործողության անցնելու։ Նրանք տեսնելով հարձակվող թշնամու բացարձակ գերակշռությունը, ռազմա-հեղափոխական կոմիտեի կարգադրությամբ, առանց կռվի մեջ մտնելու, առանց զոհերի ու գերիների, թողնում են իրենց գրաված դիրքերը և գյուղի վրայով անցնում այգիներն ու մոտակա անտառները։

Այս է պատմական ճշմարտությունը։

Սակայն Ա. Գևորգյանը ապստամբության նման ընթացքը համարելով անիրական, ջանում է ապացուցել, որ իբր «սկսվում է անհավասար կռիվը մի խումբ ապստամբների և զինված զորքի միջև։ Ապստամբներից շատերին հաջողվեց ճեղքել մահվան օղակը... Շատերն էլ ընկան հերոսի մահով կամ գերեվարվեցին» 1։ Նա ջանում է ապացուցել, որ խնձորեսկի ապստամբության երկրորդ օրը (մայիսի 30-ին) Այնախլու կոչված ձորում Հ. Կամարու պահանջով ու ղեկավարությամբ գումարվել է մի շարք գյուղերի կոմբջիջների ներկայացուցիչների խորհրդակցություն, որտեղ իբր քննարկվել են ապստամբության պարտության պատճառները և կազմակերպությունների հետագա անելիքները։ Մենք հայտարարում ենք. Այնախլու կոչված ձորում ո՛չ ապստամբության երկրորդ օրը և ոչ էլ հետագայում՝ Հ. Կամարու ղեկավարությամբ, ոչ մի խորհրդակցություն չի եղել։

Հայտնի է, որ Ա. Գուլոյանը (Սեյրի) Զանգեզուր է եկել 1920 թվականի սեպտեմբերի սկզբներին՝ քաղաքացիական կռիվների երրորդ ամսին և փոխարինել Հ. Կամարուն որպես կոմունիստական կուսակցության գավառային կոմիտեի քարտուղար, այդ պոստում մնացել է մինչև 1920 թ. նոյեմբերի 20-ը։ Հետևապես Ա. Գուլոյանը չէր կարող, ինչպես Ա. Գևորգյանն է գրում, 1920 թ. ապրիլին «համախմբվել» 2 Հ. Կամարու շուրջը և մայիսի 5-ին ընտրվել Զանգեզուրի Կենտկոմի կազմում 3։

Ավելին, 1967 թ. փետրվարի 7-ի «Коммунист» թերթում հրապարակած հոդվածում Ա. Գևորգյանը գտնում է, որ Զանգեզուրի կոմունիստական կազմակերպությունները մինչև 1920 թ. սեպտեմբերը ցիրուցան էին և Սեյրին (Ա. Գուլոյանը), գալուն պես «միավորում է ցիրուցան կուսակցական ուժերը միասնական կազմակերպության մեջ...։ Նրան ընտրում են կուսակցության առաջին անգամ ստեղծված Զանգեզուրի գավառային կոմիտեի նախագահ»։ Այդպես ասել, նշանակում է գլխիվայր շրջել իրականությունը, ժխտել այն բոլորը, ինչ արված էր գավառում մինչև նրա գալը։

Ա. Գևորգյանը սխալ տեղեկություններ է հաղորդում նաև Գ. Մելիք Դադայանի (Գումեդինի) մասին։ Գ. Մելիք Դադայանը Զանգեզուրի ընդհատակյա բոլշևիկյան կազմակերպության ակտիվ գործիչ չի եղել և ոչ էլ «կոմերիտմիության առաջին կազմակերպության հիմնադիրը»4։ Ա. Գևորգյանը իր 1963 թ. հոդվածում խոսում է Գ. Մելիք Դադայանի մինչև 1920 թ. հուլիսն ընկած ժամանակաշրջանի գործունեության մասին, իսկ 1965 թ. իր պատասխան հոդվածում այդ գործունեությունը փոխադրվում է սովետական իշխանության ժամանակաշրջանը և բնութագրում նրան այդ տարիներին վարած պաշտոններով։

Բացահայտելով Ա. Գևորգյանի 1963 և 1965 թվականների հոդվածներում, հետևապես և թեկնածուական դիսերտացիայում պատմական մի շարք փաստերի ու դեպքերի աղավաղումներն ու խեղաթյուրումները, ցանկանում ենք օգնել մեր պատմաբաններին՝ հանգամանորեն ուսումնասիրելու և ճշմարտացի լուսաբանելու Զանգեզուրի 1917—1921 թթ. իրադարձությունները։ Կոմունիստական կուսակցության պատմությունն ուսումնասիրողների սկզբնաղբյուրը պետք է լինեն պատմական վավերագրերով հիմնավորված փաստերը։

Թերևս հարկ չլիներ անդրադառնալու այս խնդիրներին, եթե պատմության, պատմական տարբեր դեպքերի ու իրադարձությունների հանդեպ սուբյեկտիվ, տենդենցիոզ վերաբերմունքի առաջին կամ միակ արտահայտությունը լիներ այս։ Սակայն նման վերաբերմունքի դրսևորումներ՝ տարբեր առիթներով, նկատվում են նաև մամուլի այլ օրգաններում։

ԵՂՈ ՂԱԶԱՐՅԱՆ (ՍՄԿԿ անդամ 1919 թ.), ՀՈՎՀԱՆՆԵՍ ՀԱԿՈԲՅԱՆ (1920 թ.), ՄԱԹԵՎՈՍ ԱՍԱՏՐՅԱՆ (1920 թ.), ԳԵՐԱՍԻՄ ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ (1918 թ.), ԳԱԲՐԻԵԼ ՍԵՎՅԱՆ (1918 թ.), ԱՐՄԵՆԱԿ ԼԱԼԱՅԱՆ (1927 թ.), ՍՄԲԱՏ ՀԱԿՈԲՅԱՆ (1925 թ.), ՀԱՄՈ ԲԱՐԽՈՒԴԱՐՅԱՆ (1920 թ.), ԲԱԳՐԱՏ ՋԱՎԱՀԻՐՅԱՆ (1920 թ)։

1 «Բանբեր», 1963 թ., № 1, էջ 218։
2 «Լենինյան ուղիով», 1958 թ., № 2, էջ 111։
3 «Բանբեր», 1963 թ., № 1, էջ 213։

4 «Բանբեր», 1963 թ., № 1, էջ 222։

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Ընտիր երկեր, *երեք հատորով։ Հատոր I։ Մ., Քաղհրատ, 1968, 843 էջ։*

ՈՒԼՅԱՆՈՎ Դ. Ի.—Հիշողություններ Վլադիմիր Իլյիչի մասին։ *Մ., Քաղհրատ, 1968, 127 էջ։*

ՄԱԼԻՑ Ի. Գ.—Վիճակագրության հարցերը Կարլ Մարքսի «Կապիտալում»։ *Մ.,* Статистика, *հրատ., 1967, 216 էջ։*

Լենինիզմի մեծագույն գաղափարների գանձարանը։ *Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուի մասին։ Մ., Քաղհրատ, 1968, 207 էջ։*

ՄՈԿԻՉԵՎ Կ. Ա.—Սոցիալիստական պետության լենինյան տեսությունը և ներկա ժամանակաշրջանը։ *Մ.,* «Знание» *հրատ., 1968, 64 էջ։*

ԻԼԻՆԱ Ի. Վ.—Բոլշևիկների կուսակցության պայքարը Հոկտեմբերյան հեղափոխության նախապատրաստման ժամանակաշրջանում «ձախերի» հանդես գալու դեմ։ *Մ.,* «Мысль» *հրատ., 1967, 144 էջ։*

ՏԵՄԿԻՆ ՅԱ. Գ.—Ցիմերվալդ-Կինտալ։ *Սոցիալիստների-ինտերնացիոնալիստների միավորելու համար Վ. Ի. Լենինի մղած պայքարի պատմությունից։ Մ., 1967, 151 էջ։*

ՎՈՐՈՇԻԼՈՎ Կ. Ե.—Պատմվածքներ կյանքի մասին։ *(Հուշեր)։ Գիրք I, Մ., Քաղհրատ, 1968, 268 էջ։*

ԼԻԽՈԴԵԵՎ Ֆ. Մ.—Պետությունը և կոմունիզմի կառուցումը։ *Մ.,* «Наука» *հրատ., 1968, 415 էջ։*

Անհատը սոցիալիզմի ժամանակ։ *ՍՍՀՄ ԳԱ փիլիսոփայության ինստիտուտի կազմակերպած սիմպոզիումի արդյունքները։ Մ.,* «Наука» *հրատ., 1968, 260 էջ։*

ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ.—Անտոնիո Գրամշի *(Իտալական ԿԿ հիմնադիրն ու ղեկավարը)։ Եր., «Գիտելիք» ընկ. հրատ., 1968, 26 էջ։*

Գիտությունը կրոնի դեմ։ *Երեք հատորով։ Հասարակությունը և կրոնը։ (Հատոր I)։ Մ.,* «Наука» *հրատ., 1967, 507 էջ։*



Адрес редакции.—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59գ.։ Հեռախոսներ. խմբագիր՝ 7—16—90, պատ. քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանքի և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80։

*Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 17/VI 1968 թ.։*

*ՎՖ 05825 Պատվեր 1362 Տիրաժ 11.478 Գինը 25 կոպ.։*

*Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՎԱՂՎԱ ՏՐԱԿՏՈՐԸ

ԳԴՀ-ում նախագծված է ավտոմատ տրակտոր-կոմբայն, որը դաշտում աշխատելիս կառավարվում է ռադիոյով՝ դիսպետչերական կետից: Մեկ մարդը հեռուստատեսային քարտեզի օգնությամբ կարող է ղեկավարել 10 այդպիսի մեքենա: Գարնանը տրակտոր-ավտոմատները կհերկեն, կցանեն և հեղուկ պարարտանյութեր կլցնեն հողի մեջ: Բերքահավաքի ժամանակ լրացուցիչ մեխանիկական հանգույցների օգնությամբ դրանք կվերածվեն ինքնագնաց կոմբայնների:

## ԵՐԿԱԹ՝ ԾԽԻՑ

Ջերմաէլեկտրակենտրոնների ծխնելույզներից դուրս եկող ծուխն ունի շատ արժեքավոր նյութեր, ինչպես և երկաթ: Լեհաստանում «Յավոժնո—II» էլեկտրակայանում հաջողությամբ փորձարկվել է ծխից երկաթ որսացող ապարատ: Այն միացնելիս առաջ է գալիս պտտվող էլեկտրամագնիսական դաշտ, որի ազդեցությամբ մետաղի մասնիկները նստվածք են տալիս: Այդպիսով, լեհ ինժեներները միանգամից երկու նպատակ են սպանել. պաշտպանել են մթնոլորտը աղտոտումից և ծխի քուլաներից հանել են մետաղ:

## ԿԱՊԿԻ ԵՂՋՐԱԹԱՂԱՆԹԸ՝ ՄԱՐԴՈՒՆ

Բանգկոկի գոսպիտալի ակնաբույժ դոկտոր Ռիսակիդե Սոմաս Վասդիին հաջողվել է գիբոնի աչքի եղջրաթաղանթը պատվաստել մարդուն: Այդպիսի պատվաստումը մեծարժեք գյուտ է վիրահատության բնագավառում: Մինչև այժմ նրման դեպքերում եղջրաթաղանթը վերցնում էին նոր մեռած մարդկանցից, որն ուրիշ նյութերով փոխարինելու բոլոր փորձերն անհաջող էր անցել:

Բանգկոկի բժիշկը արդեն նման շատ վիրահատումներ է կատարել և մարդկանց վերադարձրել նորմալ տեսողություն (Տաիլանդ):

## ԳԱՐԵՋՈՒՐ ՀԱՎԵՐԻ ՀԱՄԱՐ

Պարզվում է, որ հավերն էլ չեն կարող յոլա գնալ առանց գարեջրի: Ավելին, հավերի կերաբաժնի մեջ մտնող չոր գարեջրային նստվածքը այնքան բավարար ազդեցություն է ունենում նրանց վրա, որ մոտ 5 տոկոսով ավելանում է ձվատվությունը, իսկ ձվերից էլ 9 տոկոսով ավելի ճուտ է դուրս գալիս: Առայժմ պարզ չէ, թե գարեջրի մեջ գտնվող որ նյութերն են նպաստում դրան:

## ՍՊԻՏԱԿՈՒՑՆԵՐ՝ ՆԱՎԹԻՑ

Լավեր քաղաքում (Ֆրանսիա) կառուցվում է մի նոր ֆաբրիկա, ուր նավթից կստանան սպիտակուցային կոնցենտրատներ: Արտադրության հիմնական մեթոդը հետևյալն է. հատուկ տեղերում աճեցնում են դրոժային միկրոօրգանիզմներ, որոնք սնվում են նավթի մեջ եղած պարաֆինով: Այնուհետև ցենտրիֆուգաներում դրոժն անջատվում է դիզելային խառնուրդից: 100 տոննա հումքը կարող է տալ 90 տոննա բարձրորակ դիզելային վառելիք և 10 տոննա սպիտակուցային կոնցենտրատ: Ստացված արդյունքը չորացնելուց հետո կարելի է անմիջապես տալ անասուններին. այն անհոտ, դեղին փոշի է:

## «ՊՈԼԻՄԵՐԱՅԻՆ ՄԱԿԱՐՈՆ»

Պարզվում է, որ մինչև այժմ ոչ մեկին չի հաջողվել ստանալ արհեստական բուրդ, որը «տաքացնելու» ունակությամբ հավասարարժեք լինի բնական բրդին: Արհեստական հարթ մանրաթելը վատ է պահպանում ջերմությունը: Ճապոնացի քիմիկոսներն աշխարհում առաջին անգամ կարողացել են խողովակաձև դարձնել բարակ թելը: Այդպիսի «պոլիմերային մակարոններից» պատրաստված սվիտերը, որն իր մեջ օդ է պարունակում, ավելի լավ է «տաքացնում», քան ոչխարի բրդից պատրաստվածը: